

ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը **ժողովուրդների բարեկամության** շքանշանը հանձնում է «Լենինյան ուղիով» ամսագրին:

*Լուսանկար՝ Հ. Բաղդասարյանի և Ա. Բաղալյանի*




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## «ՇՊԻԳԵԼ» (ԳՖՀ) ՀԱՆԴԵՍԻՆ

*Արևմտագերմանական «Շպիգել» հանդեսը ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովին էր դիմել՝ խնդրելով պատասխանել մի շարք հարցերի, ինչպես նաև զրույցի համար ընդունել հանդեսի հրատարակիչ Ռ. Աուգշտայնին։ Ինչպես արդեն հաղորդվել է, այդպիսի զրույց տեղի ունեցավ ս. թ. ապրիլի 19-ին։*

*Ստորև հրապարակվում են Յու. Վ. Անդրոպովի պատասխանները և նրա զրույցը Ռ. Աուգշտայնի հետ։*

**Հարց:** *Եվրոպայում միջին հեռավորության զենքի շուրջ վարվող ժնևի բանակցություններում ակնհայտորեն ոչ մի առաջընթաց չի նկատվում։ Ամերիկյան առաջարկությունը, որը բովանդակում է «զրոյական լուծումը», իսկ վերջին ժամանակներից սկսած՝ «միջանկյալ տարբերակը», անհամատեղելի է թվում միջին հեռավորության իր հրթիռների թիվը կրճատելու և արևմտաեվրոպական նույնատիպ հրթիռների թվին հասցնելու սովետական առաջարկության հետ։ Ձեր կարծիքով, ո՞րն է տարակարծությունների էությունը, և արդյոք Դուք փոխզիջում հնարավո՞ր եք համարում։*

**Պատասխան:** *Մեզ հասկանալի է այն անհանգստությունը, որ Եվրոպայում միջին հեռավորության միջուկային սպառազինությունների սահմանափակման ժնևի բանակցություններում քննարկվող հարցերը չեն գտնում իրենց լուծումը։ Այդ բանակցությունները, եթե ուղղակի ասենք, փակուղի են մտել։*

*Հանուն ինչի՞ սկսվեցին դրանք։ Սովետական կողմը առաջարկեց բանակցություններ և դրանք սկսեց ՍՍՀՄ-ի ու ՆԱՏՕ-ի երկրների այդ շրջանում գոյություն ունեցող միջին հեռավորության միջուկային միջոցների կրճատման հասնելու, միջուկային դիմակայության մակարդակի փոխադարձ արմատական իջեցման հասնելու վճռականությամբ։ Ժնևի բանակցություններում ԱՄՆ-ի նպատակն է, ինչպես պարզվեց, ինչ գնով էլ լինի ՆԱՏՕ-ի արդեն եղած ծավալուն միջուկային զինանոցին ավելացնել նոր հզոր սպառազինություններ, իսկ նա կրճատել է ուզում միայն սովետական հրթիռները։*

*Ինչպես տեսնում եք, ժնևում դիմակայում են երկու հակադիր գծեր, ես կասեի՝ երկու սկզբունքորեն տարբեր մոտեցումներ։ Ամերիկացիների նման գծին մենք բախվեցինք դեռ ժնևից առաջ։ ԱՄՆ-ը, ինչպես հայտնի է, ձախողեց ՍՍՍ—2 պայմանագիրը, ետ քաշվեց մի ամբողջ շարք բանակցություններից, որոնք նոր էին ծավալվում կամ հաջողությամբ ավարտվելու վրա էին։ Կարող եմ հիշեցնել. ԱՄՆ-ը ընդհատեց և մինչև օրս էլ խույս է տալիս միջուկային զենքի փորձարկումների լրիվ և ընդհանուր արգելման վերաբերյալ, հակաարբանյակային սիստեմների վերաբերյալ, սովորական սպառազինությունների մատակարարումներն ու վաճառքը սահմանափակելու, Հնդկական օվկիանոսում ռազմական գործունեությունը սահմանափակելու վերաբերյալ բանակցությունները վերսկսելուց։ Դրան կավելացնեմ միջուկային զենքի ստորերկրյա փորձարկումները սահմանափակելու մասին և խաղաղ նպատակներով կատարվող միջուկային պայթեցումների մասին Սովետական Միության հետ կնքված և Միացյալ Նահանգների կողմից մինչև օրս չվավերացված պայմա-*

նագրերը։ Այս ամենը ինքնըստինքյան շատ պերճախոս է։ Ասենք, հենց Ժնևի բանակցություններին էլ ԱՄՆ-ի այժմյան վարչակազմը, ինչպես հայտնի է, մեծ դժկամությամբ համաձայնեց։

Մեզ համար պայմանավորվող կողմերի միջև համաձայնության հասնելը նշանակում է երկուստեք բավարարությամբ հարցերի համաձայնեցում։ Իսկ ամերիկյան վարչակազմը իրեն այնպես է պահում, ասես գոյություն չունի միջազգային հարաբերությունների բազմադարյան պատմությունը, համաձայնագրերի և պայմանագրերի պրակտիկան։ Վաշինգտոնի կողմից վերջերս ՍՍՀՄ-ի համար բացահայտորեն անընդունելի իր առաջարկության ձևափոխումը, որը կեղծավորաբար անվանվեց «զրոյական», չի փոխում գործի էությունը, ԱՄՆ-ի վարչակազմը մնում է իր նախկին միակողմանի դիրքերում, դույզն ինչ ցանկություն չցուցաբերելով հաշվի առնելու մյուս կողմի օրինական շահերը, հասնելու փոխադարձաբար ընդունելի ազնիվ համաձայնության։ Ամեն դեպքում, անելով իր առաջարկությունները, ԱՄՆ-ը ձգտում է, և դա նրա համար գլխավորն է, ամենից առաջ վնաս հասցնել Սովետական Միության անվտանգությանը, իր օգտին խախտել ուժերի ստեղծված հավասարակշռությունը։

Դա է Ժնևի բանակցությունների անհաջողությունների հիմնական պատճառը։ Ի պատասխան մեր հստակ և արդարացի առաջարկությունների՝ Ռեյգանի վարչակազմը առաջ է քաշում մերթ «զրոյական», մերթ «միջանկյալ-զրոյական» տարբերակը։ Թե՛ մեկը, թե՛ մյուսը ռեալիստական չեն և ոչ մի կերպ չեն նպաստում պայմանավորվածության հաջողությանը։ Ինչո՞ւ։ Որովհետև մեզ ուզում են զինաթափել, իսկ ՆԱՏՕ-ն՝ է՛լ ավելի սպառազինել։ Դրան մենք չենք համաձայնի։

Վերջին ժամանակներս ԱՄՆ-ում և ՆԱՏՕ-ի մի քանի այլ երկրներում դատողություններ են լսվում սովետական կողմի «անզիջողության» մասին։ Իսկ, ըստ էության, ինչո՞ւմ մենք պետք է զիջենք։ Մեզանից պահանջում են, որ մենք համաձայնենք միայն հրթիռների հարցում՝ միջին հեռավորության գոյություն ունեցող սովետական հրթիռների և ամերիկյան այն հրթիռների հարցում, որոնք նախատեսվում է բերել Եվրոպա։ Միջին հեռավորության միջուկային միջոցների մյուս բաղադրիչների հարցում ամերիկացիները պարզապես հրաժարվում են պայմանավորվածության գալ։ Նրանք հայտարարում են՝ չենք ցանկանում այդ մասին բանակցություններ վարել, և՛ վերջ։

Մեզանից ուզում են, որ մենք ձևացնենք, թե չենք նկատում ծովային և ցամաքային բազավորման անգլիական ու ֆրանսիական հրթիռների այն ավելի քան 400 մարտագլխիկները, որոնք ուղղված են Սովետական Միության վրա, մյուս սոցիալիստական երկրների վրա։ Ամերիկացիները, իսկ նրանցից անմիջապես հետո նաև ՆԱՏՕ-ի մյուս երկրների ներկայացուցիչները, անգլիական ու ֆրանսիական հրթիռները անվանում են «կասեցման» ուժեր։ Պատրաստ եմ ընդունելու, որ դա այդպես է։ Այդ դեպքում հարց է ծագում՝ իսկ ինչո՞ւ, Ֆրանսիայի և Անգլիայի համար ճանաչելով կասեցման իրավունք, մեզ մերժում են ունենալ կասեցման մեր համապատասխան ուժերը՝ ճիշտ նույնպիսի քանակությամբ, որքան ունեն ֆրանսիացիներն ու անգլիացիները։

Վկայակոչվում է նաև այն, թե Ֆրանսիայի և Անգլիայի միջուկային սպառազինությունները, իբր, նրանց ինչ-որ «անկախ ստատուսի» պատճառով չըպետք է հաշվի առնվեն։ Բայց մի՞թե այդ երկրները դադարել են լինել հյուսիսատլանտյան դաշինքի անդամներ։ Եվ մի՞թե նրանք թաքցնում են, որ իրենց միջուկային միջոցները ուղղված են Սովետական Միության դեմ։ Եվ արդյոք հատկանշական չէ՞, որ ֆրանսիական կառավարությունը ոչ միայն չի սահմանազատվել, այլ, ընդհակառակն, եռանդուն կերպով պաշտպանում է Արևմտյան Եվրոպայում ամերիկյան միջուկային հրթիռներ տեղաբաշխելու պլանները։ Էլ ո՞րն է այստեղ «անկախ ստատուսը»։ Մի կողմից՝ նատօյական հայտնի որոշումը մատուցվում է որպես այդ դաշինքի բոլոր անդամների յուրատեսակ մանդատը Միացյալ Նահանգներին, իսկ, մյուս կողմից, երբ սկսում են հաշվել ՆԱՏՕ-ի սպառազինությունները, դուրս է գալիս, որ անգլիական ու ֆրանսիա-



կան հրթիռները այստեղ ոչ մի գործ չունեն, դրանք, գիտեք ինչ, «անկախ» են։ Սրանում ոչ մի տրամաբանություն չկա։

Փորձեցեք իրավիճակին նայել Սովետական Միության, նրա օրինական շահերի տեսանկյունից՝ ի՞նչ հիման վրա, ի՞նչ իրավունքով են մեզ ուզում անզեն թողնել մեր երկրի վրա ուղղված անգլիական ու ֆրանսիական այդ միջուկային հրթիռների դեմ-հանդիման։

Պարզ է, որ մենք դրան չենք կարող համաձայնել և երբեք չենք համաձայնի։ Սովետական ժողովուրդը ունի անվտանգության նույնպիսի իրավունք, ինչ որ Ամերիկայի, Անգլիայի, Ֆրանսիայի և մյուս երկրների ժողովուրդները։

Մեզ կոչ են անում նաև աչք փակել այն բանի հանդեպ, որ ամերիկացիները, մեր կողմից նրանց առաջարկն ընդունվելու դեպքում, Եվրոպայի գոտում անձեռնմխելի կպահեին իրենց ավիացիան օդանավակայաններում ու ավիակիրների վրա, այսինքն՝ առաջավոր բազավորման այն միջոցները, որոնք ընդունակ են միջուկային զենքը հասցնել Սովետական Միության տերիտորիային։ Իսկ դրանք ոչ ավելի, ոչ պակաս հարյուրավոր կրողներ և հազարավոր միջուկային մարտալիցքեր են։

Բանակցություններ վարելու հանրաճանաչ նորմերի խախտումը, փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածության հասնելու ուղղությամբ գործը տանել չցանկանալը դրսևորվում են նաև նրանում, որ ԱՄՆ-ի վարչակազմը փորձում է մեզ միակողմանիորեն զինաթափել ոչ միայն արևմուտքում՝ Եվրոպայում, այլև արևելքում՝ Ասիայում։ Վաշինգտոնը կուզենար մեզ թելադրել իր պայմանները՝ միջին հեռավորության մեր հրթիռները չտեղաբաշխել Սովետական Միության ասիական մասում։ Դա արդեն, իհարկե, ամբողջովին դուրս է գալիս Ժնևի բանակցությունների շրջանակներից։ Իսկ այն մասին, որ Ասիայում, Խաղաղ և Հնդկական օվկիանոսներում, Հեռավոր Արևելքում նրանք մեր դեմ կենտրոնացրել են մեծաթիվ միջուկային միջոցներ, ամերիկացիները լռում են։ Իմիջիայլոց, ամերիկյան և անգլիական մամուլում մերթ ընդ մերթ երևում են հաղորդումներ այն մասին, որ ԱՄՆ-ը մտադիր է միջին հեռավորության իր հրթիռները տեղադրել Ալյասկայում։ Եթե դա տեղի ունենար, ապա աննկատ չէր մնա մեր կողմից։ Ես այժմ այդ մասին հիշատակում եմ ի հաստատումն այն հետևության, որ ամերիկյան կողմը Սովետական Միությունից պահանջում է այն, ինչ նա ինքը, ըստ երևույթին, մտադիր չէ պահպանել։

Ահա և հարց է ծագում, ո՞վ ավելի մեծ հիմքեր ունի անհանգստություն ցուցաբերելու իր անվտանգության համար։

Այսպիսի հարցադրումը առավել ևս արդարացի է նրանով, որ Սովետական Միությունը, ինչպես հայտնի է, պարտավորվել է առաջինը չգործադրել միջուկային զենք, մինչդեռ ՆԱՏՕ-ի միջուկային երկրները մինչև օրս կտրականապես հրաժարվում են այդպիսի պարտավորություն ստանձնել։

**Հարց:** Արևմուտքը և Արևելքը միմյանց կշտամբանքներ են ներկայացնում ռազմական գերազանցության ձգտելու մեջ։ Ամերիկացիները նույնիսկ պնդում են, թե Ժնևի բանակցություններում սովետական ներկայացուցիչները ձգտում են հավերժացնելու եվրոպական մայրցամաքում միջին հեռավորության հրթիռների հարցում ՍՍՀՄ-ի գերազանցությունը։ Ինչպիսի՞ տեսք պետք է ունենա մոտավոր հավասարակշռությունը։

**Պատասխան:** Մեզ հայտնի են նման պնդումները։ Հատկապես այդ ասպարեզում եռանդ են ցուցաբերում ամերիկյան ռազմական ու քաղաքական գործիչները։ Իմիջիայլոց, նրանցից շատ ետ չեն մնում նաև Արևմուտքի մի քանի այլ քաղաքագետներ։ Այդպիսի պնդումների մեջ ճշմարտության նշույլ անգամ չկա։ Հարկավոր է կանգնել փաստերի հողի վրա։ Միայն վերջին ժամանակներս Սովետական Միությունը, ցանկանալով բանակցությունը շարժել մեռյալ կետից, ամերիկյան կողմի և ՆԱՏՕ-ի մյուս երկրների քննարկմանը ներկայացրեց մի ամբողջ շարք առաջարկություններ, որոնց կոնստրուկտիվ բնույթը ակնհայտ է։

Բավական է հիշեցնել Եվրոպայում միջին հեռավորության միջուկային սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ նույն՝ Ժնևի բանակցություններում մեր արած առաջարկությունները։ Այժմ Եվրոպայում յուրաքան-

չյուր կողմ ունի միջին հեռավորության միջուկային զենքի մոտավորապես հավասար կրող։ Գումարած՝ տակտիկական նշանակություն ունեցող մի քանի հազարական միջուկային լիցքերը։ Եթե ընդունվեր մեր առավել հեռուն գնացող առաջարկությունը, որն ի դեպ Արևմուտքում գերադասում են ամոթխածորեն լռությամբ մատնել, եվրոպական մայրցամաքում առհասարակ չէր մնա Եվրոպայում նպատակակետերի խոցման ընդունակ միջուկային զենքի՝ ինչպես միջին հեռավորության, այնպես էլ տակտիկական զենքի ոչ մի տեսակ։ Արդյոք Եվրոպան, Եվրոպայի անվտանգությունը կշահե՞ն, թե՞ տանուլ կտան, եթե այս առաջարկությունը իրականացվի։ Պատասխանը պարզ է ու միանշանակ։

Նույնը վերաբերում է նաև մեր մյուս առաջարկությանը։ Եթե այն իրականացվեր, տեղի կունենար արմատական կրճատում. յուրաքանչյուր կողմից երեք անգամ կկրճատվեր միջին հեռավորության սպառազինությունների թիվը։ Այլ խոսքով, մենք անցած կլինեինք Եվրոպան այդ զենքից լրիվն ազատելու ճանապարհի երկու երրորդը։

Վերջապես, եթե Արևմուտքը համաձայներ անցյալ տարվա դեկտեմբերին մեր առաջարկած տարբերակին, ՍՍՀՄ-ի և ՆԱՏՕ-ի երկրների մոտ կմնար 162-ական հրթիռ, այսինքն ուղիղ այնքան, որքան դրանք այժմ կան ՆԱՏՕ-ի կողմում՝ Անգլիայի ու Ֆրանսիայի մոտ։ Յուրաքանչյուր կողմին կմնար նաև միջին հեռավորության 138-ական ինքնաթիռ։ Ուզում եմ ընդգծել, որ այդ թվերը ևս վերջնական սահման չեն։ Դրանք կարելի կլիներ կրճատել փոխադարձ հիմքի վրա, եթե ՆԱՏՕ-ն համաձայներ դրան։

Սովետական Միության այս բոլոր առաջարկությունները մնում են ուժի մեջ։ Դրանք լրիվն ապահովում են իսկական հավասարություն և ուժերի իսկական հավասարակշռություն։

Ո՞րն է այստեղ ռազմական գերազանցության հասնելու ՍՍՀՄ-ի ձգտումը։

Այժմյան իրավիճակի բարդությունն ու վտանգավորությունն այն է, որ Արևմուտքի կողմից պարտադրվող սպառազինությունների մրցավազքը բանակցություններից առաջ է անցնում։ Դրանից խուսափելու, բանակցությունների վարման բարենպաստ պայմաններ ստեղծելու համար ողջամտությունը թելադրում է կողմերի միջուկային զինանոցները սառեցնելու անհրաժեշտությունը։ Դա անելն ավելի ճիշտ կլիներ, քանի դեռ չեն գտնվել այլ լուծումներ։ Մենք առաջարկել ենք միջին հեռավորության միջոցների, ինչպես նաև ստրատեգիական սպառազինությունների սառեցում։ Դա, մեր կարծիքով, կլիներ սոսկ առաջին քայլը։ Մեզ առարկում են՝ ինչո՞ւ, իբր, սառեցում, երբ խոսքը պետք է վերաբերի կրճատումներին։ Իհարկե, գեղեցիկ է հնչում, բայց չարիքն այն է, որ մինչ դա հայտարարում են, այդ միջոցին մեծացնում են սպառազինությունները։ Ահա և ստացվում է ո՛չ սառեցում, ո՛չ էլ կրճատում։

Պակաս ապշեցուցիչ չէ հակադրությունը, երբ համեմատում ես ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի մոտեցումները սպառազինությունների սահմանափակման ու կրճատման մյուս պրոբլեմներին։

Ես արդեն ասացի, որ մենք պարտավորություն ենք ստանձնել առաջինը չգործադրել միջուկային զենք։ Եթե համանման հայտարարություն անեին ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի՝ միջուկային զենք ունեցող մյուս անդամները, ամբողջ երկրագնդի մարդիկ թեթևացած շունչ կքաշեին։ Թվում էր, թե ինչու չանել այդ բանը։ Բայց մեր նախաձեռնությունը լռության պատին է հանդիպում։

Էլի մի օրինակ։ Ինչո՞վ արդարացնել, որ Արևմուտքը մինչև օրս չի արձագանքում Վարշավայի պայմանագրի և ՆԱՏՕ-ի երկրների միջև ռազմական ուժ չգործադրելու և խաղաղ հարաբերություններ պահպանելու պայմանագիր կնքելու վերաբերյալ ազնիվ, լավագույն մտադրություններով թելադրված առաջարկությանը, որը մտցրել է Սովետական Միությունը մյուս սոցիալիստական երկրների հետ միասին։ Դրա համար դժվար է գտնել խելացի բացատրություն։

Կամ եկեք տեսնենք, թե ինչպես է իրեն պահում այս և մյուս կողմը ստրատեգիական սպառազինությունների շուրջը վարվող բանակցություններում։ Համեմատենք երկու դիրքավորումները։ Մենք առաջարկում ենք ստրատեգիական զենք կրողների ընդհանուր թիվը էական, ավելի քան մեկ քառորդով, կրճատում, առանց որևէ բացառության։ Հավասար մակարդակներով կկրճատվեր նաև



դրանց վրա գտնվող միջուկային լիցքերի թիվը։ Իսկ ի՞նչ է պնդում ԱՄՆ-ը։ Նա միայն խոսում է կրճատումների մասին, բայց ըստ էության գործը տանում է դեպի իր ստրատեգիական սպառազինությունների նշանակալի, ուղղակի ասենք, «արմատական» մեծացում։ Պլանավորվում է լրացուցիչ կերպով ծավալել հենց միայն մեծ հեռավորության ավելի քան 12 հազար միավոր թևավոր հրթիռ։ Կհիշատակեմ նաև Վաշինգտոնից ստացված ամենաթարմ լուրերը. պրեզիդենտի սեղանին դրված է ևս մի պլան՝ ամենամոտ տարիներս լրացուցիչ կերպով ծավալել նոր տիպի զգալի թվով միջմայրցամաքային բալիստիկ հրթիռներ։

Սա սպառազինությունների անզուսպ մրցավազք է։ Այլ կերպ անվանել չես կարող։

Գաղտնիք չէ նաև այն, որ ԱՄՆ-ը կուտակում ու պլանավորում է կիրառել մասսայական ոչնչացման այնպիսի ահավոր զենք, ինչպիսին է քիմիական զենքը։ Այդ զենքը արդեն բերվում է Եվրոպա, իսկ ԱՄՆ-ում ինտենսիվ կերպով մշակվում են նրա նոր, է՛լ ավելի կործանարար տեսակներ։ Իսկ մենք առաջարկում ենք արգելել քիմիական զենքի ստեղծումը, արտադրությունն ու պաշարների կուտակումը, առհասարակ ոչնչացնել այն։ Թվում էր, թե այստեղ հարց չկա և չի կարող լինել։ Սակայն թե՛ ԱՄՆ-ում, թե՛ Արևմտյան Եվրոպայում գտնվում են գործիչներ, որոնք երկինք են հանում այդ զենքի «օգտակարությունը»։

Չեմ կարող մի քանի խոսք չասել սպառազինությունների կրճատման նկատմամբ վերահսկողության պրոբլեմի մասին։ Ասում են, թե Սովետական Միությունը, իբր, դեմ է վերահսկողությանը, ուստի և, իբր, նրա հետ դժվար է համաձայնության գալ։ Ըստ գերմանական պատկերավոր արտահայտության, դա «հին գդակ է», մաշված թեզիս։

Վերահսկողությունը մեզ համար կարևոր է ոչ պակաս, եթե ոչ ավելի, քան մյուսների համար։ Վերահսկողության հարցերին մենք մոտենում ենք առարկայորեն և ոչ թե ընդհանուր դեկլարացիաների առումով։ Մեր այդ մոտեցումը մարմնավորում գտավ ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման համաձայնագրերում։ Վերահսկողության հարցերում մեր քաղաքականությունը հեռուն գնացող քաղաքականություն է՝ ընդհուպ մինչև ընդհանուր և լրիվ վերահսկողության հաստատում, երբ բանը հասնի ընդհանուր և լրիվ զինաթափման։ Մենք դեմ ենք այն բանին, որ վերահսկողության պրոբլեմը գայթակղության քար դարձնեն բանակցություններում։

Այսպիսին է իսկական պատկերը։ Ես բերեցի միայն մի քանի փաստեր։ Դրանց ցանկը կարելի կլիներ շարունակել, բայց արդեն ասվածից երևում է, թե զինաթափման հարցերում ինչպիսի դիրքերում է կանգնած Սովետական Միությունը, և ինչպիսի դիրքերում՝ ԱՄՆ-ը։

Այժմ ինքներդ դատեցեք, թե ով է ձգտում ռազմական գերազանցության, իսկ ով՝ կողմերի հավասարության, ռազմական դիմակայության մակարդակի իջեցման։

**Հարց:** ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռեյգանը մտադիր է մինչև 1987 թվականն ընկած ժամանակաշրջանը սպառազինության ծախսերը հասցնել վիթխարի գումարի՝ 1.600 միլիարդ դոլարի։ Նա պլանավորում է ստեղծել միջմայրցամաքային «M—X» հրթիռներ, «Փերշինգ—2» հրթիռներ, թևավոր հրթիռներ և նույնիսկ տիեզերքում տեղաբաշխված հակահրթիռային սիստեմ, որը պետք է Միացյալ Նահանգները անխոցելի դարձնի։ Ի՞նչ եք Դուք մտադիր հակադրել դրան։

**Պատասխան:** Վերջին ժամանակներս Ռեյգանի վարչակազմի անդամների մոտ մոդայական է դարձել վիրավորվածների կեցվածք ընդունել, երբ նրանց մերկացնում են ռազմատենչ, ագրեսիվ նկրտումների մեջ։ Թերևս քաղաքականության մեջ անփորձ մարդկանցից ոմանց վրա այդպիսի կեցվածքը կարող է և տպավորություն գործել։ Երևի այն դրա համար էլ նախատեսված է։ Բայց նման դեպքերում ավելի լավ է դիմել փաստերին։ Իսկ փաստերն ասում են, որ ԱՄՆ-ը կանգնել է բոլոր ուղղություններով սպառազինությունների աննա-

խաղեպ մրցավազքի ծավալման ուղու վրա, ծայրաստիճան ուժեղացնում է միջազգային լարվածությունը։

Կոնկրետ կերպով ես այդ թվում նկատի ունեմ լայնամասշտաբ և բարձրարդյունավետ հակահրթիռային պաշտպանության մշակման Վաշինգտոնում հայտարարված պլանները։ Այդ ողջ ձեռնարկման արկածախնդրությունն ու վտանգավորությունն այն է, որ այստեղ հույսը դրվում է անպատժելիության վրա, այն բանի վրա, որ հասցնեն առաջին միջուկային հարվածը, կարծելով, թե կարող են իրենց վտանգազերծել պատասխան հարվածից։ Այստեղ բանը հեռու չէ նաև մինչև արձակման կոճակը ձգվելու գայթակղությունից։ Դա է ամերիկյան նոր ռազմական կոնցեպցիայի գլխավոր վտանգը։ Այն միայն ընդունակ է աշխարհը մոտեցնելու միջուկային անդունդին։ Ստացվում է այսպես. խոսում են պաշտպանության մասին, իսկ իրականում ակաս են դնում ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման ամբողջ պրոցեսի տակ։

Այն մասին, որ դա այդպես է, ասում են աշխարհի հեղինակավոր գիտնականները։ Մենք ԱՄՆ-ի կառավարությանն առաջարկում ենք՝ թող հանդիպեն սովետական և ամերիկյան գիտնականները, այդ գործի մասնագետները և քննարկեն հակահրթիռային պաշտպանության լայն մասշտաբի սիստեմ ստեղծելու հնարավոր հետևանքները։ Թող գիտությունն ասի իր ծանրակշիռ խոսքը։

Ավելի ու ավելի ակնհայտ է դառնում, որ ամերիկյան ռազմական պատրաստությունների բաղկացուցիչ մասը պատերազմ մղելու տիեզերական միջոցների մշակումն է։ Ուզում են զենքով հասնել տիեզերք և այնտեղից սպառնալ մարդկությանը։ Դա չի կարելի թույլ տալ։ Տիեզերքը պետք է մնա խաղաղ։ Մենք առաջարկել ենք կնքել միջազգային պայմանագիր տիեզերքում որևէ տեսակի զենք չտեղաբաշխելու մասին։ Մենք համոզված ենք, որ պետք է ավելի հեռուն գնալ. պայմանավորվել առհասարակ ինչպես տիեզերական տարածության մեջ, այնպես էլ տիեզերքից երկրագնդի նկատմամբ ուժ գործադրելն արգելելու մասին։

Սպառազինությունների մրցավազք չսկսել այնտեղ, որտեղ այն չի եղել, այն դադարեցնել այնտեղ, որտեղ այն այժմ տեղի ունի։ Ահա թե որն է մեր դիրքավորման էությունը, ահա ինչով ենք մենք ղեկավարվում բանակցություններում։

Սովետական Միությունը այսուհետև էլ հետևողականորեն կորոնի և կձգտի ընդհանուր լեզու գտնել ամերիկյան կողմի հետ։ Ավելի վաղ մտցրած մեր առաջարկությունները մնում են ուժի մեջ։ Եթե ամերիկյան վարչակազմը այս կամ այն պրոբլեմի վերաբերյալ մտցնի այնպիսի առաջարկություններ, որոնք նպատակամղված լինեն հավասար անվտանգության ոգով դրա լուծմանը, մենք դրանք անպայման քննության կառնենք դրական իմաստով։

**Հարց:** Ֆեդերալ կանցլեր Հելմուտ Կոլը մտադիր է շուտով այցելել Մոսկվա։ Ինչպե՞ս եք Դուք գնահատում ՍՍՀՄ-ի ու ԳՖՀ-ի հարաբերությունների հեռանկարները, և տեսնո՞ւմ եք Դուք, արդյոք, համագործակցության հնարավորություններ այն դեպքում, եթե Կոլի կառավարությունը իրականացնի ՆԱՏՕ-ի այսպես կոչված լրազինումը։

**Պատասխան:** ՍՍՀՄ-ի և Ֆեդերատիվ Հանրապետության խաղաղ, գործարար համագործակցությունը Եվրոպայի և ամբողջությամբ վերցրած միջազգային կյանքի կայունության էական գործոն է։ Կարծում եմ, որ դրա պահպանումը բխում է թե՛ ԳՖՀ-ի, թե՛ Սովետական Միության շահերից։ Դրա համար կա հիմք, լավ հիմք։ Դա մեր երկրների կողմից 70-ական թվականներին կնքված Մոսկվայի պայմանագիրն է և մի ամբողջ շարք այլ համաձայնագրեր։ Դա տարբեր բնագավառներում պրակտիկ համագործակցության համատեղ կուտակված փորձն է։

Սովետական Միությունում սպասում են կանցլեր Հ. Կոլի այցին, որի մասին սկզբունքային պայմանավորվածություն է ձեռք բերված։ Մենք հույսով ենք, որ այցի ընթացքում մեզ կհաջողվի ամրապնդել այն դրականը, ինչ որ կա մեր երկրների հարաբերություններում, և նշել ապագայի հեռանկարները։

Դրա հետ մեկտեղ, գնահատելով մեր հարաբերությունների հեռանկարները, մենք, բնականաբար, չենք կարող վերացարկվել ԳՖՀ-ում ամերիկյան նոր միջուկային հրթիռների տեղաբաշխման պլաններից։



Ինքներդ դատեցեք, թե ինչպիսի վնաս կհասցվեր այդ հարաբերություններին, եթե ԳՖՀ-ի տերիտորիան վերածվեր պլացդարմի ՍՍՀՄ-ին ու նրա դաշնակիցներին միջուկային հարված հասցնելու համար։ Եթե այդպիսի բան պատահեր, դա ամենածանր հետևանքները կունենար հենց իր՝ ԳՖՀ-ի համար։

Բայց կրկնում եմ, Սովետական Միությունը գործի այդպիսի ընթացքի վճռական հակառակորդն է։ Մենք առաջարկում ենք այժմյան դրությունից դուրս գալու այլ ուղի, որն ամրապնդեր թե՛ ԳՖՀ-ի, թե՛ Սովետական Միության անվտանգությունը և մեր երկու երկրներին թույլ տար հաջողությամբ համագործակցել հօգուտ Եվրոպայի և ընդհանուր խաղաղության ամրապնդման։

**Ռ. Աուգշտայն:** Շատ ուրախ եմ, որ ինձ հնարավորություն ընձեռվեց հանդիպելու և զրուցելու Սովետական Միության բարձրագույն ղեկավարի հետ։ Մենք արդեն ձևակերպել էինք մի քանի հարցեր, որոնց պատասխաններն ստացանք գրավոր ձևով։ Ես պետք է ասեմ, որ մեր հանդիպումից առաջ արդեն ծանոթացա Ձեր պատասխանների տեքստին։ Չգիտեմ, Դուք արդյոք հիմա այն պաշտոնապես ինձ կհանձնեք, թե կարելի է կարծել, որ այն արդեն մեզ հանձնված է։

**Յու. Վ. Անդրոպով:** Ես պատրաստ եմ Ձեզ հանձնելու այս տեքստը։ Կարծում եմ, որ սա ամենախելացի և հարմար եղանակն է։ Սա Ձեզ բավարարո՞ւմ է։

**Ռ. Աուգշտայն:** Այո, իհարկե։ Ձեզանից շնորհակալ եմ։ Սակայն քանի որ ոչ մի տեքստ չի կարող սպառիչ լինել, ես թույլտվություն կխնդրեի այստեղ Ձեզ տալու լրացուցիչ մի քանի հարց։

**Յու. Վ. Անդրոպով:** Խնդրեմ։

**Ռ. Աուգշտայն:** Արևմուտքում հաճախ կարելի է լսել այնպիսի պնդումներ, թե որոշակի ժամանակաշրջանում, երբ Միացյալ Նահանգները այնպիսի տեմպերով չէին սպառազինվում, ինչպես այդ անում են և պլանավորում են անել այժմ, Սովետական Միությունը ակտիվորեն մեծացնում էր իր սպառազինությունները։ Դրա հետևանքով, ըստ այդ պնդումների, 70-ական թվականների ընթացքում սովետական սպառազինությունները մեծացան, իսկ ամերիկյան սպառազինությունները նույնիսկ կրճատվեցին։

**Յու. Վ. Անդրոպով:** Այդ պնդումները նոր չեն, դրանք հատկապես ակտիվորեն են տարածում ամերիկացիները, բայց նրանց նաև օգնում են ՆԱՏՕ-ի գծով իրենց դաշնակիցները։

Ես հատկապես չեմ պատրաստվել պատասխանելու այդ հարցին, բայց հեշտ է ապացուցել, որ Ձեր բերած պնդումները իրականությանը չեն համապատասխանում։ Իսկ եթե սկսենք սկզբից, ապա թույլ տվեք հիշեցնել, որ Սովետական Միությունը չէ, որ արեց ատոմային զենքի գյուտը և առաջինը զինվեց դրանով։ Չէ՞ որ բավականաչափ երկար ժամանակ եղավ, երբ մենք առհասարակ այդպիսի զենք չունեինք, իսկ ամերիկացիները ունեին և փորձում էին շանտաժի ենթարկել մեզ և ամբողջ աշխարհին։ Մենք ստիպված եղանք հասնել նրանց։ Անցավ մի քանի տարի, և Սովետական Միությունը նույնպես ունեցավ ատոմային զենք։ Մենք հարկադրված էինք դա անել։ Ահա թե բանն ինչպես եղավ։

**Ռ. Աուգշտայն:** Բայց մի՞թե այնպես չեղավ, որ 1977 թվականին Սովետական Միության բարձրագույն ղեկավարությունը ինքը խոստովանեց, թե երկու կողմերի միջև գոյություն ունի սպառազինությունների մոտավոր հավասարություն։

**Յու. Վ. Անդրոպով:** Ճիշտ է։ Բայց ես Ձեր հարցի իմ պատասխանը դեռ չեմ ավարտել։ Եթե շարունակենք հետևել իրադարձությունների զարգացմանը ըստ մի շարք փուլերի, ապա բանն այսպես եղավ։ Միացյալ Նահանգներն սկսեցին ինտենսիվորեն կատարելագործել իրենց միջուկային զենքը։ Միաբլոկ լիցքերից նրանք անցան կասետավոր մարտագլխիկների։ Այն ժամանակ մենք

էլ ստիպված եղանք նույնն անել։ Այնուհետև ամերիկացիները սկսեցին զինվել անհատական նշանառության անջատվող գլխամասերով։ Ի պատասխան՝ մենք էլ ստիպված եղանք նույն բանն անել։ Ապա ԱՄՆ-ն սկսեց անջատվող գլխամասերով հրթիռներ տեղակայել իր սուզանավերում, մի բան, որ մենք այն ժամանակ չունեինք։ Հարկ եղավ այստեղ էլ նրան պատասխանել նույնով։

Ուժերի մոտավոր հավասարակշռություն կա, մենք հիմա էլ ենք այդպես կարծում, կա մոտավոր պարիտետ։

Այսպիսով, բանը շարունակ այնպես է եղել, որ սպառազինությունների մեծացման հարցում մենք միայն հետևել ենք ամերիկացիներին և ոչ թե ընդհակառակն։ Ընդ որում, հասնելով ԱՄՆ-ին, մենք շարունակ առաջարկել ենք դադարեցնել այդ մրցավազքը, առաջարկել ենք երկու կողմերից էլ սառեցնել սպառազինությունների մակարդակը և անցնել դրանց կրճատման։ Ցավոք, մենք այդ առթիվ ամերիկյան կողմի համաձայնությունը չենք ստացել։

Եթե այժմ խոսելու լինենք ներկայիս իրավիճակի մասին, ապա, իհարկե, դրա գնահատմանը կարելի է մոտենալ տարբեր կերպ, օգտվելով տարբեր մեթոդներից ու մոտեցումներից։ Միացյալ Նահանգները, օրինակ, գտնում էին, որ իրենց միջուկային զենքն ավելի անխոցելի կլինի, եթե այն տեղակայեն սուզանավերում։ Եվ նրանք այդ բանն արեցին։ Եվ դա հասկանալի է, քանի որ ԱՄՆ-ը ծովային տերություն է։ Մենք ցամաքային տերություն ենք, և մեր միջուկային զենքի մեծ մասը տեղաբաշխված էր ցամաքում։

Իսկ հիմա ամերիկացիներն առաջարկում են, թե եկեք կրճատենք այն միջուկային զենքը, որ տեղաբաշխված է ցամաքում, իսկ ծովային բազավորման հրթիռները թողնենք մի կողմ։ Նման մոտեցումը մեզ, բնականաբար, ձեռնտու չէ։ Մենք մեր հերթին ի նկատի ենք առնում երկու կողմերի ունեցած միջուկային զենքի բոլոր տեսակները և առաջարկում ենք մեկ և մյուս կողմից դրանց հավասարաչափ կրճատում՝ ընդհուպ մինչև ի վերջո դրանց լիակատար վերացումը։

Ինչ վերաբերում է երկու կողմերի ուժերի հարաբերակցության վերաբերյալ մանրամասն տվյալներին, ապա այդ թեմայով վերջերս արդեն հրապարակայնորեն հանդես եկավ մեր պաշտպանության մինիստր Դ. Ֆ. Ուստինովը, որը բերեց մանրամասն տվյալներ ու թվեր։ Դուք հեշտությամբ կարող եք նայել այդ թվերին և կհամոզվեք այն բանի արդարացիությանը, ինչ այստեղ ես ձեզ ասացի։

**Ռ. Աուգշտայն:** Արևմտյան Եվրոպայում շատերն զգում են, որ իրենց համար առանձնահատուկ սպառնալիք են ներկայացնում սովետական ՍՍ—20 հրթիռները, որոնք մի նոր և չափազանց արդյունավետ զինատեսակ են։

**Յու. Վ. Անդրոպով:** Իսկն ասած, այս թեման լուսաբանված է ձեզանից ստացված հարցերին իմ տված պատասխանների տեքստի մեջ։ Բայց կարող եմ լրացուցիչ ասել հետևյալը. ես հասկանում եմ, որ Եվրոպայի ժողովուրդները մտահոգություն և նույնիսկ անհանգստություն են զգում։ Մենք կողմնակից ենք, որ վերացվեն այդ անհանգստության պատճառները։ Մենք առաջարկում էինք զանազան տարբերակներ։ Առաջարկում էինք Եվրոպայից առհասարակ հեռացնել ամբողջ միջուկային զենքը՝ թե՛ միջին շառավղի և թե տակտիկական։ ԱՄՆ-ը նույնիսկ չպատասխանեց մեր այդ առաջարկությանը։ Նա շարունակում էր համառորեն առաջ քաշել իր, այսպես կոչված, «զրոյական տարբերակը», որը նույնիսկ այնքան չարժե, որ նրա վրա այստեղ կանգ առնենք։ Մենք բազմիցս ցույց ենք տվել դրա իսկական էությունը։ Այնպես որ, գոյություն ունեցող դրության առթիվ մտահոգության հարցում մեր և ձեր միջև տարակարծություններ չկան։ Իսկ ահա Միացյալ Նահանգները կցանկանային իրենց միջուկային հրթիռները տեղաբաշխել Արևմտյան Եվրոպայի տերիտորիայում, թե՛ ձեզ՝ արևմտյան գերմանացիներին, թե՛ բելգիացիներին, թե՛ հոլանդացիներին դարձնել իրենց պատանդները։

Մենք դեմ ենք դրան։ Մենք առաջարկել ենք դրությունից դուրս գալու զանազան ուղիներ, որոնք թույլ կտային կամ բոլորովին վերացնել փոխադարձ սպառնալիքը, կամ էլ զգալիորեն թուլացնել գոյություն ունեցող լարվածությունը։



**Ռ. Աուգշտայն:** Սովետական Միությունը հայտարարել է, որ եթե Ժնևի բանակցությունները դրական արդյունքների չհանգեցնեն, և ամերիկյան հրթիռները, այնուամենայնիվ, տեղաբաշխվեն Եվրոպայում, ապա ՍՍՀՄ-ը հրթիռներ կտեղաբաշխի ԱՄՆ-ի տերիտորիայից մոտավորապես նույնքան հեռավորության վրա։ Ես կցանկանայի Ձեզ, պարոն գլխավոր քարտուղար, հարց տալ, թե Դուք իրո՞ք մտադիր եք այդ բանն անել, և եթե այո, ապա աշխարհի ո՞ր շրջաններում կարող էին տեղաբաշխվել ձեր հրթիռները։

**Յու. Վ. Անդրոպով:** Նույնիսկ որպես գաղտնիք ես ձեզ այդ չեմ ասի հասկանալի պատճառներով։ Բայց եթե խոսելու լինենք ըստ էության, ապա ուզում եմ հավաստել. մենք ամերիկացիների գործողությունների պատասխանը կգտնենք ինչպես անմիջականորեն ԱՄՆ-ի տերիտորիայի առնչությամբ, այնպես էլ Եվրոպայի առնչությամբ։ Միջուկային զենքի շուրջ վարվող բանակցությունները «պոկեր» թղթախաղը չեն, երբ մարդ տարվում է, բայց կարող է հույս ունենալ, որ հետո գործերը մի կերպ կշտկի։ Այդ բանակցությունները վերաբերում են թե՛ Սովետական Միության և թե՛ ԱՄՆ-ի, թե՛ Վարշավայի պայմանագրի երկրների և թե ՆԱՏՕ-ի երկրների ժողովուրդների բառիս բուն իմաստով կյանքի ու մահվան հարցերին։ Մենք չենք կարող անհոգ վերաբերմունք հանդես բերել մեր սահմաններից ոչ այնքան հեռու ավելի քան 500 միջուկային հրթիռների տեղաբաշխման հեռանկարի նկատմամբ, ի լրումն ֆրանսիական ու անգլիական այն հրթիռների, որոնք արդեն ուղղված են մեզ վրա։ Մեր պատասխան միջոցառումները միանգամայն արդարացված կլինեն ամեն մի տեսակետից, այդ թվում՝ ըստ ամենաբարձր բարոյական ստանդարտների։

**Ռ. Աուգշտայն:** Դուք այստեղ հիշատակեցիք ֆրանսիական հրթիռները, և դա ինձ ստիպում է վերհիշել մի այլ հարց։ Սովետական Միությունը շատ լավ հարաբերություններ ուներ Ֆրանսիայի հետ։ Եվ այնպես ստացվեց, որ հենց սոցիալիստների կառավարությունը, որին մասնակցում են կոմունիստներ, պահանջեց, որ մոտավորապես 50 սովետական դիվանագետներ և այլ աշխատողներ հեռանան Ֆրանսիայից։ Դուք ինչպե՞ս եք գնահատում այդ իրադարձությունը։

**Յու. Վ. Անդրոպով:** Ես ինչ կարող եմ ասել այդ առթի՞վ։ Նախ և առաջ, ես չէի ցանկանա, որ սովետական մարդկանց դեմ կատարված պրովոկացիոն կոպիտ քայլի համար մեղքը դրվեր ֆրանսիական սոցիալիստների և, մանավանդ, կոմունիստների վրա։ Մեզ լավ հայտնի է, որ այդ գործողության ետևում կանգնած են այնպիսի ուժեր, որոնք չեն ցանկանում, որ Ֆրանսիան և Սովետական Միությունը լավ հարաբերություններ ունենան։ Եվ հնարավոր է, որ այդպիսի ուժեր կան ոչ միայն Ֆրանսիայի ներսում, այլև նրա սահմաններից դուրս։ Բնավ չի երևում, թե այդ քայլը համապատասխանում է Ֆրանսիայի ազգային շահերին։ Դա կամայականության ակտ է։ Այն ոչ մի օրինական հիմք չունի։ Այն բոլոր պնդումները, թե իբր սովետական մարդիկ զբաղվել են անթույլատրելի գործունեությամբ, հերյուրանք են։

Կուզենայի նշել նաև մի այսպիսի փաստ։ Այն սովետական մարդկանց թվում, որոնց առաջարկվեց հեռանալ Ֆրանսիայից, կան այնպիսի աշխատակիցներ, որոնք արդեն կես տարի է, ինչ Ֆրանսիայում չեն աշխատում և գտնվում են Սովետական Միությունում։ Ոմանք էլ Ֆրանսիայում առհասարակ չէին հասցրել աշխատել նույնիսկ երկու շաբաթ։ Մի՞թե սա անհեթեթություն չէ։

Մեզ հայտարարում են միայն մի բան. սովետական աշխատակիցները զբաղվել են ինֆորմացիայի հավաքմամբ։ Բայց որքան ես հասկանում եմ, ամեն մի երկրի դիվանագիտական և այլ ծառայությունների, ամեն մի դեսպանության պարտականությունների մեջ է մտնում ինֆորմացիայի հավաքումը տվյալ երկրի մասին և այդ ինֆորմացիայի հանձնումը իր կառավարությանը։ Մի՞թե սա անթույլատրելի գործունեություն է։ Սա վավերագրված է միջազգային դիվանագիտական կոնվենցիաներում։

Ֆրանսիական իշխանությունների այդ գործողությունն անկարելի է որակել այլ կերպ, քան որպես սովետա-ֆրանսիական հարաբերությունների վատացման նպատակին ուղղված կանխամտածված քայլ։

Ֆրանսիայի մամուլի որոշ օրգաններում այն պնդումն է արվում, թե Մոսկվայում աշխատող ֆրանսիացիների նկատմամբ մեր կողմից պատասխան միջոցառումների բացակայությունը իբր հանդիսանում է Սովետական Միության կողմից իր «մեղքի» անուղղակի ընդունում։ Դա անհեթեթություն է։ Եթե մեր գործողությունները ոմանք այդպես են մեկնաբանում, ապա դրանով ցույց են տալիս, որ իրենք չեն ըմբռնում սովետական արտաքին քաղաքականությունը։ ՍՍՀՄ-ում աշխատող ֆրանսիացիների նկատմամբ պատասխան միջոցների դիմելը ամենից հեշտը կլիներ։ Հանդես բերելով զսպվածություն, մենք առաջնորդվում ենք սովետա-ֆրանսիական հարաբերությունների լայն շահերով, հարաբերություններ, որոնք մենք թանկ ենք գնահատում և որոնք կազմավորվել են երկար ժամանակի ընթացքում, առաջնորդվում ենք Եվրոպայում լարվածության թուլացման պահպանման շահերով։

Բայց դա չի նշանակում, թե մենք կհանդուրժենք սովետական դիվանագետների և արտասահմանյան մեր ներկայացուցչություններում աշխատող մյուս աշխատակիցների նկատմամբ կամայականությունը՝ որտեղ էլ այն լինի։

**Ռ. Աուգշտայն:** Այո, կարելի է ասել, որ Դուք տվյալ դեպքում գործեցիք աստվածաշնչի խորհրդի համապատասխան՝ եթե քո մի այտին խփում են, մյուսն էլ դեմ արա։

**Յու. Վ. Անդրոպով:** Այնքան էլ չէ։ Մենք քիչ ենք նման աստվածաշնչի կերպարներին։ Մեր ուղեցույցը եղել է քաղաքական սթափ հաշվարկը, սովետա-ֆրանսիական հարաբերությունների վատացում թույլ չտալու ձգտումը, և մենք իրերին նայել ենք ավելի լայն հայացքով, քան այդ նեղ լոկալ կոնֆլիկտն է։

**Ռ. Աուգշտայն:** Քանի որ մենք արդեն անդրադարձանք բիբլիական սյուժեներին, ես կուզենայի ասել հետևյալը։ Պրեզիդենտ Ռեյգանը, ելույթ ունենալով կրոնական լսարանի առջև, Սովետական Միությանն անվանեց «չարիքի կենտրոնակետ»։ Դուք, ի պատասխան այդ հայտարարության, նրան տվեցիք Ձեր գնահատականը։ Բայց ես կցանկանայի հարց տալ. նման մթնոլորտում արդյոք առհասարակ հնարավո՞ր են խելացի և հաջող բանակցությունները։

**Յու. Վ. Անդրոպով:** Մենք այնքան ռեալիստ ենք, որ ուշադրություն չենք դարձնում ճարտասանության վրա։ Եթե Ռեյգանը, բացի իր մեղադրանքներից, ընդուներ սպառազինությունների կրճատման հարցերի վերաբերյալ մեր թեկուզ մեկ կոնկրետ առաջարկությունը կամ ինքը առաջ քաշեր թեկուզ մեկ բանական, հարմար առաջարկություն, մենք կներեինք նրա, ինչպես ավելի մեղմ ասենք, հիմնազուրկ հայտարարությունը։ Ըստ երևույթին, ֆրանսիացիները իրավացի են, երբ նշում են, որ ամեն ոք խոսում է այն լեզվով, որով կարողանում է։

**Ռ. Աուգշտայն:** Հազվադեպ է այնպես լինում, որ ամբողջ չարիքը կամ ամբողջ մեղքը գտնվում է միայն մեկ կողմում, նույնիսկ եթե դա թվում է Արևելքին Արևմուտքի վերաբերմամբ և Արևմուտքին՝ Արևելքի վերաբերմամբ։ Այս կապակցությամբ ես պետք է հարցնեմ հետևյալը. Սովետական Միությունում արդյոք գիտակցո՞ւմ են, թե Աֆղանստանի հարցը որքան է փչացնում միջազգային մթնոլորտը, և արդյոք կա՞ն այդ դրությունը վերացնելու պլաններ։

**Յու. Վ. Անդրոպով:** Պատասխանելով Ձեր հարցի առաջին մասին, կասեմ՝ իհարկե, գիտակցում են։ Աֆղանական պրոբլեմի քաղաքական լուծման մեր պլանները գաղտնիք չեն։ Մենք դրանք շարադրել ենք հրապարակայնորեն և բազմիցս։ Այդ մասին խոսել է դեռևս Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը։ Մենք գտնում ենք, որ հենց որ դադարեցվի Աֆղանստանի գործերին դրսից կատարվող միջամտությունը և երաշխավորված լինի, որ այդ միջամտությունը չի վերսկսվի, մենք մեր զորքերը դուրս կբերենք։ Մեր զորքերը այդ երկրում գտնվում են Աֆղանստանի օրինական կառավարության, այն կառավարության խնդրանքով, որն այն ժամանակ գտնվում էր իշխանության գլուխ, և նրանք այնտեղ շարունակում են մնալ Բ. Քարմալի գլխավորած օրինական կառավարության խնդրանքով։ Մեզ համար մենք այնտեղ ոչինչ չենք փնտրում։ Մենք արձագանքել ենք բարեկամ դրացի երկրի օգնության խնդրանքին։ Բայց, անշուշտ, մեզ համար ամենևին էլ միևնույնը չէ, թե ինչ է կատարվում անմիջականորեն



մեր հարավային սահմանում։ Վաշինգտոնը նույնիսկ իրեն իրավունք է վերապահում դատելու, թե ինչ կառավարություն պետք է լինի Նիկարագուայում, քանի որ դա իբր շոշափում է ԱՄՆ-ի կենսական շահերը։ Բայց Նիկարագուան գտնվում է ԱՄՆ-ից ավելի քան 1000 կիլոմետրի վրա, իսկ մենք Աֆղանստանի հետ ունենք ընդհանուր երկար սահման։ Այնպես որ, օգնություն ցույց տալով բարեկամներին, մենք միաժամանակ մտածում ենք նաև սեփական անվտանգության շահերի ապահովման մասին։

Այժմ քաղաքական բանակցություններ են վարվում Աֆղանստանի հետ առնչված պրոբլեմների կարգավորման շուրջը։ Այդ բանակցությունները, իհարկե, ընթանում են դժվարությամբ, կարելի է ասել, պակիստանցիների թեքից քաշում են նրանց անդրօվկիանոսյան բարեկամները։ Բայց, այնուամենայնիվ, մենք կարծում ենք, որ ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարի ներկայացուցչի օգնությամբ տեղի ունեցող այդ բանակցությունները որոշ հեռանկարներ ունեն։

**Ռ. Աուգշտայն:** Ուզում եմ մեկ անգամ էլ վերադառնալ միջին հեռավորության հրթիռների հարցին։ Եթե ամերիկացիները դրանք, այնուամենայնիվ, տեղաբաշխեն ԳՖՀ-ում, ապա դուք ԱՄՆ-ի հետ արդյոք կշարունակե՞ք բանակցությունները Եվրոպայում միջուկային զենքի շուրջը։

**Յու. Վ. Անդրոպով:** Սովետական կողմից արդեն բազմիցս շեշտվել է, որ իրադարձությունների այդպիսի ընթացքը կնշանակեր կտրուկ փոփոխություն դեպի իրադրության վատացում ոչ միայն Եվրոպայում, այլև գլոբալ առումով։ Հենց ըստ այդմ էլ մենք ստիպված կլինեինք անհրաժեշտ որոշումներ ընդունել։

**Ռ. Աուգշտայն:** Մի հարց էլ կա, որ ԳՖՀ-ում մտահոգում է շատ շատերին։ Հայտնի է, որ որոշ սոցիալիստական երկրների արտաքին պարտքը այժմ խիստ վտանգավոր չափերի է հասել։ Այստեղ ո՞րն է հնարավոր ելքը ճգնաժամի խորացումից խույս տալու համար։ Չէ որ մենք բոլորս էլ Եվրոպայում կախված ենք մեկս մյուսից։

**Յու. Վ. Անդրոպով:** Քանի որ խոսքը վերաբերում է սուվերեն պետություններին, ես միայն այսքանը կասեմ, որ առաջացող պրոբլեմներից դուրս գալու ուղիներ գտնելը յուրաքանչյուր տվյալ երկրի սուվերեն գործն է։ Իսկ եթե խոսքն այն մասին է, թե իր կողմից ինչ կարող էր անել ԳՖՀ-ն, ապա ես կարող եմ միայն մի բան խորհուրդ տալ՝ առևտուր արեք, զարգացրեք տնտեսական հարաբերությունները և ոչ թե զբաղվեցեք «սանկցիաներով»։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1983 թվականի ապրիլի 27-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։

Պլենումը քննարկեց կուսակցության Լենինականի քաղաքային կոմիտեի հաշվետվությունը կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության աշխատանքի մասին՝ ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջների լույսի ներքո։

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Դ. Ա. Հարությունյանը:**

Քննարկված հարցի վերաբերյալ մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Լ. Ն. Ներսիսյանը,** ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղարը ընկ. **Հ. Ա. Օհանյանը,** Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի ավագ ձուլող վարպետ ընկ. **Ա. Գ. Աթիկյանը,** ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Լ. Մկրտչյանը,** ՀԱՄԽ-ի նախագահ ընկ. **Լ. Գ. Սահակյանը,** ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Կ. Հարությունյանը,** Երևանի «Երազ» ավտոմոբիլային միավորման էլեկտրիկների բրիգադավար ընկ. **Վ. Ի. Նուժնին,** Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. **Վ. Հ. Համբարձումյանը,** ՀԿԿ Աբովյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Գ. Ռ. Բարիկյանը,** ժողովրդական դեպուտատների Կրասնոսելսկի շրջանային սովետի գործկոմի նախագահ ընկ. **Ա. Ա. Մազանովը,** Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ ընկ. **Գ. Ա. Մարիտրոսյանը,** Հայկական ՍՍՀ դատախազ ընկ. **Ս. Ա. Օսիպյանը,** Հայկական ՍՍՀ բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության մինիստր ընկ. **Լ. Պ. Ղարիբջանյանը,** «Ռյա-թազա» թերթի խմբագիր ընկ. **Մ. Ս. Մստոյանը,** Լենինականի երկաթուղային հանգույցի կուսակցական կոմիտեի քարտուղար ընկ. **Թ. Ա. Վարդպարոնյանը:**

Պլենումում ընդարձակ ճառով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ընդունեց համապատասխան որոշում։

Պլենումը ընկ. **Գ. Ե. Ասատրյանին** հաստատեց ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ, ընկ. **Ա. Պ. Մելքոնյանին՝** ՀԿԿ Կենտկոմի գիտության և ուսումնական հաստատությունների բաժնի վարիչ։

Դրանով Կենտկոմի պլենումը ավարտեց աշխատանքը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցեց ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ ընկ. **Վ. Մ. Նիկիֆորովը:**

# ԿԱԴՐԵՐԻ ՀԵՏ ՏԱՐՎՈՂ ԱՇԽԱՏԱՆՔԸ՝ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՅՍՕՐՎԱ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ճառը ՀԿԿ Կենտկոմի 1983 թվականի ապրիլի 27-ի պլենումում*)

*Ընկերնե՛ր։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ներկա պլենումը քննարկում է կուսակցական աշխատանքի կարևորագույն հարցերից մեկը՝ կադրային հարցը։ Պլենումի օրակարգի հարցադրումն արդեն վկայում է այն մեծ ուշադրությունը, որ Կենտրոնական կոմիտեն, նրա բյուրոն և քարտուղարությունը մշտապես ցուցաբերում են կադրային աշխատանքի նկատմամբ։*

*Հարցի քննարկումը նախատեսված էր Կենտկոմի աշխատանքի հեռանկարային պլանով և, բնականաբար, տևական ժամանակ նախապատրաստվել է։ Կենտկոմի, նրա բյուրոյի շատ անդամներ հարցի նախապատրաստման ընթացքում եղան Լենինականի ձեռնարկություններում և կազմակերպություններում, հանդիպումներ ունեցան աշխատավորների հետ, ծանոթացան կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների աշխատանքին, քաղաքի կյանքին։*

*Մենք լսեցինք կուսակցության Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Հարությունյանի զեկուցումը կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության ուղղությամբ քաղաքային կուսակցական կազմակերպության և քաղկոմի աշխատանքի մասին։ Զեկուցումը, նրանում աշխատանքի դրական փորձի լուսաբանումը, թերությունների քննադատական վերլուծությունը, ինչպես նաև մտքերի փոխանակությունը պլենումի մասնակիցներին հնարավորություն են տալիս պատկերացում կազմել արվածի մասին, օբյեկտիվորեն գնահատել կուսակցական կազմակերպության գործունեությունը։*

*Լենինականի կուսակցական կազմակերպությունը, որն ունի հեղափոխական ու աշխատանքային փառապանծ ավանդույթներ, արժանավայել տեղ է գրավում հանրապետության կուսակցական կազմակերպության մեջ։ Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան քաղաքականության կենսագործման համար Հայաստանի կոմկուսի ամբողջ գործունեության մեջ նա մշտապես գտնվել ու գտնվում է առաջավոր շարքերում, պատվով կատարում քաղաքի աշխատավորների քաղաքական ղեկավարի ու կազմակերպչի իր առաքելությունը։*

*Այժմ, երբ Հայաստանի կոմկուսը, նրա բոլոր կազմակերպությունները*

---

*) *Տպագրվում է հապավումներով։*

համակողմանի աշխատանք են կատարում հանրապետության աշխատավորների ջանքերը ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան ու նոյեմբերյան պլենումների որոշումների, տնտեսական ու սոցիալական զարգացման ծրագրի հաջող կատարման համար մոբիլիզացնելու ուղղությամբ, նշանակալի է Լենինականի կուսակցական կազմակերպության և քաղաքի աշխատավորների ներդրումը այդ համակուսակցական և համաժողովրդական գործում։

Դրա վճռական նախապայմաններից մեկը կուսակցության կադրային քաղաքականության պահանջներին համապատասխանող կադրերի պատրաստման, ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության աշխատանքի իրականացումն է կուսակցության քաղկոմի կողմից։

Լենինականի քաղաքային կուսակցական կազմակերպությունը վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարել բանվոր դասակարգի շարքերը համալրելու, արտադրության, գիտության ու կուլտուրայի տարբեր ճյուղերը մասնագետ կադրերով ապահովելու, սովետական, տնտեսական մարմինները, ձեռնարկությունները ու կազմակերպությունները որակյալ, քաղաքականապես գրագետ, մարդկանց հետ աշխատելու փորձ ունեցող, բանիմաց ղեկավար աշխատողներով ամրապնդելու ուղղությամբ։ Կուսակցության քաղկոմը ուժեղացրել է պայքարը պետական, աշխատանքային և կատարողական կարգապահության, սոցիալիստական օրինականության խախտումների դեմ, կուսակցական էթիկայի և բարոյականության նորմերից կատարվող շեղումների դեմ։

Քաղկոմը, սկզբական կուսկազմակերպությունները կարևոր տեղ են հատկացնում կուսակցության դիրեկտիվների և սեփական որոշումների կատարման ստուգմանը, քննադատության և ինքնաքննադատության համակողմանի զարգացմանը, քննադատական դիտողությունների և առաջարկությունների սիստեմատիկ ընդհանրացմանը, դրանց իրականացման ընթացքի խստիվ վերահսկմանը։ Այս ամենը նպաստում է կարգապահության ամրապնդմանը, կադրերի պատասխանատվության բարձրացմանը։

Հետևողական աշխատանք է տարվում նաև կադրերի մարքս-լենինյան կոփման, նրանց գաղափարաբարոյական դաստիարակության նպատակով։

Լենինականցիները սիրում են իրենց քաղաքը, հպարտանում են նրանով, նրա հեղափոխական, մարտական, աշխատանքային և կենցաղային առաջադիմական ավանդույթներով։ Եվ, որ կարևոր է՝ այդ սերն ու հպարտությունը հայեցողական, պասիվ չեն։ Կուսակցական կազմակերպությունը դաստիարակչական հմուտ աշխատանքով այդ ամենը վերածում է ստեղծարար ակտիվ գործոնի։

Ամփոփ ասած, Լենինականի կուսակցական կազմակերպությունը հասել է այն բանին, որ բոլոր մակարդակի կադրերը՝ ամբողջությամբ վերցրած, քաղաքի գործերի վիճակի համար բարձր պատասխանատվության զգացումով իրենց ջանքերը ներդնում են տնտեսական ու կուլտուրական շինարարության, սոցիալական զարգացման և կոմունիստական դաստիարակության խնդիրների լուծման ասպարեզում։

Եվ իբրև արդյունք՝ տնտեսական ու սոցիալական զարգացման կայուն հաջողություններ, քաղաքի հասարակական-քաղաքական և կուլտուրական լիարյուն կյանք, մշտական համակողմանի առաջընթաց։

Բնականաբար, ինչպես ամեն մի մեծ գործում, կուսակցության քաղկոմի կադրային աշխատանքում կան նաև թերություններ, այն էլ ոչ քիչ թվով։ Դրանց մասին ասվեց զեկուցման մեջ, մի շարք ելույթներում։ Բայց ամբողջությամբ վերցրած, անտարակույս, պարզ է մի բան, որ Լենինականի կուսակցական կազմակերպությունը այլևայլ թերացումների հետ մեկտեղ կուտակել է աշխատանքի բավականաչափ դրական փորձ, որը որոշակի ուշադրության է արժանի։

Ընկերնե՛ր։

Հարցի քննարկումը, ինչպես որ ենթադրվում էր, վերածվեց սկզբունքային ու շահագրգռական օգտակար ու գործարար խոսակցության հանրապետության կուսակցական կազմակերպության կադրային աշխատանքի մասին։



Պլենումում ելույթ ունեցած ընկերները բարձր գնահատեցին ու հավանություն տվեցին Կենտկոմի, նրա քարտուղարության և բյուրոյի կադրային աշխատանքին, շեշտեցին նրա արդյունավետությունը և համապատասխանությունը կուսակցության կադրային քաղաքականության պահանջներին։ Միաժամանակ հայտնվեցին ոչ քիչ թվով ցանկություններ և արվեցին առաջարկություններ, որոնց նպատակն է առավել կատարելագործել հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեությունը այդ կարևորագույն բնագավառում։

Հարցի քննարկման բարձր ակտիվությունը հաստատում է նրա հրատապությունը, և տարակույս չկա, որ Կենտկոմի ներկա պլենումի աշխատանքի արդյունքները, նրա որոշումները լուրջ նշանակություն կունենան հանրապետության կուսակցական կազմակերպության հետագա ամբողջ գործունեության համար։

Այս կապակցությամբ Կենտկոմի բյուրոյի հանձնարարությամբ թույլ տվեք կանգ առնել կադրային աշխատանքի մի շարք կողմերի վրա և խոսել մեր խնդիրների մասին՝ կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումների, Կենտկոմի պլենումում ունեցած ելույթում և ՍՍՀՄ 60-ամյակի մասին զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի առաջ քաշած դրույթների, հետևությունների և ցուցումների լույսի ներքո։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ կադրերի ճիշտ ընտրությունն ու կատարման ստուգումը հենց աշխատանքի «միխն» են, կուսակցական ղեկավարման էությունը։ Վլադիմիր Իլյիչի աշխատություններում հստակ շարադրված են սոցիալիստական հասարակությունում կադրերի ընտրության, տեղաբաշխման, ուսուցման ու դաստիարակության սկզբունքները։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քաղաքական բարձր արվեստով է իրականացնում կուսակցության կադրային քաղաքականությունը։ Դա կադրային աշխատանքի գործնական մեծ դպրոց է կուսակցության բոլոր ջոկատների համար։

Հանրապետական կուսակցական կազմակերպությունը իր կադրային աշխատանքում ղեկավարվում է կուսակցության կադրային քաղաքականության հիմնարար սկզբունքներով, նրա համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի և նրա պլենումների որոշումների պահանջներով։

Հենց այդ հիման վրա և ի կատարումն ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման, մշակվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան պլենումի, Հայաստանի կոմկուսի XXVI և XXVII համագումարների որոշումները կուսակցական աշխատանքի, հատկապես կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործի բարելավման հարցերի վերաբերյալ։

Վերցվեց կուսակցության կադրային քաղաքականության պահանջների հետևողական կենսագործման, կադրերի նկատմամբ վստահության ու պահանջկոտության խելացի զուգակցման, նրանց որոշակի կայունության պահպանման, աշխատողների կարգապահության, պատասխանատվության և ինքնուրույնության բարձրացման կուրս, որը բացառում է ամեն տեսակ սուբյեկտիվիստական դրսևորում կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում։

Իրականացնելով մշակված միջոցառումները, վերացնելով բոլոր այն հանգամանքները, պատճառներն ու նախադրյալները, որ ժամանակին արատավոր, անցանկալի երևույթներ էին ծնել կադրային աշխատանքում, խիստ կշռադատված մոտեցում ցուցաբերելով կադրերի գործունեության գնահատմանը, Կենտկոմին հաջողվեց զգալիորեն բարելավել և կատարելագործել աշխատանքը կադրերի հետ, այն բարձրացնել կուսակցության արդի պահանջների մակարդակին։

Կուսակցական մարմինների նոմենկլատուրայի մեջ մտնող սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական, գիտական կադրերի կազմը, ինչպես նաև հենց իրենց՝ կուսակցական աշխատողների կազմը որոշակի, իսկ աշխատանքի մի շարք ուղղություններում՝ լուրջ փոփոխություններ կրեց որակական բարելավման իմաստով։ Կենտկոմը հետևողական աշխատանք կատա-







րեց արտադրության ու կառավարման բոլոր օղակները համապատասխան կադրերով՝ բանվորների, մասնագետների կադրերով, գիտական կադրերով, ղեկավար կադրերով ամրապնդելու համար։

Կուսակցական կազմակերպությունը գործադրում էր կադրային աշխատանքի միջոցների ամբողջ զինանոցը։ Մշակվեցին խնդիրների լուծման նոր մոտեցումներ, հաղթահարվում էր աշխատանքում եղած ստերեոտիպը։

Կենտկոմը բոլոր մակարդակների կադրերի ջանքերը նպատակամղում էր էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման խնդիրների լուծմանը։

Առանց կադրերի հետ տարվող աշխատանքի արմատական բարելավման մենք չէինք կարողանա ո՛չ ապահովել էկոնոմիկայի կայուն, դինամիկ աճը, ո՛չ հաջողությունների հասնել կուլտուրական շինարարության մեջ, ո՛չ ամենուրեք ստեղծել բարեբեր ստեղծագործական մթնոլորտ, ո՛չ էլ հաջողությամբ վճռական պայքար մղել մեր հասարակարգի էությանը խորթ բացասական երևույթների դրսևորումների, սոցիալիստական օրինականության և իրավակարգի խախտումների դեմ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումից հետո, տասներորդ հնգամյակում և տասնմեկերորդ հնգամյակի անցած երկու տարում լուծվեցին բազմապլան ու բարդ խնդիրներ, որոնք կարևոր նշանակություն ունեն հանրապետության հետագա համակողմանի զարգացման համար։ Հաջողությամբ իրականացվել են տնտեսական ու սոցիալական զարգացման ինչպես հնգամյա, այնպես էլ տարեկան ծրագրերը։

Հետևողական աշխատանք էր կատարվում և այժմ էլ շարունակվում է կատարվել ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման գործում երևան եկած զգալի անհամամասնությունները վերացնելու, տեղ գտած սխալները շտկելու, արդյունաբերության կառուցվածքը կատարելագործելու և հանրապետության արտադրողական ուժերի տեղաբաշխումը բարելավելու նպատակով։

Հաղթահարվեց տարիների ընթացքում ստեղծված կարծիքը հանրապետության գյուղատնտեսության զարգացման անհեռանկարայնության մասին («միակ ճիշտ» ուղին համարվում էր արդյունաբերության զարգացումը) և այդ կապակցությամբ վարվող արհեստական ուրբանիզացման քաղաքականությունը, որը բացասաբար անդրադարձավ գյուղատնտեսության վրա, արագացրեց միգրացիոն պրոցեսները և հանգեցրեց հանրապետության լեռնային ու նախալեռնային շրջանների բնակչության արտահոսքի։

Պայքար մղվեց ոչ միայն վնասակար կոնցեպցիան կասեցնելու համար, այլև իրականացվեց գյուղատնտեսության առաջանցիկ և արագ զարգացման քաղաքականություն, միաժամանակ ապահովվեց արդյունաբերության այնպիսի օպտիմալ զարգացում, որը նպաստում է բնակչության ամրացմանը տեղերում (և ոչ թե քաղաքներում ու շրջկենտրոններում)։

Ներկայումս լայն մասշտաբներով աշխատանքներ են տարվում գյուղում արտադրական և սոցիալական ժամանակակից ինֆրակառուցվածք ստեղծելու ուղղությամբ։ Կենտկոմը գյուղատնտեսության վիճակի խոր վերլուծության հիման վրա մշակել և իրականացնում է հանրապետության ջրապահովվածությունը բարձրացնելու, հողերի մելիորացման մասշտաբները մեծացնելու և տեմպերը արագացնելու, ինչպես նաև արդիական հիմքի վրա ջրատնտեսական շինարարությունն արագացնելու կուրսը։ Իրագործվում է 16 խոշոր ջրամբարների շինարարության ծրագիրը։ Հետևողականորեն ինտենսիվացվում է գյուղատնտեսական արտադրությունը, փոխադրվում ինդուստրիալ ռելսերի վրա և այլն։

Արմատապես փոխվել է վերաբերմունքը բնության և շրջակա միջավայրի նկատմամբ։ Մշակված է նոր մոտեցում, նոր հոգեբանություն, նոր վարքագիծ։ Բնության պահպանությունը դրված է պետական կարևորագույն խնդրի մակարդակի։ Այլ կերպ չէր կարող լինել, քանի որ թույլ տրված սխալների պատճառով, հիմնականում արդյունաբերության զարգացման գործում, իսկ երբեմն էլ չմտածված վճիռների հետևանքով, հանրապետության «մարմինը» ծածկվել



էր դժվար բուժելի վերքերով, շրջակա միջավայրը ավելի ու ավելի էր թունավորվում։

Վերցրած կուրսի կիրառումը արդեն իսկ հնարավորություն տվեց լուծել մեզ բոլորիս տևաբար հուզող շատ պրոբլեմներ, որոնք կենսական կարևոր նշանակություն ունեն հանրապետության էկոլոգիայի համար։ Կոմպլեքսայնորեն վճռվում է Սևանի բնական ռեսուրսների պահպանության պրոբլեմը։ Եվ մենք այսօր կարող ենք մեծ գոհունակությամբ ասել, որ լճի մակարդակը աստիճանաբար բարձրանում է։ Դադարեցվեց Հրազդանի հանքաքիմիական կոմբինատի շինարարությունը, հատկապես խիստ վնասակար արգնահողի արտադրությունը։ Ավարտին է մոտենում նրա վերապրոֆիլավորումը ժամանակակից հզոր մեքենաշինական ձեռնարկության։ Փակվել է «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կարբիդի արտադրությունը։ Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի թափոնների օգտագործումը այնպիսի աստիճանի է հասցված, որ Սանահին—Հաղպատ լեռնապարի բուսական աշխարհը վերակենդանանում է, մաքրվում է Դեբեդը։ Մեծապես մաքրվել են նաև Ողջի գետի ջրերը և այլն։

Լուծված է Հրազդանի ցեմենտի գործարանի փոխադրման հարցը, որը կիրականացվի Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատում նոր կարողություններ կառուցելուց հետո։ Այնպես որ, մի քանի տարի անց Մարմարիկի սքանչելի հովիտը մենք վերջնականապես կփրկենք աղտոտումից։

Գործնական քայլեր են արվում Քանաքեռի ալյումինի գործարանի էլեկտրոլիզի արտադրությունը վերացնելու նպատակով, որը լրիվ կփակվի 1984 թվականին։ Մեծ աշխատանքներ են իրականացվում Կիրովականի, հանրապետության մյուս քաղաքների ու շրջանների օդային ավազանն առողջացնելու նպատակով։

Արմատապես փոխվել է նաև վերաբերմունքը մեր մայրաքաղաքի՝ Երևանի հետագա զարգացման նկատմամբ։ Որպեսզի Երևանը դառնա ապրելու, աշխատելու, հանգստանալու համար առավել հարմար քաղաք, իրականացվում է մետրոպոլիտենի, հեռուստ, տրանսպորտային անցումների և ճանապարհների շինարարություն, կատարվում է խոշոր ծավալի բարեկարգում, կառուցվում են սոցիալ-կենցաղային և կուլտուրական օբյեկտներ։ Կուլտուրական կյանքի նոր զարկ կտան օպերայի թատրոնի, Ա. Խաչատրյանի անվան մեծ համերգասրահի վերակառուցումը, համերգամարզական համալիրը, որի շինարարությունը մոտենում է ավարտին և այլն։

Իսկ ինչպե՞ս է գեղեցկանում ու զարգանում Լենինականը, ինչպե՞ս են այնտեղ լուծվում տնտեսական ու սոցիալական բնույթի հարցերը, հին Գյումրիի և նոր սոցիալիստական քաղաքի առաջադիմական ավանդույթների զուգորդման հարցերը։ Իսկ ինչպե՞ս են նորի, արդիականի օրենքներով շեշտակիորեն կերպարանափոխվում Կիրովականը, Ղափանը և մյուս քաղաքներն ու շրջկենտրոնները։

Լուծված և լուծվող, իրագործված և իրագործվող այս հարցերի, պրոբլեմների և գործերի թվարկումն իսկ, որն ամենևին էլ լիակատար չէ, վկայում է, թե որքան աշխատանքով հագեցած ու լարված, բարդ ու դժվարին է եղել մեր կադրերի, բոլոր աշխատավորների առօրյան։

Եթե խոսելու լինենք բոլոր մակարդակի մեր կադրերի աշխատանքի ամփոփ գնահատականի մասին, ապա այն արտահայտվել է մեր ժողովրդի ու հանրապետության կյանքի այնպիսի ակնառու իրադարձություններով, ինչպիսիք են Սովետական Հայաստանի պարգևատրումը Լենինի երրորդ շքանշանով, մեր մայրաքաղաքի՝ Երևանի պարգևատրումը Լենինի շքանշանով, համամիութենական սոցիալիստական մրցության մեջ հանրապետության յոթ հաղթանակները և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշների նվաճումը, ՍՄԿԿ Կենտկոմի ողջույնի բազմակի ուղերձները հանրապետության գյուղատնտեսության աշխատավորների և շինարարական ու մյուս կազմակերպությունների աշխատողներին պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճա-

ռելու և ժողովրդատնտեսական կարևոր օբյեկտների շահագործման պլանային առաջադրանքները հաջողությամբ կատարելու առթիվ։

Մեր ամբողջ նվաճածը, կարելի է ասել, մեր կադրերի, հանրապետության հերոսական բանվոր դասակարգի, պանծալի կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքի ու ստեղծագործության համահավաք արգասիքն է։

Այս ամենը կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների սովետների, մինիստրությունների ու գերատեսչությունների, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական լարված, քրտնաջան գործունեության հանրագումարն է։

Այժմ էլ հենց նրանց, բոլոր աստիճանների և աշխատանքի բոլոր ուղղությունների մեր կադրերի ուսերին ընկած է մեծ պատասխանատվություն՝ ամրապնդել ձեռք բերածը, լուծել տնտեսական ու սոցիալական զարգացման բարդ ու խոշորածավալ նոր խնդիրները, կենսագործել կուսակցության տնտեսական ստրատեգիան, XXVI համագումարի որոշումները։ Հաղթահարելով տարերային աղետների առաջացրած դժվարությունները, ապահովել ընթացիկ հնգամյակի երրորդ՝ առանցքային տարվա տնտեսական ու քաղաքական խնդիրների անվերապահ կատարումը և բոլոր անհրաժեշտ ու վճռական պայմաններն ստեղծել տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները լրիվ և հաջողությամբ իրականացնելու համար։

Ոչ մի տարակույս չկա, որ մեր կադրերը այս ամենը պատվով կկատարեն։

Ընկերնե՛ր։

Կադրային քաղաքականության հարցերի նշանակությունն ու բովանդակությունը միշտ որոշվել են ժամանակի արմատական պրոբլեմային հարցերով, մեր հասարակության հետագա զարգացման գիտականորեն հիմնավորված ծրագրով, կուսակցության ստեղծարար պլանների ու նպատակների մասշտաբներով։

Սովետական Հայաստանի կոմունիստներն ու բոլոր աշխատավորները խոր գոհունակությամբ ընդունեցին և ջերմորեն պաշտպանեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթների բովանդակած դրույթներն ու հետևությունները։

«Կուսակցության ուշադրության կենտրոնում է,— նշված է «ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, նրա ինտենսիվացման կուրսի իրականացումը, հատուկ ուշադրություն է նվիրվում գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի ըստ ամենայնի արագացմանը և ձեռքի աշխատանքի բաժնի կրճատմանը, ռեսուրսների բոլոր տեսակների խնայողությանն ու ռացիոնալ օգտագործմանը, կապիտալ ներդրումների հատույցի մեծացմանը»։

Մեր կուսակցությունը կարևոր նշանակություն է տալիս ամենուրեք աշխատանքի լենինյան ոճի՝ ստեղծագործական ոճի հաստատմանը, որն ապահովում է գիտական մոտեցում բոլոր հասարակական պրոցեսներին, բարձր գործարարություն, կոնկրետություն ու պահանջկոտություն, անհաշտ վերաբերմունք ձևամոլության, բյուրոկրատիզմի և պարադայնության բոլոր դրսևորումների նկատմամբ, պահանջում է մշտապես հենվել մասսաների վրա։

Անհրաժեշտ է ամենուրեք ուժեղացնել պատասխանատվությունը համապետական շահերի պաշտպանության համար, բարելավել աշխատավորների սոցիալ-կենցաղային սպասարկման գործը, ստեղծել այնպիսի տնտեսական ու կազմակերպական պայմաններ, որոնք խթանեն որակյալ, արտադրողական աշխատանքը, նախաձեռնությունն ու սոցիալիստական ձեռներեցությունը, վճռական պայքար մղել կուսակցական, սովետական, պետական և աշխատանքային կարգապահության ամեն կարգի խախտումների դեմ։

Այս խնդիրների լուծմանն է բևեռված այժմ հանրապետական կուսակցական կազմակերպության ուշադրությունը։ Համապատասխանաբար, հենց դրան է ուղղված կադրային աշխատանքն այսօր։

Ահա թե ինչու պլենումում հարկ ենք համարում ավելի լայնորեն խոսակցություն ծավալել կադրերի պատրաստման, կադրային աշխատանքի շուրջը։ Քանի որ կենսագործունեության ամեն ոլորտում, աշխատանքի բոլոր մակարդակներում զարգացման կանխագծումների կատարումը և, առհասարակ, յուրաքանչյուր ձեռնարկման իրականացումը կախված է կադրերից՝ բանվորներից, մասնագետներից, ծառայողներից, գիտական, ստեղծագործական, կառավարչական ու կուսակցական աշխատողներից։ Կադրերի գլխավոր, հիմնական դարբնոցը աշխատանքային կոլեկտիվն է, ուր ձևավորվում, աճում ու դաստիարակվում են նրանք։ Դրա համար էլ կուսակցական կազմակերպությունների և կոմիտեների կադրային աշխատանքի ծանրության կենտրոնը գտնվում է այստեղ։

Մեծ ու բազմապիսի կադրային աշխատանքում կուսակցական, քաղաքական կարևորագույն խնդիրը եղել և մնում է հոգատարությունը նյութական արտադրության ոլորտի կադրերի նկատմամբ։

Մենք իրավամբ հպարտանում ենք մեր պանծալի բանվոր դասակարգով, որն իր հերոսական աշխատանքով փայլուն էջեր է գրել Սովետական Հայաստանի պատմական նվաճումների տարեգրության մեջ։ Անսահմանորեն նվիրված կոմունիզմի իդեալներին, նոր կյանքի կառուցման բոլոր փուլերում, կուսակցության ղեկավարությամբ նա հանդես է եկել որպես հանրապետության գլխավոր ստեղծարար ուժ։ Նրա եռանդով, մտքով, տաղանդով ստեղծված նյութական հարստությունները Սովետական Հայաստանի հետագա ծաղկման ու համակողմանի առաջադիմության հիմքերի հիմքն են։

Կուսակցական կազմակերպությունը հոգ է տարել, որպեսզի հանրապետության բանվոր դասակարգն աճի ինչպես քանակապես, այնպես էլ որակապես։

1970 թվականի համեմատությամբ, բանվորների թիվը հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ներկայումս մեծացել է ավելի քան 1,5 անգամ և կազմում է պատկառելի թիվ՝ մոտավորապես 900 հազար։ Բարձրացել է նրանց մասնագիտական մակարդակը։

Գիտատեխնիկական առաջադիմության վերընթաց զարգացումը, բնականաբար, լուրջ փոփոխություններ է մտցնում աշխատանքի բովանդակության մեջ, երևան են գալիս նոր մասնագիտություններ, որոնց տիրապետելը պահանջում է բարձր հանրակրթական մակարդակ, գիտատեխնիկական խոր գիտելիքներ և հատուկ պատրաստություն։

Եթե մենք ուզում ենք հաջողությամբ զարգացնել էկոնոմիկան, ունենալ բարեխիղճ լիակատար իմաստով արդիական արտադրություն, հաջողությամբ լուծել արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի, նրա արտադրողականության բարձրացման խնդիրը, ապա պարտավոր ենք առաջին հերթին հոգ տանել բանվորական կադրերի մասնագիտական և կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման մասին, հետևողականորեն բարելավել նրանց որակավորման բարձրացման համակարգը, ամենայուրօրինակ ուշադրություն նվիրել բանվոր դասակարգի շարքերը երիտասարդներով համալրելուն, նրանց ուսուցանելուն ու դաստիարակելուն։ Դա պետք է լինի կուսակցական կազմակերպությունների և կոմիտեների առաջին պատվիրանը։

Այստեղ մեծ է պրոֆտեխկրթության համակարգի դերը։ Ամեն տարի արդյունաբերական, գյուղատնտեսական արտադրություն և հանրապետության ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերն են գալիս պրոֆտեխնիկական ուսումնարաններում բանվորական մասնագիտություն և միջնակարգ կրթություն ստացած հազարավոր պատանիներ ու աղջիկներ։ Եվ դա գնահատվում է ըստ արժանվույն։

Բայց դրա հետ մեկտեղ չենք կարող չասել նաև այն մասին, որ պրոֆտեխկրթության պետական կոմիտեի (ընկ. Ս. Միքայելյան) համակարգում խիստ դանդաղ է լուծվում ժողովրդական տնտեսության ճյուղերն անհրաժեշտ մասնագիտությունների բանվորական կադրերով ապահովելու, նրանց պատ-

ման նկատմամբ գոյություն ունեցող վերաբերմունքը, ուղղակի ասենք, նույնպես ոչ պետական մոտեցման հետևանք է։

Հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը պետք է արմատապես փոխի իր վերաբերմունքը այդ կարևոր գործի նկատմամբ, զգալիորեն ավելացնի արտամրցութային տեղերը և ապահովի որակյալ ընտրությունը երկրի առաջատար բուհեր ուսման ուղարկելու համար։ Անհրաժեշտ է, որ այս ուղղությամբ երիտասարդության շրջանում հետևողական, բացատրական և կազմակերպական աշխատանք կատարեն նաև մեր կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները։

Մասնագետների պատրաստման կապակցությամբ հարկ է նշել հետևյալը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը մշակել և իրականացնում են հանրապետության լեռնային ու նախալեռնային շրջանների տնտեսական ու սոցիալական առաջնահերթ զարգացման ծրագիր։ Այս գործում մեծ շահագրգռվածություն են դրսևորում տեղական կուսակցական և սովետական մարմինները։ Բայց բոլորը պետք է մի բան գիտակցեն՝ առանց համապատասխան կադրերի մենք ոչինչ չենք կարող հասնել։ Ուստի, անհրաժեշտ է արագացնել մասնագետ կադրերի պատրաստումը։ Դա վերաբերում է բոլոր ուղղությունների կադրերին։ Մենք կարևորագույն խնդիր ենք համարում ինտելիգենցիայի տեսակարար կշռի ավելացումը այդ շրջաններում։ Կենտկոմի որոշմամբ, կառավարությունը հանրապետության շրջաններին ամեն տարի կհատկացնի արտամրցութային տեղեր բուհերում։ Տեղական մարմինների խնդիրն է՝ լիովին օգտագործել այդ տեղերը, ուսման ուղարկելով արժանավոր պատանիների և աղջիկների, ուսման ժամանակամիջոցում սահմանված կարգի համաձայն նրանց ապահովելով թոշակով և այլն։ Ընդ որում, պարտադիր պայման պետք է լինի վերադարձը այն գյուղը, շրջանը, որտեղից նրանք ուսման են ուղարկվել։

Ընկերնե՛ր։

Ռեզերվ ստեղծելու, երիտասարդությանն ու կանանց համարձակորեն ղեկավար աշխատանքի առաջ քաշելու կարևորության մասին, այդ հարցերի վերաբերյալ կուսակցության ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումների իրականացման մասին մենք բազմիցս խոսել ենք։ Կարելի է բավականությամբ ասել, որ վերջին տարիներս կուսակցական կազմակերպությունները քիչ աշխատանք չեն կատարել այդ ուղղությամբ։

Իսկական ղեկավար աշխատող, գործի և մասսաների ղեկավար դառնալու համար հարկավոր է անցնել կյանքի որոշակի համալսարան, կյանքի որոշակի դպրոց, թրծվել նյութական, գիտամշակութային և հոգևոր բարիքների ու արժեքների ստեղծման եռուն, լարված աշխատանքի քուրայում։ Հենց պրակտիկ գործունեության ընթացքում, կուսակցության առաջադրած խնդիրների իրականացման պայքարի ընթացքում, մեր կադրերը մասնագիտական գիտելիքների բազայի վրա աստիճան առ աստիճան, քայլ առ քայլ ձեռք են բերում ղեկավար աշխատողի հմտություններ, հարստանում են փորձով, ստանում են գաղափարաքաղաքական կոփվածք, ձևավորվում են որպես ղեկավարներ։

Կադրերի կազմավորման ու ձևավորման մեծ դպրոց, ղեկավարման արվեստի ձեռքբերման նախնական աստիճան է ղեկավարման միջին օղակը ժողովրդական տնտեսության մեջ։

Եթե մենք ուզում ենք ստեղծել կադրերի հուսալի ռեզերվ, պետք է ավելի լավ ուսումնասիրենք այդ օղակի աշխատողների, նրանց գործնական ու քաղաքական հատկանիշները այն հաշվով, որպեսզի նրանց թվից համալրենք մեր ղեկավար կադրերի կազմը։

Սակայն կուսակցական կոմիտեները դեռևս պատշաճ ուշադրություն չեն դարձնում միջին օղակին, որտեղ կոփվում են մեր ապագա կադրերը։

Արդարև, արդյո՞ք նրանք միատեսակ ուշադրությամբ են ընտրում և հաստատում բարձր և միջին օղակների աշխատողներին։ Իհարկե, ոչ։ Արդյո՞ք բոլոր կուսակցական կոմիտեները, մինիստրություններն ու գերատեսչությունները, նրանց ղեկավար աշխատողները, կուսակցական կազմակերպությունները մոտիկից ու լավ են ճանաչում միջին օղակի կադրերին, նրանց հազորդակից



դարձնում ակտիվ հասարակական աշխատանքին, հետևում նրանց ձևավորմանը, աճին, քաղաքական կոփմանը։ Ցավոք, ոչ բոլորը։

Կարծում ենք, որ Կենտկոմի պլենումը կուսակցական, սովետական և տնտեսական մարմիններից կպահանջի արմատապես բարելավել միջին օղակի կադրերի հետ տարվող աշխատանքը։ Անհրաժեշտ է այդ աշխատանքը այնպես տանել, որ ապագա ղեկավար կադրերի պատրաստումը, նրանց ռեզերվի ստեղծումը սկսվեն արդեն միջին օղակում։ Յուրաքանչյուր ղեկավար աշխատող անպայմանորեն պետք է անցնի կոնկրետ պրակտիկ աշխատանքի դպրոցը։

Ընկերնե՛ր։

Հարկ ենք համարում կանգ առնել նաև գիտական կադրերի պատրաստման որոշ պրոբլեմների վրա, որոնք հասունացել և իրենց լուծումն են պահանջում։

Կենսագործունեության բոլոր կողմերի վրա մշտապես մեծանում է գիտության, գիտատեխնիկական առաջադիմության ազդեցությունը։ Գիտությունը ներկայումս դարձել է հզոր արտադրողական ուժ, և առանց դրա անհնար է առաջադիմությունը, էկոնոմիկայի արագ զարգացումը։

Սովետական Հայաստանը ունի գիտատեխնիկական հզոր պոտենցիալ, գիտնականների ու գիտական աշխատողների որակյալ կադրեր, որոնցով մենք իրավամբ հպարտանում ենք։ Մեծ է նրանց ներդրումը տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում հանրապետության ձեռք բերած նվաճումների մեջ։

Այսօրվա խնդիրներից կարևորագույնը գիտական կադրերի պատրաստման, օգտագործման և դաստիարակության ամբողջ գործի բարելավումն է։

Մարդկային կենսագործունեության ոչ մի ոլորտում զարգացումն այնպես պայմանավորված չէ անհատով, որքան գիտության մեջ։ Գիտական կադրերի ինտելեկտուալ հնարավորությունների, նրանց խորագիտակության, մասնագիտական պատրաստության, մեթոդաբանական զինվածության, տաղանդի մակարդակը վերջին հաշվով նաև հենց գիտության մակարդակն է։ Գիտնականների շարքերի համալրման հիմնական աղբյուրը ասպիրանտուրան է։ Ինչպիսի՞ն է գործերի վիճակն այստեղ։

Վերջին մի քանի տարվա ընթացքում հանրապետությունում չեն կատարվում ասպիրանտուրայի ընդունելության պլանները։ Գործերն ավելի վատ են նպատակային ասպիրանտուրայի բնագավառում։ Օրինակ, 1982 թվականին հանրապետության գիտությունների ակադեմիան նպատակային ասպիրանտուրա է ընդունել ընդամենը 21 մարդ՝ հատկացված 40 տեղերի պարագայում։ Իսկ ասպիրանտուրայի համակարգի ոչ արդյունավետ գործունեության, ասպիրանտների գիտական ղեկավարման ոչ պատշաճ մակարդակի մասին է խոսում ուսուցման ժամկետը դիսերտացիայի պաշտպանությամբ ավարտած ասպիրանտների ցածր տեսակարար կշիռը։ Վերջին ութ տարում հանրապետության բուհերի 800 ասպիրանտ-շրջանավարտներից ժամանակին է պաշտպանել ընդամենը 38 մարդ։ Իսկ 1982 թվականին ավարտած ասպիրանտներից ոչ ոք դիսերտացիան ժամանակին չի պաշտպանել։ Գիտական ղեկավարների ընդհանուր թվի 40 տոկոսը գիտության թեկնածու է։

Գիտական կադրերի հետագա հաջող աշխատանքի հիմքը դրվում է նրանց պատրաստման փուլում։ Ուստի, բարձրացնելով ասպիրանտուրայի աշխատանքի արդյունավետությունը, հարկավոր է նաև հոգ տանել այն մասին, որ ավելի շատ երիտասարդ հետազոտողներ անցնեն ամենահեղինակավոր գիտական հիմնարկների ու գիտնականների դպրոց, ինչպես հանրապետությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։

Մտահոգություն է պատճառում նաև բարձրագույն որակավորման գիտնականների պատրաստման գործը։

Հիմնական պատճառը գիտական կադրերի, առանձնապես երիտասարդ կադրերի պատրաստման անհետևողական, անբավարար աշխատանքն է։ Այստեղ տեղին է հիշեցնել, որ Հայաստանի կոմկուսի XXVI և XXVII համագումարներում բավական սուր կերպով դրվեց երիտասարդ գիտական կադրերի պատրաստման և նրանց հետ տարվող աշխատանքի բարելավման հարցը։

Ստեղծված կացությունը պետք է լրջորեն մտահոգի գիտությունների ակադեմիայի ղեկավարությանը (ընկ. Վ. Համբարձումյան), բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը (ընկ. Լ. Ղարիբջանյան), բուհերի, գիտահետազոտական և մյուս հիմնարկների կուսակցական կազմակերպություններին ու ղեկավարներին, որոնք պարտավոր են քննադատաբար վերանայել իրենց աշխատանքը և ակտիվորեն ու համակարգված ձեռնարկել հանրապետության գիտական պոտենցիալի հետագա մեծացման պրոբլեմի լուծմանը, այն դիտելով որպես կարևորագույն պետական խնդիր։ Իսկ կուսակցական կոմիտեները պետք է բարձրացնեն պահանջկոտությունը նրանց նկատմամբ, մշտապես ուշադրության կենտրոնում պահեն այդ կարևոր գործը։

Հանրապետության պետպլանը (ընկ. Հ. Սաղոյան) պարտավոր է ամենայն լրջությամբ բարելավել գիտական կադրերի պատրաստման պլանավորումը։

Կուսակցության շրջկոմները և քաղկոմները պետք է ավելի մտածված իրականացնեն նաև գիտության կազմակերպիչների պատրաստման, ընտրության ու դաստիարակման աշխատանքը։ Գիտական ղեկավար կադրերի, գիտության կազմակերպիչների ձևավորումը այսօր առավել առաջնահերթ խնդիրներից մեկն է։

Այդպիսի ղեկավարին պետք է ներհատուկ լինեն ոչ միայն գիտական մեծ հեղինակությունը, այլև կուսակցական ու քաղաքացիական դիրքերի հստակությունը, իր պարտականությունների խոր ըմբռնումը, պատասխանատվության բարձր զգացումը կուսակցության և ժողովրդի հանդեպ։

Գիտությունների ակադեմիայի և բուհերի, գիտահետազոտական ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների և մյուս գիտական, հետազոտական, նախագծային կազմակերպությունների ղեկավարները պետք է օգնեն, անհրաժեշտ պայմաններ ստեղծեն գիտական կադրերի ուսուցումը կատարելագործելու, նրանց վերապատրաստման համակարգի արդյունավետությունը բարձրացնելու գործում։ Կադրերի վերապատրաստումը պետք է անցկացնել այնպես, որ նրանք իսկապես տիրապետեն այն ամեն նորին, ինչը մեզ ընձեռում են մեր կյանքը, գիտությունը, առաջավոր փորձը, որպեսզի այդ վերապատրաստումը օգնի բարձրացնելու նրանց գործիմացությունը, աշխատանքի որակն ու արտադրողականությունը։

Ընկերնե՛ր։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունը չափազանց կարևոր նշանակություն է տալիս գաղափարախոսության ոլորտի կադրերի գործունեության հետևողական բարելավմանը, նրանց որակական աճին։

Իրականացնելով այս բնագավառի կադրերի պատրաստման, ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության աշխատանքը, կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է միշտ հաշվի առնեն, որ նրանք ուղղակի կամ անուղղակի կերպով մասնակցում են մյուսների դաստիարակման պրոցեսին։

Այստեղից էլ խնդիրը՝ պատրաստել այնպիսի գաղափարախոսական կադրեր, որոնք խորապես տիրապետեն մարքս-լենինյան ուսմունքին, լինեն համոզված, դիալեկտիկորեն մտածող, մեթոդաբանորեն զինված մարդիկ, կարողանան արագորեն արձագանքել հասարակական-քաղաքական ու տնտեսական կյանքի փոփոխություններին, ճիշտ մեկնաբանեն դրանք, ունենան լայն մտահորիզոն և բարձր կուլտուրա։

Կուսակցությունը պահանջում է ըստ ամենայնի բարելավել գաղափարախոսական ճակատի ղեկավար աշխատողների ընտրության գործը։ Մեր կուսակցական կոմիտեները այս աշխատանքում տակավին շատ թերություններ ունեն։ Չէ՞ որ կան փաստեր, երբ գաղափարախոսական հիմնարկի ղեկավարությունը վստահվում է ոչ քաջատեղյակ, անսկզբունքային, հստակ դիրքորոշում չունեցող աշխատողի։

Կուսակցական կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որ գաղափարախոսական կադրերը մշտապես բարձրացնեն իրենց որակավորումը և վարպետությունը՝ կարող լինեն վառ, տաղանդավոր, ոգեշնչված կերպով պրոպա-



գանդել, մասսաների, մեր հասարակության նորանոր սերունդների մեջ հաստատել մարքսիզմ-լենինիզմի գաղափարները՝ բանվոր դասակարգի այդ մեծ գաղափարական հավատամքը, սոցիալական լավատեսության այդ փիլիսոփայությունը, ներկայի և ապագայի փիլիսոփայությունը։

Այսօր պլենումում բավական հանգամանալի խոսվեց կադրերի դաստիարակության մասին, նրանց մեջ բարոյական վեհ հատկություններ, պարտքի զգացում, գործին նվիրվածություն սերմանելու մասին։ Ըստ էության սա նաև գրականության ու արվեստի առաջնային խնդիրն է։ Ավելին, գեղարվեստական կուլտուրան մարդկանց, մեր աշխատողների, մեր կադրերի մեջ այդ հատկությունների մշակմանը նպաստող ամենազորեղ միջոցներից է։

Կուսակցական կոմիտեների, ստեղծագործական միությունների, կուլտուրայի մինիստրության, կինեմատոգրաֆիայի պետական կոմիտեի, նրանց կուսակցական կազմակերպությունների հարատև և կարևորագույն խնդիրն է մշտապես հոգ տանել գեղարվեստական մտավորականության, երիտասարդ ուժերի պրոֆեսիոնալ աճի և դաստիարակության մասին։ Այս հարցում ես մենք պետք է օգտագործենք Մոսկվայում, Լենինգրադում և երկրի մյուս մշակութային կենտրոններում տաղանդավոր երիտասարդության ուսումնառության շարունակման և ստաժավորման հնարավորությունները։ Վերհիշենք, թե գեղարվեստական կուլտուրայի մեր ականավոր շատ գործիչներ ինչպիսի հսկայական օգուտ քաղեցին՝ երիտասարդ տարիներին վարպետության և քաղաքացիականության հիանալի դպրոց անցնելով երկրի խոշորագույն արվեստագետների մոտ։

Ընկերնե՛ր։

Մեզանում քիչ գործ չի արվում բնակչության սպասարկման ոլորտի աշխատանքը բարելավելու, ժողովրդական սպառման ապրանքների նկատմամբ նրա պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու և ծառայությունները ընդլայնելու համար։

Դրա հետ մեկտեղ այս մարզում դեռևս կան էական թերություններ, որոնք հիմնականում կապված են կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման հետ։

Գլխավոր թերությունն է, որ հաճախ ղեկավար պաշտոններում նշանակվում են անիրազեկ, նախաձեռնությունից զուրկ մարդիկ, իսկ երբեմն էլ՝ պատահական, կասկածելի վարք ունեցողներ։ Այս ոլորտում դեռևս տեղ են գտնում վարկաբեկված անձանց մի ղեկավար պաշտոնից մյուսը փոխադրելու փաստեր։ Այստեղ չեն վերացված հովանավորության ու հաշտվողականության դրսևորումներն իրենց պաշտոնական դիրքը չարաշահողների (հիմնականում ղեկավար աշխատողների՝ առևտրի վարչությունների պետեր, խանութների, ճաշարանների, համակարգի այլ ձեռնարկությունների և կազմակերպությունների դիրեկտորներ) նկատմամբ։

Սպասարկման ոլորտում արմատախիլ չեն արված սովետական առևտրի կանոնների, մանրածախ գների և գնացուցակների խախտման, պատվերների կատարման ժամկետների ձգձգման, գնորդների և պատվիրատուների, այցելուների և ուղևորների նկատմամբ կոպտության և անհարգալից վերաբերմունքի դրսևորման դեպքերը։ Այս ամենը առաջին հերթին կուսակցական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքի ցածր մակարդակի հետևանքն է, համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների լիբերալիզմի, կուսակցական կոմիտեների թույլ վերահսկողության և պահանջկոտության հետևանքը։

Անբարեհաջող են գործերը նաև կանանց ու մասնագետներին ղեկավար աշխատանքի առաջ քաշելու բնագավառում, որտեղ նրանց տեսակարար կշիռը բացահայտորեն փոքր է աշխատողների ընդհանուր թվի համեմատ։ Այդ բացը հարկավոր է շտկել։

Առևտրի մինիստր ընկ. Ս. Սաֆարյանը, Հայկոոպի նախագահ ընկ. Է. Սարգսյանը, բնակչության կենցաղային սպասարկման մինիստր ընկ. Ս. Թումանյանը, ավտոտրանսպորտի մինիստր ընկ. Խ. Դրամփյանը, նրանց տեղակալները, այդ և բնակչության սպասարկման հետ անմիջական առնչություն

ունեցող մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների կոլեգիաները և ղեկավար աշխատողները պարտավոր են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի պահանջներին համապատասխան ավելի ակտիվորեն և ավելի արդյունավետ աշխատել, բարելավել գործերի վիճակը այդ կարևոր մարզում, վերացնել վերը նշված թերությունները, հատկապես սոցիալիստական սեփականության պահպանության գործում, ուժեղացնել պայքարը սպասարկման ոլորտում նկատվող բացասական երևույթների դեմ։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է ուժեղացնեն կազմակերպչական աշխատանքը բնակչության սպասարկման համակարգում, ամրապնդեն նրա ձեռնարկություններն ու կազմակերպությունները գործին նվիրված, բանիմաց և ազնիվ ղեկավար կադրերով։ Բարելավելով այդ բնագավառում կադրերի հետ տարվող աշխատանքը, անհրաժեշտ է նրանց դաստիարակել պետական առաջադրանքների, իրենց պաշտոնական պարտականությունների կատարման համար պատասխանատվության, թերությունների հանդեպ անհանդուրժողականության ոգով, կարգապահության խստագույնս պահպանման, սոցիալիստական սեփականության նկատմամբ սրտացավ վերաբերմունքի և ըսպասարկման բարձր կուլտուրայի ոգով։

Ընկերնե՛ր։

Իրավապահպան մարմինների կադրերի ընտրության և դաստիարակության աշխատանքը միշտ էլ ունեցել է առանձնահատուկ նշանակություն։ Գլխավորը այդ մարմինների կուսակցական կազմակերպությունների աշխատանքում եղել և մնում է այն, որ առանց բացառության բոլոր աշխատողները կատարեն լենինյան պատվիրանը՝ «...կուլտուրական կերպով պայքարել հանուն օրինականության»։

Իրավապահպան մարմիններում տարվող կադրային աշխատանքն ունի իր առանձնահատկությունը։ Եթե կադրերն ընտրվել են ճիշտ և քաղաքական ու բարոյական հատկանիշներով համապատասխանում են իրենց կոչմանը, ապա նրանք միշտ բարեխղճորեն և պատվով կկատարեն կարևոր պետական պարտականությունները, ծառայական պարտքը։ Իսկ եթե նրանք լրիվ չեն տիրապետում այդ հատկանիշներին, եթե նրանք լիովին չեն համապատասխանում իրենց պաշտոնին, դիրքին, ապա դա ուղղակիորեն և անմիջականորեն անդրադառնում է նրանց աշխատանքի և վարքագծի վրա։

Տարբեր կերպ է դրսևորվում այս ամենը՝ թե՛ իբրև ծառայողական պարտքի վատ կատարում, թե՛ իբրև վտանգավոր հանցանքի համար չարդարացված մեղմ պատժամիջոցի սահմանում, թե՛ ավելի մեղմ պատժի արժանի անձի չարդարացված խիստ դատապարտում, թե՛ իբրև բուն իրավապահպան մարմնի աշխատողի կողմից մեր համակեցության կանոնների խախտում։

Հանրապետության գերագույն դատարանը դեռևս թույլ և երկչոտ է օգտագործում վճռաբեկ և հսկողական պրակտիկայի հնարավորությունները ժողովրդական դատարանների կողմից արդարադատության իրականացման մակարդակը բարձրացնելու համար, հազվադեպ է ընդհանրացնում դատական պրակտիկան և ակտիվորեն չի աջակցում օրենսդրության, մեղմ ասած, ոչ ճիշտ կիրառման փաստերի կանխմանը։

Անթույլատրելի է նաև, որ մեր միլիցիայի խիզախ ու ազնիվ աշխատողների կողքին, որոնք պատրաստ են կյանքը վտանգել հանուն մարդու փրկության, քաղաքացիների հանգստի ու պաշտպանության, հայտնվեն առանձին անկայուն մարդիկ, որոնք արատավորում են սովետական միլիցիայի բարձր կոչումը։

Ներքին գործերի մինիստրության կոլեգիան պետք է լուրջ հետևություններ անի և անհետաձգելի միջոցներ ձեռնարկի ամբողջությամբ վերցրած մինիստրության գործունեությունը բարելավելու, շատ կարճ ժամկետում ներքին գործերի մարմինները այն աշխատողներից մաքրելու համար, որոնք արժանի չեն կրելու սովետական միլիցիոների կոչումը։ Մեր ժողովուրդը սիրում ու վստահում է իր միլիցիային։ Իսկ դա միլիցիայի յուրաքանչյուր աշխատողի վրա կրկնակի պատասխանատվություն է դնում։

Հանրապետության իրավապահպան մարմինների ղեկավարները՝ ընկ. ընկ.



Ս. Սախպյանը, Ե. Պատալովը, Ա. Գևորգյանը, Գ. Քոչարյանը պետք է համակողմանիորեն բարելավեն կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության աշխատանքը, գործուն վերահսկողություն ապահովեն նրանց գործունեության, աշխատողների կողմից իրենց պարտականությունների ճշգրիտ ու հստակ կատարման նկատմամբ, խստացնեն նրանց ներկայացվող պահանջները։

Կուսակցական կոմիտեները, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների լույսի ներքո, պարտավոր են իրավապահպան մարմինների նկատմամբ մեծ պահանջկոտություն հանդես բերել հափշտակումների, կաշառակերության և այլ չարաշահումների դեմ մղվող պայքարի վիճակի համար։ Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր հանցագործություն պատշաճ կերպով հետաքննվի, և մեղավորները կրեն արժանի պատիժ։

Հարկավոր է բարձրացնել իրավապահպան մարմինների կուսակցական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը պետության շահերի ու քաղաքացիների իրավունքների հուսալի պաշտպանությունն ապահովելու համար կադրերին բարձր պատասխանատվության ոգով դաստիարակելու գործում։

Քաղաքական և դաստիարակչական աշխատանքը պետք է կազմակերպել այնպես, որ այդ մարմինների յուրաքանչյուր աշխատող լինի սոցիալիստական օրինականության և իրավակարգի համար պայքարող ազնիվ ու արդարացի, բարեկիրթ ու կուլտուրական, սկզբունքային ու անզիջում, ակտիվ ու հետևողական մարտիկ։

Ընկերնե՛ր։

Հանրապետության կուսակցական կազմակերպության և նրա յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի ու սկզբնական կազմակերպության խնդիրն է է՛լ ավելի կատարելագործել կադրային աշխատանքը, նրա բովանդակությունը, նպատակասլացությունը, հասնել այն բանին, որ այդ աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները առավել լիակատար համապատասխանեն ժամանակի խնդիրներին, հանրապետության հասարակական-քաղաքական, սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման կուսակցական ղեկավարման հետագա բարելավման խնդիրներին։

Կուսակցական կոմիտեները պետք է մշտապես նկատի ունենան, որ հենց մեր ղեկավար կադրերի պրոֆեսիոնալ պատրաստականության և իրազեկության, նրանց ընդհանուր կրթվածության ու կուլտուրայի մակարդակից, կառավարման ժամանակակից մեթոդներին տիրապետելուց, տնտեսական և կուլտուրական շինարարության արմատական պրոբլեմների էությանը խորամուխ լինելու, փաստերն ու երևույթները ընդհանրացնելու և վերլուծելու, հեռանկարը տեսնելու և զգալու, գործերը գիտական հիմքի վրա կազմակերպելու, ծագող հարցերի լուծման առավել արդյունավետ ուղիները գտնելու, իր նկատմամբ պահանջկոտ լինելու, մարդկանց հետ ճիշտ փոխհարաբերություններ հաստատելու կարողությունից են անմիջականորեն կախված աշխատանքի որակն ու արդյունավետությունը, ինչպես աշխատավորական կոլեկտիվներում, շրջաններում ու քաղաքներում, այնպես էլ հանրապետությունում ամբողջությամբ վերցրած։

Ղեկավար աշխատողների բնութագրական գիծը պետք է լինի բարձր գաղափարայնությունը, քաղաքական հասունությունը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին նվիրվածությունը, ինտերնացիոնալիզմը, խոր կուսակցականությունը, բարոյական անբասիր նկարագիրը, կուսակցության քաղաքականությունը խորապես ու համակողմանիորեն հասկանալու և աշխատանքի իր տեղամասում այն պրակտիկ կերպով կենսագործելու, սեփական աշխատանքի արդյունքները քննադատաբար գնահատելու, սովետական օրենքներից կատարվող ամենանվազագույն շեղումներին իսկ հակազդելու, աշխատավորական կոլեկտիվի ջանքերը միավորելու, նրանցում բարոյական և գործնական առողջ մթնոլորտ ստեղծելու կարողությունը։

Հենց այդպիսի կադրերն են ընդունակ ապահովելու մեր առջև այսօր ծառացած խնդիրների հաջող լուծումը։ Նրանց անձնական հատկությունները, գոր-

ծունեության ոճը դառնում են կարևոր ուժ, նյութականանում են արտադրության և դաստիարակության կոնկրետ բարձր արդյունքների մեջ։

Քանի որ կուսակցական մարմինն է կադրային աշխատանքի կազմակերպման կենտրոնը, ապա մենք պետք է առաջին հերթին հոգ տանենք նրանց ղեկավարների և պատասխանատու աշխատողների մշտական աճի մասին։

Մեր կուսակցական կոմիտեների, սովետական մարմինների ղեկավար աշխատողների մեծամասնությունը իր աշխատանքում մշտապես կատարելագործվում է, ձգտում է լինել լուծվող խնդիրների և արդիական պահանջների բարձրության վրա։ Բնականաբար, դա դրականապես է անդրադառնում նաև կուսակցական կոմիտեի, սովետական մարմնի աշխատանքի վրա։

Դրա հետ մեկտեղ, ցավոք, դեռևս կան նաև այնպիսի կուսակցական, սովետական աշխատողներ, որոնք սիստեմատիկաբար չեն հարստացնում իրենց գիտելիքները, չեն բարելավում աշխատանքի ոճն ու մեթոդները, հոգ չեն տանում իրենց աճի մասին, ավելին՝ զիջում են իրենց դիրքերը։ Նրանք մոռանում են, որ չի կարելի հաջողության հասնել առանց խոր գործիմացության, ստեղծագործական ակտիվ գործունեության։ Նրանք մոռանում են, որ նախկինում նվաճված ոչ մի հեղինակություն, պաշտոնական ոչ մի իրավունք չեն օգնի գործին, հաջողություն չեն բերի, եթե ղեկավարը, մանավանդ կուսակցական, սովետական ղեկավարը, ետ է մնում կյանքից, իր մակարդակով չի համապատասխանում այսօրվա պահանջներին։

Որակապես նոր, բարդ և խոշորածավալ խնդիրների հաջող լուծման, գործունեության վերջնական բարձր արդյունքների հասնելու համար աշխատելու ձգտումն ու ցանկությունը, եռանդը պետք է բազմապատկվեն կուսակցական, սովետական մարմինների ամեն մի աշխատողի պրոֆեսիոնալ բարձր վարպետությամբ, համակողմանի պատրաստականությամբ և գաղափարական զինվածությամբ, բարձր որակավորմամբ, հմտությամբ ու գործարարությամբ։ Երբեք չի կարելի մոռանալ լենինյան այն դրույթը, որ ղեկավարության որակը որոշվում է «ոչ թե իշխանության ուժով, այլ հեղինակության ուժով, եռանդի, ավելի մեծ փորձառության, ավելի մեծ բազմակողմանիության, ավելի մեծ տաղանդավորության ուժով»։

Իրենց աճի մեջ ետ մնացող աշխատողների մասին ասվեց Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում։ Համագումարում և նրան հաջորդած Կենտկոմի պլենումներում այդ աշխատողներից մի քանիսը քննադատվել են աշխատանքի հնացած, ոչ ճիշտ ոճի համար, նախաձեռնություն չցուցաբերելու, աշխատանքի ցածր արդյունքների համար։

Կենտկոմը ուշադիր հետևում էր, թե քննադատությունից հետո ինչպես էին վերակառուցվում այդ ընկերները, նրանց ցույց էր տրվում անհրաժեշտ օգնություն։ Հարկ է ասել, որ նրանցից շատերը ճիշտ հետևություններ արեցին, շտկեցին գործերը, նկատելիորեն բարելավեցին իրենց աշխատանքը։

Իսկ ոմանց դա չհաջողվեց։ Այդպիսի ընկերներին հարկ եղավ ազատել զբաղեցրած պաշտոնից, փոխադրել իրենց կարողություններին համապատասխան աշխատանքի։

Նրանց թվում են կուսակցության շրջկոմների նախկին առաջին քարտուղարներ ընկ. Ա. Հարությունյանը (Գորիս), ընկ. Թ. Մելքոնյանը (Արագած), ընկ. Վ. Սաղումյանը (Շամշադին), ընկ. Բ. Անդրեասյանը (Ապարան)։

Զբաղեցրած պաշտոններից ազատվել են մի շարք ղեկավար սովետական աշխատողներ՝ Ղափանի շրջսովետի գործկոմի նախագահ Ս. Օհանջանյանը, Դիլիջանի քաղսովետի գործկոմի նախագահ Ն. Ջեպելը և ուրիշներ։

Կարծում ենք, Կենտկոմի պլենումը հանրապետության կուսակցական ու սովետական մարմինների բոլոր աշխատողների ուշադրությունը կհրավիրի իրենց գիտելիքները սիստեմատիկաբար լրացնելու, կուսակցական ու սովետական աշխատանքի՝ մեր երկրում կուտակված նոր, առաջավոր փորձին տիրապետելու սուր անհրաժեշտության վրա, փորձ, որն օգնում է նրանց մշտապես կատարելագործվելու, գտնվելու կուսակցության արդիական պահանջների մակարդակի վրա։

Կենտկոմը խստորեն է վերաբերվում կուսակցական և սովետական այն աշ-



խատողներին, որոնք թույլ են տալիս տարբեր տեսակի սխալներ, կուսակցական կյանքի նորմերի ու էթիկայի, պետական կարգապահության խախտումներ։

Կենտկոմը գտնում է, որ կուսակցական, սովետական, պետական մարմինների բոլոր աշխատողները պետք է օրինակ ծառայեն թե՛ աշխատանքում, թե՛ կենցաղում, թե՛ վարքում, լինեն կարգապահության և կազմակերպվածության տիպար։

Ընկերնե՛ր։

Կուսակցության քաղաքականության իրականացման գործում մեր հաջողությունները օրգանական կապի մեջ են այն բանի հետ, թե կուսակցական մարմինները ինչպես են աշխատում էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի տարբեր ճյուղերում աշխատող կադրերի հետ։

Այսօր մենք Կենտկոմի պլենումում լիիրավ կարող ենք ասել, որ տնտեսական և կուլտուրական շինարարության օղակների մեծ մասում աշխատում են այնպիսի կադրեր, որոնք ի վիճակի են լուծելու ամենաբարդ խնդիրները։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում, այդ գործում ունեցած անվիճելի հաջողությունների հետ մեկտեղ դանդաղ է իրականացվում ժողովրդական տնտեսության փոխադրումը ինտենսիվացման ռելսերի վրա։ Այդ պրոցեսի, ինչպես նաև գիտատեխնիկական առաջադիմության արագացման, ռեսուրսների բոլոր տեսակների խնայողության խնդիրը մեզ համար առանձնապես հրատապ է։

Կենսական, հրատապ անհրաժեշտություն է նաև հաղթահարել իներցիայի ուժը, դարն ապրածի ուժը, աշխատանքի հին եղանակներին ու ձևերին կառչած մնալը։

Հասարակական սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունքը, դրա նախաձեռնողական ու եռանդուն բազմապատկումը պետք է դառնան տնտեսական կադրերի գործունեության հրամայականը։ «Այս նորմի խախտումների համար,— ընդգծել է ընկեր Յու. Վ. Անդրոպովը իր «Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր» հոդվածում,— ստիպված է լինում հատուցել ողջ հասարակությունը, և նա իրավունք ունի խստորեն պատժել նրանց, ովքեր անփութության, անկարողության պատճառով կամ շահադիտական նկատառումներով վատնում են նրա հարստությունները»։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի, Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի այս ցուցումները պետք է լինեն գլխավոր կողմնորոշիչը կուսակցական կազմակերպության՝ կադրերի հետ տարվող աշխատանքում։

Ժողովրդական տնտեսության համար կադրեր ընտրելիս կուսակցական կոմիտեները պետք է հաշվի առնեն նրանց գործնական ու քաղաքական հատկանիշները, հիշելով, որ «տնտեսավարի որակավորում» հասկացությունը ներառում է ոչ միայն տեխնիկական ու տնտեսագիտական գիտելիքների գումար։ Այն պետք է դիտվի զգալիորեն ավելի լայն առումով։ Այստեղ անհրաժեշտ է առաջնորդվել տնտեսական ու դաստիարակչական աշխատանքի միասնության սկզբունքներով։

Ցավոք, մեզանում դեռ քիչ չեն այն ղեկավարները, որոնք չեն բարձրանում սեփական բազմապիսի ֆունկցիաների ու պարտականությունների լայնահայաց ըմբռնման մակարդակին և անբավարար ու պասսիվ են իրականացնում կուսակցական հանձնարարականները։

Իսկ դա տեղի է ունենում, որովհետև երբեմն արտադրության ու կառավարման որոշ տեղամասեր ղեկավարելու համար առաջ են քաշվում քաղաքականապես անպատրաստ, անիրազեկ մարդիկ, որոնք չունեն ադմինիստրատորի ու կազմակերպչի, աշխատավորական կոլեկտիվի ղեկավարի անհրաժեշտ հատկանիշներ։ Միշտ չէ, որ նախանձախնդիր մոտեցում է ցուցաբերվում կադրերի ընտրության հանդեպ, երբեմն հապճեպություն և անպահանջկոտություն են դրսևորվում այդ գործում։ Այլապես ինչ կերպ կարելի է որակել հետևյալ փաստերը։

1981 թվականի նոյեմբերին կուսակցության Կիրովականի քաղկոմի առա-

ջադրմամբ Կամոյի անվան տրիկոտաժի արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր նշանակվեց ընկ. Դ. Ղուկասյանը, որից հետո կոլեկտիվում գործերն սկսեցին վատանալ։ Ձախողվեց ապրանքային արտադրանքի արտադրության 1982 թվականի պլանը, նվազեց իրացման ծավալը։ Իջավ արտադրանքի որակը, որի հետևանքով ձեռնարկությանը վերադարձված է 750 հազար ռուբլու արտադրանք։ Ելնելով ստեղծված դրությունից, կուսակցության քաղկոմը նշանակումից 16 ամիս անց ստիպված եղավ ուղղել թույլ տված սխալը։

Կուսակցության Կրասնոսելսկի շրջկոմը (առաջին քարտուղար՝ ընկ. Ս. Նազինյան) 1982 թվականի փետրվարին Արծվաշենի սովխոզի դիրեկտոր հաստատեց շրջկենտրոնի սովխոզի գլխավոր զոոտեխնիկ ընկ. Գ. Մուսայելյանին։

Շուտով պարզվեց, որ կուսակցության շրջկոմը, ընկ. Մուսայելյանին առաջ քաշելով ղեկավար աշխատանքի, անբավարար էր ուսումնասիրել նրա գործնական հատկանիշները և կազմակերպչական ընդունակությունները։ Նա բացահայտորեն ի վիճակի չեղավ կատարելու իր վրա դրված պարտականությունները, չկարողացավ մասնագետների, միջին օղակի ղեկավարների, գյուղի աշխատավորների ջանքերը մոբիլիզացնել տնտեսության առջև դրված խնդիրների լուծման համար։ Դրա հետևանքով սովխոզի արտադրատնտեսական գործունեությունը խիստ վատթարացավ։ 1981 թվականի համեմատությամբ, մեկ կովի կաթնատվությունը կրճատվեց 178 կիլոգրամով, նվազեցին հացահատիկի, կաթի, բրդի մթերումների ծավալները, աճեց արտադրանքի ինքնարժեքը։ 1983 թվականի մարտին սովխոզի աշխատանքը չգլխավորելու համար կուսակցության նույն շրջկոմը ընկ. Մուսայելյանին ազատեց զբաղեցրած պաշտոնից։

Արդյոք հանրապետության սննդի և տեղական արդյունաբերության մինիստրությունների, ՀԿԿ Լենինյան շրջկոմի կողմից կադրերի հապճեպ և ոչ ճիշտ ընտրության հետևանք չէ այն, որ վերջին 4 տարում «Հայծխախոտարդ» արտադրական միավորումում և «Մետշին» գործարանում փոխվել է երեքական դիրեկտոր։

Արմատախիլ չի արված այն արատավոր պրակտիկան, երբ ղեկավար պաշտոնի են նշանակվում բացարձակապես անիրազեկ մարդիկ, նշանակվում են՝ միայն թե գործի տեղավորվեն։ Սրանով տառապում են ինչպես առանձին մինիստրություններ, այնպես էլ կուսակցական կոմիտեներ։ Պետք է վերջ տալ դրան։

Կենտկոմը շարունակ կուսակցական կոմիտեների ուշադրությունն է հրավիրում ղեկավար կադրերի գործունեությունը մշտապես վերահսկելու անհրաժեշտության վրա, այն բանին, որ կադրին նոր պաշտոնի նշանակելիս ամեն անգամ հարկավոր է նրա հետ տանել տվյալ պաշտոնին համապատասխան դաստիարակչական աշխատանք՝ նպատակ ունենալով նրա մեջ մշտապես բարձր պահել պատասխանատվության զգացումը հանձնարարված գործի համար։ Այնինչ, առանձին կուսշրջկոմներ աշխատողին ղեկավար պաշտոնի նշանակելուց հետո չեն հետևում նրա աշխատանքին, աճին, պահանջկոտություն հանդես չեն բերում նրա գործունեության արդյունքների նկատմամբ։

Լինում է նաև վատթարը։ Ձեռնարկությունների և կազմակերպությունների որոշ ղեկավարներ ձախողում են աշխատանքը, վատացնում են գործերի վիճակը աշխատավորական կոլեկտիվում, տեղամասում, կազմակերպությունում, ձեռնարկությունում, սակայն նրանց հանդուրժում են, չեն տալիս պատշաճ գնահատական։

«Սովետական Հայաստան» թերթը 1983 թվականի հունվարի 29-ին քննադատական հոդված հրապարակեց Թալինի շրջանի Գետափ սովխոզում արտադրության բարձիթողի վիճակի, ֆինանսական կարգապահության խախտման աղաղակող փաստերի մասին։ Դուք հավանաբար ծանոթ եք այդ հոդվածին։

Հարց է ծագում, ինչպես կարող էին կուսակցության շրջկոմը և շրջգործկոմը (առաջին քարտուղար՝ ընկ. Պ. Խաչատրյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Գ. Կիրակոսյան) տարիներ շարունակ չնկատել այն, ինչը տեղի էր ունենում տնտեսությունում, չտեսնել նրա անկումը։ Սա, առաջին հերթին, խոսում է նրանց աշխատանքի հայեցողական ոճի մասին։



Ասենք նաև, որ թերթի ելույթի առթիվ շրջկոմի վերաբերմունքը նույնպես ճիշտ չէր, և հարցը քննարկվեց միայն Կենտկոմի միջամտությունից հետո։

Կուսակցության Արտաշատի շրջկոմը երկար ժամանակ հաշտվել էր Մրխևյան գյուղի կոլտնտեսության կողմից գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանային առաջադրանքները չկատարելու, այնտեղ տիրող անտրնտեսվարության հետ։ Կոլտնտեսության նախագահ Գ. Թարոյանը, այդ պաշտոնում աշխատելով գրեթե 21 տարի, տարեցտարի վատացնում էր աշխատանքը։ Իսկ շրջկոմը ցուցաբերում էր լիբերալիզմ, ժամանակին սկզբունքային գնահատական չէր տալիս կոլտնտեսության ղեկավարության և կուսակցական կազմակերպության գործունեությանը։ Միայն այն բանից հետո, երբ հանրապետության կուսակցական ու սովետական մարմինները դիմումներ ու նամակներ ստացան աշխատավորներից, և միջամտեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության Արտաշատի շրջկոմը ընկ. Գ. Թարոյանին այլևս չերաշխավորեց Մխչյան գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ ընտրելու համար։

Եվ այս ամենից հետո նախագահը, կոլտնտեսության ընդհանուր ժողովի որոշմամբ, պաշտոնից ազատվեց անձնական դիմումի համաձայն։

Նման փաստերին ժամանակին չի արձագանքել նաև հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը։

Բանն այն է, որ մինիստրությունում սիստեմատիկաբար չէին կատարվում ներգերատեսչական ստուգումներ անցկացնելու պլանները, որի հետևանքով շատ տնտեսություններ մնում էին հսկողությունից դուրս։ Ֆինանսատնտեսական գործունեության ստուգումները հաճախ անցկացվում էին ձևականորեն, առանց տնտեսությունների արտադրական ու տնտեսական գործունեությունը խորապես վերլուծելու։

Այստեղ թույլ էին տրվում վերահսկիչ-վերստուգիչ վարչության աշխատողների ընտրության սկզբունքների կոպիտ խախտումներ։ Շատ ռևիզորներ չունեն մասնագիտական պատրաստություն և գյուղատնտեսական արտադրության մեջ կատարած աշխատանքի փորձ։ Նրանց թվում կային վստահություն չներշնչող առանձին աշխատողներ և նույնիսկ անցյալում քրեական պատասխանատվության ենթարկված անձինք։

Վերահսկիչ-վերստուգիչ վարչության անբավարար գործունեության, պետական ու ֆինանսական կարգապահության խախտումների նկատմամբ թողտվության և հաշտվողական վերաբերմունքի համար վերահսկիչ-վերստուգիչ վարչության պետ, ՍՄԿԿ անդամ ընկ. Ա. Եղիկյանին հայտարարված է խիստ նկատողություն, գրանցելով հաշվառման քարտում, և նա հանված է զբաղեցրած պաշտոնից։ Կուսակցական խիստ տույժ է տրված վերահսկիչ-վերստուգիչ վարչության գործունեությունը վարող՝ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ ընկ. Մ. Բաբաջանյանին։

Ընկերնե՛ր։

Կադրերի հետ տարվող աշխատանքում հատուկ տեղ է գրավում նրանց գաղափարաքաղաքական դաստիարակությունը։ Կյանքը, պրակտիկան ցույց են տալիս, որ որքան բարձր է կուսակցական, սովետական և տնտեսական աշխատողների գաղափարական մակարդակը, նրանց տեսական պատրաստականությունը, այնքան բեղմնավոր է նրանց պրակտիկ գործունեությունը։

Հանրապետությունում ամենուրեք ստեղծվել է ղեկավար կադրերի մարքսլենինյան ուսուցման և նրանց տնտեսագիտական կրթության որոշակի համակարգ։ Այդ աշխատանքը կառուցվում է կուսակցության XXVI համագումարի, գաղափարախոսական հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումների պահանջների լույսի ներքո։

Այդ նպատակին է ծառայում կադրերի և ընտրովի ակտիվի ուսուցման հանրապետության կուսակցական կազմակերպությունում ստեղծված և հաջողությամբ գործող համակարգը։ Այն տարվում է Կենտկոմի պլենումում հաստատված պլանին համապատասխան։

Կուսակցական, սովետական աշխատողների գաղափարական մակարդակի և մասնագիտական որակավորման բարձրացման ուղղությամբ զգալի աշխա-

տանք են կատարում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի մշտական գործող դասընթացները: Կուսակցության XXVI համագումարից հետո անցած ժամանակաշրջանում այդտեղ իրենց որակավորումը բարձրացրել են շուրջ 1000 ղեկավար կադրեր:

Մեծ ուշադրություն է նվիրվում սկզբնական կուսկազմակերպությունների ավելի քան հինգ հազար շաղատված քարտուղարների հետ տարվող աշխատանքին: Նրանց ուսուցումը կազմակերպվում է 10-օրյա սեմինարներում, որոնք անցկացվում են ըստ ճյուղային սկզբունքի:

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննության առավ հանրապետության կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցի հարցը և հաստատեց ուսուցման նոր կառուցվածքը:

Կադրերի տնտեսագիտական ու մեթոդական պատրաստման կարևոր օղակ է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանը, որտեղ այսօր քաղաքական կրթություն են ստանում ավելի քան երեք հազար կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական աշխատողներ:

Այս ամենից բացի հանրապետության ղեկավար շատ աշխատողների ուսուցումը պլանավորված կարգով անցկացվում է որակավորման բարձրացման այն դպրոցներում ու դասընթացներում, որոնք գործում են Մոսկվայում, երկրի այլ քաղաքներում:

Գործի շահերը պահանջում են, որ մշտապես բարձրացվի ղեկավար կադրերի դաստիարակության բովանդակ աշխատանքի մակարդակը: Այստեղ հարկ է դրսևորել առավել հետևողականություն, բացառել ձևամոլության ամեն մի նվազագույն դրսևորում:

Ընկերնե՛ր:

Ղեկավար աշխատողի բնորոշ գիծը պետք է լինի նրա անձնական կարգապահությունը, կատարողական ճշտապահությունն ու բարոյական անաղարտությունը, իր գործունեության արդյունքները քննադատաբար գնահատելու կարողությունը: Նա պետք է կարողանա աշխատանքի ղեկավարած իր տեղամասում անշեղորեն պահպանել և ամրապնդել կուսակցական, պետական և կատարողական կարգապահությունը, սոցիալիստական օրինականությունը և սովետական ապրելակերպի նորմերը, ժամանակին և գործուն վերահսկողություն ապահովել ընդունված որոշումների կատարման նկատմամբ:

Կատարելով կուսակցության ցուցումները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցական կոմիտեները, կադրերի նկատմամբ պատշաճ ուշադրության հետ մեկտեղ, բարձր պահանջկոտություն և խստապահանջություն են հանդես բերում նրանց հանդեպ, մի բան, որը կադրերի աճի ու դաստիարակության նկատմամբ հոգատարության, նրանց սխալների և ճիշտ վարքագծի նորմերից շեղումները կանխելու լավ միջոց է:

Կուսակցական կոմիտեները կադրերին քննադատում, նրանց պատժում են թույլ տված սխալների համար և այլն: Այստեղ նպատակը միայն այն է, որ օգնություն ցույց տրվի ընկերներին՝ վերացնելու թերությունները, շտկելու սխալները: Եվ եթե կադրը ուղղել է սխալը, հասել է աշխատանքային լավ, կայուն արդյունքների, ապա կուսակցական կոմիտեները ղեկավարվում են Վ. Ի. Լենինի այն խորհուրդներով, որ «առանց հատուկ անհրաժեշտության ճիշտ չէ վերհիշել այնպիսի սխալներ, որոնք լիովին ուղղվել են»:

Ասում են՝ չի սխալվում նա, ով գործ չի անում: Գուցե և դա ինչ-որ տեղ և ինչ-որ բանում ճիշտ է: Բայց սխալ էլ կա, սխալ էլ: Անպատասխանատվության ու անսկզբունքայնության, ոչ ճիշտ գործողությունների ու վարքագծի հետևանք հանդիսացող ամեն մի սխալի պետք է կուսակցական գնահատական տրվի, իսկ անհրաժեշտության դեպքում պետք է հետևի համապատասխան պատիժը:

Ցավոք, մեզանում քիչ չեն հենց այդպիսի սխալներ թույլ տվող կադրերը:

Նրանցից ոմանք տառապում են անհոգությամբ ու ինքնահանգստացմամբ, ուրիշները՝ ինքնագոհությամբ ու սնապարծությամբ, անփոխարինելիության հոգեբանությամբ, իսկ նրանցից ոմանք էլ կանգնել էին պետական ու ֆինանսական կարգապահության կոպիտ խախտումների՝ պաշտոնական դիրքի չարաշահումների ուղու վրա:



Հայաստանի կոմկուսի Կենտկոմը խիստ միջոցներ ձեռնարկեց այդպիսի աշխատողների նկատմամբ, կուսակցական պատժի ենթարկեց և ազատեց զբաղեցրած պոստերից:

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննության առավ հանրապետության մթերումների մինիստրության աշխատանքի հարցը: Մինիստր ընկ. Օ. Հովակիմյանը կուսակցական պատասխանատվության ենթարկվեց: Նա ազատվել է զբաղեցրած պաշտոնից: Աշխատանքից ազատվել է նաև մինիստրի առաջին տեղակալ ընկ. Լ. Սահակյանը:

Ընկ. Հովակիմյանը չկարողացավ պետական պատշաճ կարգուկանոն հաստատել այդ սիստեմի ձեռնարկությունների աշխատանքում, չէր վարում սկզբունքային կադրային քաղաքականություն, որի հետևանքով աշխատանքում տեղ էին գտնում լուրջ վրիպումներ ու սխալներ:

Աշխատանքում տեղ գտած լուրջ թերությունների, կադրերի ընտրության ու տեղաբաշխման կուսակցական սկզբունքների կոպիտ խախտումների, պետական կարգապահությունը խախտողների նկատմամբ ցուցաբերած անսկզբունքայնության և թողտվության համար կուսակցական խիստ տույժի է ենթարկվել և զբաղեցրած պաշտոնից ազատվել արտասահմանյան տուրիզմի վարչության պետ ընկ. Ա. Խաչիկյանը:

Հանրապետության սպորտկոմիտեի գործունեությունը թույլ ղեկավարելու և պետական կարգապահությունը խախտելու համար կուսակցական տույժ է ստացել և պաշտոնից ազատվել Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր ֆիզիկական կուլտուրայի և սպորտի կոմիտեի նախագահ ընկ. Ռ. Ասատրյանը:

Հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրի տեղակալ ընկ. Վ. Վարդանյանը պաշտոնից ազատվել է որպես իրեն վարկաբեկած անձ: Նույն մինիստրության մինիստրի մյուս տեղակալ ընկ. Է. Բարսեղյանը գրաված պաշտոնից ազատվել է անբավարար աշխատանքի համար: Տարբեր տեսակի խախտումների, անբավարար աշխատանքի համար և այլ պատճառներով կուսակցական պատիժ են ստացել և զբաղեցրած պաշտոններից ազատվել են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի, հանրապետության կենսագործունեության տարբեր ոլորտների ղեկավար մի շարք այլ աշխատողներ:

Այս ամենը դաստիարակչական հետևանք կունենա, դաս կծառայի նրանց համար, ովքեր չեն վերակառուցվում աշխատանքում, չեն ունկնդրում ճիշտ քննադատությանը և չեն վերացնում սխալները:

Ընկերնե՛ր:

Պետական և կատարողական կարգապահության ամրապնդման ուղղությամբ կադրերի հետ տարվող աշխատանքում մեր խնդիրն է հետևողականորեն և անշեղորեն ղեկավարվել ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումներով, ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառերում և ելույթներում պարունակվող դրույթներով և ցուցումներով. անհրաժեշտ է ամենուրեք ամրապնդել կարգապահությունը, այդ ուղղությամբ տարվող պայքարը հագեցնել մեծ բովանդակությամբ, այն անմիջականորեն կապելով արտադրական խնդիրների կատարման հետ, կադրերի նկատմամբ պահանջկոտության, հանձնարարված գործի համար նրանց անձնական պատասխանատվության հետագա բարձրացման հետ:

Մեզ համար կարևոր խնդիր է կատարողական կարգապահության ամրապնդումն ամենուրեք:

Յուրաքանչյուր հանձնարարական, ամեն մի որոշում պետք է անպայմանորեն իրականացվի:

Կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները, Կենտրոնական կոմիտեն, տեղական սովետները, հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների խորհուրդը պետք է կատարելագործեն կատարման վերահսկման ու ստուգման համակարգը՝ կադրերի դաստիարակման և օրենքի պահանջների, պետական կարգապահության, կարգուկանոնի խախտումների,

թերությունների բացահայտման և վերացման այդ հուսալի միջոցը։ Դա կնպաստի կազմակերպվածության և կարգապահության ամրապնդմանը կենսագործունեության բոլոր ոլորտներում։

Կուսակցական կազմակերպությունների կազմակերպական ու քաղաքական աշխատանքի առաջնային հարցերից է ղեկավար կադրերի անձնական պատասխանատվության նշանակալի բարձրացումը որպես խնայողության, տնտեսման ռեժիմն ուժեղացնելու, սոցիալիստական սեփականության հափշտակումների և ժողովրդական բարիքի կորուստների դեմ հուսալի պատնեշ կանգնեցնելու ասպարեզում կուսակցության գծի իրագործման ակտիվ կազմակերպիչներ։

Արտադրության և բաշխման բոլոր տեղամասերում պետք է գործի խստագույն հաշվառման և վերահսկողության հստակ սիստեմ, որը բացառի պետական ու հասարակական ունեցվածքի հափշտակման ամեն մի հնարավորություն։

«Մասիս» կոշիկի արտադրական միավորման մոդելային կոշկեղենի ֆաբրիկայում հաշվառման ու հաշվետվության գործի բարձիթողի վիճակի հետևանքով որոշ անազնիվ աշխատողներ 1981 թվականին հափշտակել էին զգալի քանակությամբ պատրաստի արտադրանք։

Հանցագործները ենթարկվել են քրեական պատասխանատվության, իսկ ֆաբրիկայի դիրեկտոր Ա. Փինաչյանը, սոցիալիստական սեփականության պահպանումը չապահովելու համար, կուսակցության Լենինյան շրջկոմի կողմից վտարվել է ՍՄԿԿ շարքերից և հեռացվել աշխատանքից։

Թվում էր, թե հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրությունը (մինիստր ընկ. Ա. Գևորգյան), «Մասիս» միավորման ղեկավարությունը (գլխավոր դիրեկտոր ընկ. Հ. Հարությունյան), միավորման սկզբնական կուսկազմակերպությունը սպառիչ միջոցներ կձեռնարկեին փակելու ժողովրդական բարիքի հափշտակման ուղիները։ Սակայն դա չարվեց, և պատահական չէ, որ այդ նույն ֆաբրիկայում վերջերս բացահայտվել են ավելի մեծ չափերի հասնող նյութական արժեքների հափշտակման ու պակասորդի փաստեր։

Այս տեսակետից լուրջ պահանջներ կարելի է ներկայացնել նաև արդյունաբերական շինարարության մինիստրությանը (ընկ. Է. Ավագյան), պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությանը (ընկ. Ս. Առաքելյան), սննդարդյունաբերության մինիստրությանը (ընկ. Ա. Դանիելյան) և ուրիշների։

Ահա և խնայողության ու տնտեսման ռեժիմը ուժեղացնելու ուղղությամբ անբավարար աշխատանքի օրինակ։

«Անդրկովկասկաբել» արտադրական միավորման Երևանի կաբելի գործարանը (գլխավոր դիրեկտոր ընկ. Ս. Կակոսյան, գլխավոր ինժեներ ընկ. Ս. Ասոյան) սիստեմատիկաբար չի կատարում գլանման ժամանակ պղնձի ռացիոնալ օգտագործման առաջադրանքները։ Պղնձի օգտագործման փաստական գործակիցը ամեն տարի առաջադրանքից ցածր է միջին հաշվով 3,4 տոկոսով, որի հետևանքով միայն 1981—82 թվականներին գործարանում պղնձի գերնորմատիվային թափոնները կազմել են 2800 տոննա, ավելի քան 3,2 միլիոն ռուբլի արժողությամբ։

Իսկ պղնձալարի անընդհատ ձուլման և գլանման 1979 թվականին «լավ» գնահատականով շահագործման հանձնված արտադրամասը մինչև օրս արտադրանք չի թողարկում, այնտեղ դեռևս շարունակում են գործարկման, կարգաբերման աշխատանքները։ 1980 թվականի հունվարից մինչև 1983 թվականի փետրվարը արտադրամասի անձնակազմին վճարված է 380,7 հազար ռուբլի աշխատավարձ։ Միջոցները ծախսված են, աշխատավարձը վճարվում է, բայց վերջնական արտադրանք չկա, պղնձի կորուստները չեն կրճատվում։

Սրանից պետք է համապատասխան հետևություններ անի կուսակցության Երևանի քաղկոմը։

Ընկերնե՛ր։

Կուսակցությունն ուսուցանում է, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունը կադրերի դաստիարակության կարևոր միջոց են, օգնում են ժամանակին ուղղել սխալը, կանխել վրիպումներն ու թերացումները աշխատանքում։ Բոլոր կուսակցական կազմակերպություններում հաստատել քննադատության



ու ինքնաքննադատության, թերությունների ու նրանց կրողների նկատմամբ անհաշտության ոգի՝ կոմունիստների առջև այսպիսի խնդիր դրեց կուսակցության XXVI համագումարը։

Այսօր, Կենտկոմի պլենումում մենք մեկ անգամ ևս կարող ենք ասել, որ
այժմ հանրապետության կուսակցական կազմակերպության կյանքի բնութա-
գրականը աշխատանքում խստապահանջության ու գործարարության, թերու-
թյունների և վրիպումների նկատմամբ անհանդուրժողականության կուսակ-
ցական ոգին է։ Դա համոզիչ կերպով ցույց տվեցին Հայաստանի կոմկուսի
XXVI և XXVII համագումարները, Կենտկոմի հետհամագումարյան պլենում-
ները, ինչպես նաև քաղաքային ու շրջանային կուսակցական կազմակերպու-
թյունների կոնֆերանսները, սկզբնական կուսակցական կազմակերպություն-
ների հաշվետու-ընտրական ժողովները։

Կուսակցության, ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումների իրականացման շնորհիվ
հանրապետության կուսակցական կազմակերպությունում ստեղծվել է կադրե-
րի, նրանց ղեկավարած մարմինների աշխատանքի արդյունքների քննադատա-
կան վերլուծության, մեր թերությունների ազատ ու գործարար քննադատության
իրադրություն։ Դա, նախ և առաջ, Հայաստանի կոմկուսի և նրա սկզբնական
կազմակերպությունների քաղաքական առողջության ցուցանիշն է։

Գոհունակությամբ պետք է նշել, որ կոմունիստների, աշխատավորական
կոլեկտիվների անդամների կողմից մեր աշխատանքի թերությունների ու վրի-
պումների քննադատությունը, որպես կանոն, սկզբունքային, հիմնավորված,
գործնական և կոնստրուկտիվ բնույթ է կրում։ Դրանում արտացոլվում է նրանց
շահագրգռությունը դժվարությունների հաջող հաղթահարման, թերություն-
ների արագ վերացման գործում։ Բարյացակամության, փոխադարձ օգնու-
թյան և խստապահանջության ստեղծված իրադրությունը գործուն կերպով օգ-
նում է մեր կադրերին՝ ավելի հաջողությամբ վերացնելու թերությունները,
գտնելու ծագող պրոբլեմների լուծման արդյունավետ ուղիներ, նրանց մեջ
դաստիարակում է բարձր պատասխանատվություն ամբողջ կոլեկտիվի, ամ-
բողջ կուսակցական կազմակերպության ընդհանուր գործի համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմում, կուսակցական կոմիտեներում լավ ավանդույթ է հաստատվել բյուրոների քննարկմանը դնել կուսակցական ժողովներում, պլենումներում, ակտիվի ժողովներում կոմունիստների արած քննադատական դիտողություններն ու առաջարկությունները։ Դրանց առթիվ ընդունվում են որոշումներ, հանձնարարություններ են տրվում համապատասխան մարմիններին։

Հավանության է արժանի նաև քննադատական դիտողությունների և առաջարկությունների իրականացման ընթացքի մասին կուսակցական կազմակերպություններին, կոմունիստներին կանոնավոր կերպով տեղյակ պահելու պրակտիկան։

Քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտի ստեղծումը նուրբ ու բարդ գործ է, որը պահանջում է մշտական, սևեռուն ուշադրություն այն բանի նկատմամբ, որպեսզի ոչինչ չխանգարի այդ իրադրության պահպանմանն ու հաստատմանը։

Իսկ դրան խանգարող հանգամանքները հետևյալներն են։ Դա, նախ և առաջ, քննադատության ճնշումն է։ Մենք միշտ պետք է հետևենք, որ այդպիսի դեպքեր չլինեն, իսկ լինելու դեպքում ժամանակին և ամենավճռական կերպով կասեցվեն։

Քննադատության զարգացմանը չի նպաստում դրան թույլ արձագանքելը։ Ահա այստեղ մենք ունենք թերություններ, որոնց վերացման վրա կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է ամենալուրջ ուշադրությունը դարձնեն։

Քննադատության զարգացմանը խանգարող մյուս հանգամանքը քննադատության նենգափոխումն է չարամիտ դեմագոգիայով, քննադատամոլությունը և զրպարտությունը։

Այս մասին ասվում է ոչ թե նրա համար, որ նման փաստերը մեզանում շատ կան, այլ նրա համար, որ այդպիսի տրամադրություններ կրողներ մեզա-

միշտ ընդունակ լինեն, հնարավորություն ունենան հաջողությամբ լուծել նոր, ավելի բարդ խնդիրներ։

Ներկայումս հանրապետության, մեր կուսակցական կազմակերպության առջև ստեղծարար մեծ խնդիրներ են կանգնած, դրանց հաջող լուծման համար մենք ունենք բոլոր հիմքերն ու հնարավորությունները։ Դա էկոնոմիկայի, գիտության և մշակույթի, աշխատավորության կուլտուրայի բարձր մակարդակն է, դա բոլոր մակարդակների պատրաստված կադրերի առկայությունն է։

Մեր կադրերի հոգսը այսօր ընդհանուր է՝ բոլոր ջանքերը, գիտելիքներն ու եռանդը ի սպաս դնել կուսակցության XXVI համագումարի որոշումների, 11-րդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարմանը։

Մենք վստահ ենք, որ այդ խնդիրները հաջողությամբ կկատարվեն։ Դրա երաշխիքը կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի իմաստուն ղեկավարությունն է, մեր աշխատավորների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, որոնք, ինչպես սովետական բոլոր մարդիկ, ջերմորեն ու միահամուռ հավանություն են տալիս և պաշտպանում մեր կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը։

Ահա արդեն ութ տասնամյակ է, ինչ մեր լենինյան կուսակցությունն ընթանում է պայքարի ու հաղթանակների հերոսական ճանապարհով՝ հարթելով ապագայի ուղին։ Վ. Ի. Լենինը մեր կուսակցությունն անվանում էր նորարարների կուսակցություն։ 80-ամյա պատմության ամբողջ ընթացքում կուսակցությունը պատվով է կատարում նորարարի իր առաքելությունը, ակտիվորեն պայքար է մղում հանուն աշխարհի հեղափոխական վերակերտման ու նորացման։

Կոմունիստների ժամանակակից սերունդները, որոնց պատկանում ենք նաև մենք՝ այս դահլիճում նստածներս, սրբությամբ են պահպանում կոմունիստների մեր մեծ կուսակցության լենինյան սկզբունքներն ու ավանդույթները՝ զարգացնելով դրանք նոր պայմանների ու խնդիրների համեմատ։

Այսօր իբրև նշանաբան են հնչում մեր առաջնորդ Վ. Ի. Լենինի խոսքերը՝ «Ամբողջ բանն այն է, որ չբավականանանք մեր նախկին փորձով, մեր մեջ մշակված հմտությամբ, այլ անպայման ավելի առաջ գնանք, անպայման ավելի շատ բան ձեռք բերենք, անպայման ավելի հեշտ խնդիրներից անցնենք ավելի դժվարներին»։

Այդպես էլ մենք միշտ կվարվենք։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

---

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՇՔԱՆՇԱՆԻ ՀԱՆՁՆՈՒՄԸ «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻՆ

Հանրապետության կուսակցական մամուլի կյանքում նշանակալի իրադարձություն հանդիսացավ «Լենինյան ուղիով» ամսագրի վաթսունամյա հոբելյանին և այդ առթիվ նրան Ժողովուրդների բարեկամության շքանշան հանձնելուն նվիրված հանդիսավոր ժողովը, որը տեղի ունեցավ ընթացիկ տարվա ապրիլի 14-ին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի դահլիճում։ Այստեղ էին հավաքվել կուսակցական, սովետական աշխատողներ, ժուռնալիստներ, հրատարակչությունների ներկայացուցիչներ, ամսագրի հեղինակային ակտիվը, ընթերցողներ։

Ներկա էին ընկերներ Կ. Ս. Դեմիրճյանը, Բ. Ե. Սարկիսովը, Ֆ. Տ. Սարգսյանը, Գ. Ն. Անդրեևը, Կ. Լ. Դալլաքյանը, Վ. Բ. Ղալումյանը, Կ. Հ. Ղամբարյանը, Լ. Ն. Ներսիսյանը, Հ. Մ. Ոսկանյանը, ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ Գ. Ե. Ասատրյանը, «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագիր Ա. Գ. Ադոյանը։

Ժողովը ներածական խոսքով բացեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Կ. Դալլաքյանը։

Ներկաների բուռն ծափահարությունների ներքո պատվավոր նախագահություն ընտրվեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն։ Ողջույնի խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար Կ. Դեմիրճյանը, որին ներկաները ջերմորեն դիմավորեցին։

### ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Կ. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ՈՂՋՈՒՅՆԸ «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՇՔԱՆՇԱՆՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ԱՌԹԻՎ

Այսօր մենք հավաքվել ենք՝ նշելու հանրապետության կուսակցական մամուլի գործունեության մի նշանակալի իրադարձություն ևս։ Լրացել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի «Լենինյան ուղիով» տեսական-քաղաքական ամսագրի առաջին համարի լույսընծայման վաթսուն տարին։

Մեր հանրապետության հնագույն պարբերականներից մեկի հոբելյանը նշված է կառավարական պարգևով՝ Ժողովուրդների բարեկամության շքանշանով, որին ամսագիրն արժանացել է մարքս-լենինյան ուսմունքի պրոպագանդման մարզում կատարած բեղմնավոր աշխատանքի, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների կատարմանը նրանց մոբիլիզացնելու գործին ցուցաբերած ակտիվ մասնակցության համար։ Բարձր պարգևը սոցիալիստական շինարարության խնդիրների հաջող լուծման գործում «Լենինյան ուղիով» ամսագրի, Հայաստանի կուսակցական մամուլի ներդրած ծանրակշիռ ավանդի ճանաչման վկայությունն է։

Թույլ տվեք Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի անունից ամսագրի խմբագրության կոլեկտիվին, հեղինակային ակտիվին և ընթերցողնե-

րին սրտագին շնորհավորել արժանի պարգևի առթիվ։ Շնորհավորանքի և երախտագիտության ջերմ խոսք եմ ուզում այսօր հայտնել ամսագրի բազմամյա գլխավոր խմբագրին և երախտավորին, մեր բոլորի կողմից սիրված ու հարգված Ատո Ադոյանին, որի ներդրումը մեծ է և գնահատելի։

Հայաստանում սովետական իշխանության առաջին տարիներին ստեղծված «Լենինյան ուղիով» ամսագիրը ժառանգեց, հետևողականորեն շարունակեց և զարգացրեց հայ բոլշևիկյան մամուլի հարուստ ավանդույթները՝ դառնալով կուսակցական կազմակերպությունների եռանդուն օգնականը, ընթերցողների բարեկամն ու խորհրդատուն։ Հանրապետության սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում ամսագիրը կոմունիստների, բոլոր աշխատավորների շրջանում ակտիվ պրոպագանդել է մարքս-լենինյան ուսմունքի կարևորագույն դրույթները, ՍՄԿԿ-ի և սովետական պետության քաղաքականությունը, նպատակասլաց աշխատանք է կատարել կուսակցական շինարարության հրատապ հարցերը լուսաբանելու, ընթերցողների շրջանում կոմունիստական գաղափարայնություն արմատավորելու և քաղաքական բարձր կուլտուրա ներարկելու նպատակով։ «Լենինյան ուղիով» ամսագրի էջերում համակողմանի արտացոլվել են հանրապետության կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը, սոցիալիստական շինարարության և տեսության պրակտիկայի հարցերը, բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության շատ սերունդների հայրենասիրական գործերը, Սովետական Հայաստանի հոյակապ նվաճումները նյութական ու հոգևոր կյանքի բոլոր ասպարեզներում։

Այս ամենի համար բարձր հեղինակություն է վաստակել «Լենինյան ուղիով» ամսագիրը։ Ոգեշնչող ու մոբիլիզացնող կուսակցական խոսքով, տնտեսական, հասարակական-քաղաքական աշխատանքի սկզբունքային վերլուծություններով, իր գործնական, բովանդակալից ելույթներով, թերությունների ու վրիպումների քննադատական խոսքով ամսագիրն այսօր էլ հաջողությամբ շոշափելի ներդրում է կատարում կուսակցության առաջադրած խնդիրների կենսագործման բնագավառում։

«Լենինյան ուղիով» ամսագիրը նպատակասլաց ու համակողմանի լուսաբանում և պրոպագանդում է էկոնոմիկայի, կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման՝ հանրապետությունում և երկրում կուտակված փորձը, մշտական ուշադրություն է նվիրում կուսակցական շինարարության պրակտիկայի կատարելագործման, կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացման, կոմունիստների ավանգարդային դերի ամրապնդման հարցերին, գաղափարախոսական աշխատանքի խնդիրներին ու պրոբլեմներին։ Նա անդուլ պրոպագանդում է ժողովուրդների բարեկամության կենսահաստատ գաղափարները, ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունը։ Ժողովուրդների բարեկամության ու եղբայրության թեման օրինաչափորեն դարձել է նրա շատ հրապարակումների լեյտմոտիվը, մեծապես նպաստելով աշխատավորների դաստիարակությանը կուսակցության ու ժողովրդի հեղափոխական, աշխատանքային, մարտական և ինտերնացիոնալիստական ավանդույթների ոգով։

Ամսագրի խմբագրության և հեղինակային ակտիվի այսօրվա ստեղծագործական պրակտիկան ցույց է տալիս ակնառու օրինակներ այն բանի, թե ինչպես կարելի է մարքս-լենինյան տեսության հարցերի պրոպագանդումն ու լուսաբանումը օրգանապես զուգակցել ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումների կենսագործման, պարենային ծրագրի իրագործման ասպարեզում կուսակցական կազմակերպությունների պրակտիկ գործունեության արտացոլման հետ։

«Լենինյան ուղիով» ամսագրի առջև առավել կարևոր խնդիրներ են ծառացել արդի ժամանակաշրջանում։

«Կուսակցության և ժողովրդի առջև խոշոր, մասշտաբային խնդիրներ են ծառանում 20-րդ դարի վերջին տասնամյակներում,— նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը Կարլ Մարքսի ուսմունքը և



ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր հոդվածում։ Ի մի վերցրած, այդ խնդիրները հանգում են այն բանին, որ կարելի կլիներ անվանել զարգացած սոցիալիզմի կատարելագործում, որի համեմատ էլ տեղի կունենա աստիճանական անցումը կոմունիզմին»։

Այդ խնդիրների հաջող լուծումը բոլոր գաղափարախոսական աշխատողներից, մասնավորապես ժուռնալիստներից պահանջում է մշտական ստեղծագործական որոնում, վարպետության անդուլ կատարելագործում, քաղաքական և պրոֆեսիոնալ մտահորիզոնի ընդլայնում։ Նախ և առաջ, խոսքը վերաբերում է մարքս-լենինյան ուսմունքի պրոպագանդայի հետագա բարելավմանը, այն աշխատանքին, որն ամսագիրը պետք է մշտապես կատարի՝ հաշվի առնելով արդի փուլում կուսակցության խնդիրներն ու պահանջները։

Ժամանակի հրամայականն է՝ ամրապնդել պրոպագանդայի կապը կյանքի հետ, մեր զարգացման հրատապ պրոբլեմների լուծման հետ։ Հարկավոր է մարքս-լենինյան տեսության այս կամ այն սկզբունքի լուսաբանումն առավելագույնս մոտեցնել և օրգանապես շաղկապել հասունացած հարցերի լուծման հետ։ Ընդ որում կարևոր է չսահմանափակվել փաստերի արձանագրմամբ, այլ շեշտել կուսակցական-քաղաքական աշխատանքի այն արդյունավետ ձևերը, որոնք ապահովում են արծարծված խնդիրների հաջող լուծումը։

Ամսագրի խմբագրական կոլեգիան, խմբագրության ստեղծագործական կոլեկտիվը կոչված են մշտապես ապահովելու նյութերի գաղափարական ու գիտական բարձր մակարդակը, նրանց ինֆորմացիոն տարողունակությունը, բովանդակալիությունն ու գործարարությունը։ Յուրաքանչյուր ելույթ, յուրաքանչյուր հրապարակում, որոնցում արծարծվում են կարևոր, հրատապ հարցեր, պետք է ունենա ընթերցողների մտքերի ու սրտերի վրա տևական ներգործության պոտենցիալ, նպաստի ավելի ծանրակշիռ արդյունքների հասնելու հասարակական կյանքում, տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում։ Եվ միևնույն ժամանակ ձգտի դնելու այն նորի, առաջադիմականի հիմնաքարը, ինչը վաղը հաստատվելու է մեր կյանքում, կուսակցական կազմակերպությունների գործունեության ոլորտում։

Հարկավոր է մշտապես հոգալ հրապարակումների կազմակերպչական դերի ուժեղացման մասին, ժամանակին վերլուծել ու պաշտպանել առաջավոր փորձը, օգնել կուսակցական կոմիտեներին ու կազմակերպություններին ինչպես այսօրվա, այնպես էլ հեռանկարային խնդիրների լուծման գործում։

Վ. Ի. Լենինը մամուլի կազմակերպչական ֆունկցիան համեմատում էր «այն փայտամածի հետ, որով շրջապատում են կառուցվող շենքը, նշում են շենքի կոնտուրները, դյուրացնում են հաղորդակցությունը առանձին կառուցողների միջև, օգնում են նրանց աշխատանքը բաշխելու և դիտելու այն ընդհանուր արդյունքները, որ ձեռք են բերված կազմակերպված աշխատանքով»։ Հեղափոխության առաջնորդի, որն ինքն էլ կուսակցական կրքոտ հրապարակախոս էր, այս՝ ըստ էության խորիմաստ, բնութագրումը առանձնապես այժմեական հնչողություն ունի։

Ամենուրեք կարգապահության, կազմակերպվածության և պատասխանատվության ամրապնդման հարցը, որը կուսակցությունն առաջադրել է որպես օրվա հրատապ խնդիր, պետք է խորապես մուտք գործի ամսագրի հրապարակումների պրոբլեմատիկայի մեջ, այսպես ասած, մշտական գրանցում ստանա նրա էջերում։ Շատ կարևոր է խելացի, հետևողականորեն ձևավորել հասարակական կարծիքն այդ հարցերի վերաբերյալ, սկսած գործը հասցնել մինչև վերջ, սիստեմատիկաբար վերահսկել արժեքավոր նախաձեռնությունների իրականացմանը։

Այդ կարևոր աշխատանքը չպետք է դառնա ժամանակավոր կամպանիա։ Կարգապահության, կարգուկանոնի ամրապնդման և հանձնարարված գործի համար պատասխանատվության բարձրացման հարցերը «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը պետք է համարի ելակետային պրոբլեմ, որով որոշակիորեն պայմանավորված է տնտեսական ու կուլտուրական զարգացման խնդիրների հաջող լուծումը։ Այդ աշխատանքում կարևոր են ինչպես լավագույն կոլեկտիվների ու կազմակերպությունների դրական փորձի մտածված

ու խելացի պրոպագանդան, այնպես էլ ռեալիստական և կոնստրուկտիվ քննադատությունը։

Խմբագրության հեղինակային կոլեկտիվը պետք է խորամուխ լինի կուսակցության արդի քաղաքականության էության, մշտապես բարձրացնի քաղաքական գիտելիքների և պրոֆեսիոնալ վարպետության մակարդակը, կարողանա կուսակցական դիրքերից գնահատել մեր հասարակության մեջ տեղի ունեցող սոցիալական պրոցեսները, տնտեսական ու հոգևոր կյանքի երևույթները և, որ ամենագլխավորն է, կարողանա խորապես ու մատչելի մեկնաբանել դրանք հրապարակումներում, մշտական աջակցություն ցույց տա կուսակցական կոմիտեներին ու կազմակերպություններին կուսակցության որոշումների, հնգամյակի առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում։ Գաղափարաբարոյական դաստիարակության բնագավառում ամսագիրը պետք է ավելի վճռական շրջադարձ կատարի դեպի դաստիարակչական աշխատանքի պրոբլեմների ու կողմերի կոմպլեքսային բացահայտումը, ավելի հստակությամբ պրոպագանդի սովետական մարդու աշխատասիրությունը, գաղափարական համոզվածությունն ու բարոյական բարձր նկարագիրը, ավելի խոր վերլուծի նոր մարդու ձևավորմանը նպաստող գործոնները։

Անդուլ ուշադրություն է պահանջում հակապրոպագանդիստական գործունեության կատարելագործումը։ Հարկավոր է ակտիվացնել մեր հասարակագետ գիտնականների ելույթները մարքսիզմ-լենինիզմի ամեն տեսակ խեղաթյուրումների, բուրժուական պրոպագանդայի ստահոդ հերյուրանքների, այլևայլ ռևիզիոնիստների քաղաքական ոտնձգությունների դեմ։ «Լենինյան ուղիով» ամսագիրն իր հերթին կոչված է զրպարտչական բարբաջանքներին և մեր հասարակարգը, ՍՄԿԿ-ի ու սովետական պետության քաղաքականությունն արատավորելու փորձերին հմտորեն հակադրելու մեր մեծ սոցիալիստական հայրենիքի պատմական նվաճումների պրոպագանդան, նրա հասարակական-քաղաքական կյանքի իրադարձությունների ու երևույթների համոզիչ ու հստակ վերլուծությունը։ Կարևոր է, որ հակապրոպագանդան լինի մարտական, հարձակողական, խորապես փաստարկված ու նպատակասլաց։

Մեծ ու պատասխանատու է մամուլի դերը մեր հասարակության կյանքում։ Կոմունիստական կուսակցությունը մեծ հարգանքով ու վստահությամբ է վերաբերվում մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատողներին։ Մեր ժուռնալիստները ձգտում են անշեղորեն կենսագործել կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան և նոյեմբերյան պլենումներում կուսակցության առաջադրած բարդ ու պատվավոր խնդիրները, գաղափարական գործունեությունը բարելավելու հարցերի վերաբերյալ ընկեր Յու. Վ. Անդրոպովի ցուցումները։

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրության կոլեկտիվն այսուհետ ևս բոլոր ուժերն ու ստեղծագործական եռանդը կներդնի հրապարակումների գաղափարական մակարդակն ու ներգործությունը բարձրացնելու համար, նպաստի կուսակցական կազմակերպությունների մարտունակության աճին, կուսակցական կադրերի դաստիարակմանը, ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործման նպատակով նրանց ջանքերի հետագա ակտիվացմանը, միշտ կընթանա կուսակցական պրոպագանդայի առաջավոր դիրքերում։

Ընկ. Կ. Դեմիրճյանը հրապարակում է ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության հրամանագիրը «Լենինյան ուղիով» ամսագիրը Ժողովուրդների բարեկամության շքանշանով պարգևատրելու մասին։ Ներկաների բուռն ծափահարությունների ներքո նա շքանշանն ամրացնում է ամսագրի խմբագրության դրոշին։

Ընկ. Կ. Դեմիրճյանը ամսագրի կոլեկտիվին, հեղինակային ակտիվին և ընթերցողներին մի անգամ ևս ջերմորեն շնորհավորում է հայրենիքի բարձր պարգևի առթիվ և նոր ու մեծ հաջողություններ մաղթում նրանց։

«Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագրի տեղակալ Ա. Սիմոնյանը շնորհակալություն հայտնեց ամսագրի վաստակը բարձր գնահատելու համար, համառոտակի ներկայացրեց ամսագրի վաթսունամյա ուղին։



Հիրավի, ամսագիրը լենինյան ուղիով ընթացող հնգակի շքանշանակիր, նարմրադրոշ Սովետական Հայաստանի, նրա կուսակցական կազմակերպության վսեմ ախրանքների հարազատ թարգմանն է, հանրապետության բազմաբեղուն կյանքի հավատարիմ մեկնաբանը։

Առաջին իսկ համարից սկսած, որը լույս է տեսել 1922 թվականի դեկտեմբերին, ամսագիրը մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների պրոպագանդան սերտորեն զուգակցել է քաղաքական-կազմակերպչական աշխատանքի հետ։ Ամսագրի անդրանիկ համարի գլխավոր խմբագիրն է եղել Դրաստամատ Տեր-Սիմոնյանը, խմբագրական կոլեգիայի անդամները՝ Ալեքսանդր Շահսուվարյանը և Գրիշա Մեհրաբյանը։ Այդ տարիներին ամսագրի էջերում հանդես են եկել բոլշևիկյան հեղափոխական հրապարակախոսության դպրոցն անցած հավատարիմ լենինյաններ Ալեքսանդր Մյասնիկյանը, Սարգիս Լուկաշինը, Սարգիս Կասյանը, Աշոտ Հովհաննիսյանը, Ասքանազ Մռավյանը, Դանուշ Շահվերդյանը, Արտաշես Կարինյանը, Ռուբեն Դաշտոյանը և շատ ուրիշներ։

Ամսագրի համարներում զետեղված նյութերը համոզիչ վկայում են, որ սոցիալիստական հասարակության կառուցման պաթոսով ոգեշնչված մեր ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հաղթահարելով բազմապիսի դժվարություններ, աշխատանքային արիության ու խիզախության վառ օրինակներ է ցուցաբերել, աննախադեպ նվաճումներով հարստացրել նորոգ կյանքի տարեգրության էջերը։ Ամսագիրն առաջին իսկ համարներից ըստ էության քաղաքական գիտելիքների դասագրքի դեր է կատարել հանրապետության կուսակցական ակտիվի, քաղաքի և գյուղի աշխատավորության համար։ Այն ուսուցանել է ժողովրդին, որ առանց կրթության ու գիտության անհնար է նոր հասարակության կառուցումը։ Կուսակցության վետերանները լավ են հիշում, որ նոր և հին սերնդի դաստիարակման բոլորանվեր գործում կուսակցական, սովետական աշխատողները, մանկավարժներն ու պրոպագանդիստները օգտվում էին ամսագրից, ուր նրանք կուսակցության քաղաքականության, մարքս-լենինյան սոցիոլոգիայի, փիլիսոփայության, քաղաքատնտեսության հրատապ հարցերին նվիրված հրապարակումների հետ միասին ծանոթանում էին գիտության նորույթներին, գիտական աթեիզմի հիմունքներին։

Ամսագրի էջերում հանգամանորեն արտացոլվել են սոցիալիստական շինարարության հերոիկան, նոր հասարակական հարաբերությունների արմատավորումը և կուլտուրական հեղափոխության հասումները քաղաքում և գյուղում։

Հետպատերազմյան առաջին տասնամյակում ամսագրի էջերում համակողմանի լուսաբանվել են Հայաստանի կոմկուսի գործունեությունը, հանրապետությունում ժողովրդական տնտեսության բուռն զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների ներդրման խնդիրները։ Մեծ տեղ է հատկացվել կուսակցական գաղափարական, կազմակերպական աշխատանքի հարցերին, կուսակցական կազմակերպությունների փորձի լուսաբանմանն ու տարածմանը։

Նախկինում մի քանի անուն է ունեցել մեր ամսագիրը — «Կոմունիստ», «Կուսակցական կյանք», իսկ 1957-ից կոչվել է «Լենինյան ուղիով»։ Այս քառորդ դարը նոր փուլ հանդիսացավ լենինյան ուղիովցիների ստեղծագործական կյանքում։ Ամսագրի էջերում առավել լիովին արտացոլվեցին հանրապետության կուսակցական կազմակերպությունների բազմաբնույթ աշխատանքը, գաղափարախոսական պրոցեսի նոր երևույթները։

Ամսագիրը համակողմանի լուսաբանել է մարքսիզմ-լենինիզմի, ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականության հրատապ պրոբլեմները, հետևողականորեն անդրադարձել լենինյան տեսական հարուստ ժառանգությանը, պարզաբանել ՍՄԿԿ հարաճուն ղեկավար դերը զարգացող սոցիալիստական հասարակարգում։ Պատշաճ տեղ է հատկացրել կուսակցական շինարարության

պրակտիկ խնդիրների լուսաբանմանը, արդի միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման, ազգային-ազատագրական պայքարի, սոցիալիստական ընկերակցության երկրներում սոցիալիզմի կառուցման փորձի ուսումնասիրմանը։ Սիստեմատիկ պրոպագանդվել են մարքս-լենինյան փիլիսոփայության, սոցիոլոգիայի, գիտական կոմունիզմի, տնտեսագիտության և տնտեսության կառավարման, կուսակցական ու սովետական շինարարության, գիտատեխնիկական հեղափոխության հրատապ պրոբլեմները։

Հանգամանորեն քննարկվել են հանրապետության հասարակական-քաղաքական կյանքի, ինչպես նաև տնտեսության ղեկավարման մեթոդներն ու ոճը, դրանց կատարելագործման առկա փորձը։ Մեծ տեղ է հատկացվել ՍՄԿԿ և ՀԿԿ պաշտոնական փաստաթղթերի հրապարակմանն ու մեկնաբանմանը։ Ամսագիրը կոնկրետ օգնություն է ցույց տվել կուսակցական ու տնտեսագիտական ուսուցման սիստեմի ունկնդիրներին, հրապարակել է ուսուցման ծրագրով նախատեսվող նյութեր։

Ամսագրի տեսադաշտում են եղել արվեստի, գրականության, ինչպես և կուլտուրայի այն բնագավառները, որպիսին են մամուլի տեսությունները, գրախոսությունները, պատմական տարեթվերը, նշանավոր կոմունիստների կենսագործունեությանը նվիրված նյութերը։

Հանրապետության կուսակցական կազմակերպության կյանքում կարևոր նշանակություն ունեցան ՀԿԿ Կենտկոմի 1974 թվականի նոյեմբերյան, ինչպես և 1975 թվականի հունվարյան ու հունիսյան պլենումները։ Ղեկավարվելով ՀԿԿ Կենտկոմի ցուցումներով՝ ամսագրի խմբագրական կոլեգիան վերանայեց բաժինների աշխատանքային պլանները, մշակվող հոդվածներում շեշտը դրվեց առավել հրատապ ու կենսական հարցերի վրա, ավելի խոր ու բազմակողմանի արծարծվեցին տեսական ու քաղաքական պրոբլեմները։ Մեծ տեղ հատկացվեց սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքների վերլուծությանը, մասնավորապես ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքի կիրառման հարցերի մեկնաբանմանը։ Այդ առթիվ ամսագրի համարներում զետեղված են ՀԿԿ Կենտկոմի կազմակերպած գիտապրակտիկ կոնֆերանսների նյութերը։

Ամսագրի էջերում հրապարակվել են ՍՍՀՄ և ՀՍՍՀ նոր սահմանադրությունների նախագծերը։ Այս առթիվ տպագրվել են մի շարք արժեքավոր հոդվածներ ու կոնկրետ առաջարկություններ։

1978 թվականին հանդիսավորությամբ նշվեց Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը։ Այդ առնչությամբ հրապարակվեցին մի շարք նյութեր, որոնք ուշագրավ են նաև գիտահետազոտական առումով։

1980 թվականի նոյեմբերին Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայկոմկուսի կազմավորման 60-ամյակի տոնակատարությունը վերածվեց ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, ՍՄԿԿ-ի, նրա լենինյան Կենտկոմի շուրջը հայ ժողովրդի, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների սերտ համախմբվածության վառ ցույցի։ Այդ առիթով ամսագիրը պարբերաբար հոդվածաշար հրապարակեց՝ նվիրված հայ ժողովրդի ազգային տոնին։

Ամսագիրը տպագրել է ՀԿԿ Կենտկոմի հաշվետվությունը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարին, որով հանդես է եկել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը։ ՀԿԿ համագումարն ամփոփեց հանրապետության կուսակցական կազմակերպության գործունեությունը, ընդհանրացրեց պրակտիկ փորձի, կուտակված արժեքավորի և ուսանելիի արդյունքները, քննադատեց աշխատանքներում տեղ գտած թերություններն ու վրիպումները, նշեց դրանց վերացման ուղիները, սահմանեց կուսակցական աշխատանքի հետագա բարելավման խնդիրները, հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման նոր բնագծերը։

Ամսագիրը զետեղել է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը կուսակցության XXVI համագումարում։ Այստեղ լուսաբանվել են համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական և քաղաքական-գաղափարական խնդիրները։ Պատշաճ տեղ է հատկացված գաղափարական ներգործման առանձնահատկությունների



լուսաբանմանը և սովետական հասարակության քաղաքական սիստեմի համակողմանի քննարկմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի տեսական-քաղաքական «Կոմունիստ» ամսագիրն ընթացիկ տարվա երրորդ համարում զետեղած հանրապետական կուսակցական տեսական-քաղաքական ամսագրերին նվիրված ծավալուն գրախոսականում դրական է գնահատել «Լենինյան ուղիով»-ի աշխատանքը հատկապես այնպիսի կարևոր տեսական ու պրակտիկ հարցերի մշակման ասպարեզում, որպիսիք են ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո սովետական հասարակության սոցիալ-քաղաքական ու կուլտուրական զարգացման խնդիրները, ՍՍՀՄ-ի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդումը, արդի պայմաններում գաղափարական գործունեության ուժեղացումը։ Նշված է, որ 1982 թվականին ամսագրի էջերում սիստեմատիկաբար լուսաբանվել է հանրապետության կուսակցական կազմակերպությունների գործունեությունը՝ սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների արմատավորման, ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված սոցիալիստական մրցության ծավալման նպատակով։

Հատկապես դրվատված են «Լենինյան ուղիով»-ի խմբագրության ստեղծագործական կապերը Ուկրաինայի, Բելոռուսիայի, Թուրքմենստանի, Էստոնիայի ու միութենական այլ հանրապետությունների կուսակցական ամսագրերի հետ։ Մեր ամսագրի համարներում տպագրվել են Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Է. Վայնոյի, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Վոսի, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Պ. Գրիշկյավիչուսի, ՍՄԿԿ Ռոստովի մարզային կոմիտեի առաջին քարտուղար Ի. Բոնդարենկոյի, Էստոնական ՍՍՀ կուլտուրայի մինիստր Ի. Լոտի, Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Ե. Խարաձեի, «Կոմունիստ Տաջիկիստանի» ամսագրի գլխավոր խմբագիր Մ. Ալիմովի, «Թուրքմենստան կոմունիստի» ամսագրի գլխավոր խմբագիր Խ. Դուրդիևի, եղբայրական մյուս հանրապետությունների ղեկավար այլ աշխատողների, բանվորների, գիտության ու կուլտուրայի գործիչների հոդվածները։

Սովետական Հայաստանի ղեկավար աշխատողների, բանվորների, հասարակայնության ներկայացուցիչների, գիտնականների, կուլտուրայի գործիչների ելույթները հրապարակվել են մյուս հանրապետությունների կուսակցական ամսագրերում։

Իր բազմամյա գործունեության ընթացքում մեր ամսագիրը հետևողական գաղափարախոսական պայքար է մղել բուրժուական պրոպագանդայի դեմ, մերկացրել հակակոմունիզմի հերյուրանքները, քննադատել դաշնակցության ազգայնական-հակասովետական քաղաքականությունն ու գաղափարախոսությունը։

Ամսագրում հրապարակվել են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի նյութերը, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառը, ինչպես և ՀԿԿ Կենտկոմի 1982 թվականի դեկտեմբերյան պլենումի փաստաթղթերը։

Վերջերս հանրապետության կուսակցական կազմակերպության ակտիվը հանգամանորեն քննարկեց «ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի, ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի զեկուցումից բխող հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը։ Խմբագրական կոլեգիան, ելնելով ընկեր Դեմիրճյանի զեկուցման հիմնադրույթներից, կազմել է իր առաջիկա գործունեության ծավալուն ծրագիրը։

Պատրաստվող հոդվածներում լուսաբանվելու են արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի հետագա բարելավման, վերջնական բարձր արդյունքի հասնելու խնդիրը, արտադրության տեխնիկական վերազինման արագացման, թողարկվող արտադրանքի նորացման, արտադրության կազմակերպման ու կուլտուրայի մակարդակի բարձրացման, նյութական և էներգետիկ ռեսուրսների, ֆինանսական միջոցների արդյունավետ ու նպատա-

կային օգտագործման, գիտության ու արտադրության կապի առավել ամրապնդման հարցերը։ Ամսագիրը կշարունակի լայնորեն լուսաբանել պարենային ծրագրի իրականացման և ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման պրոբլեմները, ինչպես նաև աշխատանքային, արտադրական և պետական կարգապահության ամրապնդման հարցերը։

Առաջիկայում ևս ամսագրի էջերում լայն տեղ կհատկացվի աշխատավորներին ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության, հանրային ունեցվածքի նկատմամբ հոգատարության ոգով դաստիարակելու, նրանց քաղաքացիական ակտիվության ու նախաձեռնության զարգացման հարցերին։ Ամսագրի խմբագրության ուշադրության կենտրոնում է սովետական հասարակության հոգևոր կյանքի, սոցիալիստական ապրելակերպի հաստատման, նոր մարդու ներդաշնակ զարգացման համակողմանիորեն փաստարկված լուսաբանումը։ Այս առնչությամբ ամսագիրը շարունակում է հետևողականորեն պրոպագանդել սոցիալիստական հասարակությանն անհարիր երևույթների դեմ մղվող պայքարը։

Դժվար է նույնիսկ թվարկել այն բոլոր հարցերը, որոնք լուսաբանվում են «Լենինյան ուղիով»-ի էջերում։ Այստեղ հանդես են գալիս կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական աշխատողներ, մասնագետներ, արտադրության հրամանատարներ ու առաջավորներ, գիտության ու մշակույթի տարբեր բնագավառների ներկայացուցիչներ։ Մեզ հետ սիրով համագործակցում են երկրի անվանի գիտնականները։

Ճշմարիտ է ասված, որ խմբագիր-ժուռնալիստը կադրի ետևում է։ Ընթերցողը նրան չի տեսնում, նա պարզապես կարդում է տպագրված նյութը, հաճախ չի իմանում, թե ինչպիսի ջանքերի գնով է լույս աշխարհ գալիս ամսագիրը։ Խմբագրության կոլեկտիվը նման է նվագախմբի, որի ամեն մի անդամ իր ձայնն ունի և իր տեղը ամսագրի լույսընծայման գործում։ Այստեղ առաջնային ու երկրորդական գործեր չկան։ Խմբագրական աշխատանքի բոլոր գումարելիներն ընթերցողի վրա ներազդելու լծակներ են։ Ժուռնալիստից պահանջվում է ո՛չ միայն կատարելապես մշակել նյութն իր բոլոր գաղափարամասնագիտական ու գրական չափանիշներով, այլև հանդես գալ սեփական հրապարակումներով։ Ուստի նա միշտ պետք է լինի ստեղծագործական որոնումների վիճակում, մշտապես հարստացնի գիտելիքները, սթափ հետևի կյանքի նորություններին, լավատեղյակ լինի երկրի, հանրապետության, աշխարհի իրադարձություններին։

Տեսական-քաղաքական ամսագրի աշխատողը կուսակցական-գաղափարական ճակատի ավանգարդում է, որը նրանից պահանջում է ուժերի լարում, անմնացորդ նվիրում։

Ժողովուրդների բարեկամության շքանշանին արժանացած «Լենինյան ուղիով» տեսական-քաղաքական ամսագրի կոլեկտիվը հավաստիացնում է Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին, որ առաջիկայում ևս պատասխանատվության խոր զգացումով կլուծի իր առջև ծառացած խնդիրները։

Բարձր պարգևի առթիվ շնորհավորական խոսք ասացին ՀԿԿ Մյասնիկյանի շրջկոմի առաջին քարտուղար Գ Մուրադյանը, «Կոմունիստ» թերթի խմբագիր Բ. Մկրտչյանը, Հայկական ՍՍՀ ԳԱ թղթակից անդամ Մ. Քոթանյանը, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի դիրեկտոր Հ. Սիմոնյանը։

Բարձր գնահատելով ամսագրի կատարած աշխատանքն ու ստեղծագործական հասումները՝ նրանք նշեցին, որ այն այսուհետ ևս բոլշևիկյան հետևողականությամբ կպրոպագանդի Լենինի կուսակցության ամենահաղթ գաղափարները, կարևոր ավանդ կներդնի ՍՄԿԿ XXVI, ՀԿԿ XXVII համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների կենսագործման ասպարեզում, լայնորեն կլուսաբանի սոցիալիստական շինարարության հերոսական ընթացքը, հանրապետության ժողովրդական տնտեսության բուռն զարգացման խնդիրները, կուսակցական կազմակերպությունների բազմաբեղուն գործունեությունը։

---

Կարլ Մարքսի ծննդյան 165-ամյակի

և մահվան 100-ամյակի առթիվ

# ԿԱՐԼ ՄԱՐՔՍԻ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՅԵՐԵՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ



**Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՄԱՐՔՍԻԶՄԻ ԾԱԳՈՒՄԸ ԵՎ ՏԱՐԱԾՈՒՄԸ Ռուսաստանում պատմական օրինաչափ պրոցես էր։ Ռուսաստանում, այդ թվում նաև Անդրկովկասում, այն ընթացել է գրեթե նույն ձևով, ինչպես Եվրոպայում։ Բայց Հայաստանում ընդհանուր օրինաչափությունների հետ միասին ունեցել է նաև առանձնահատկություններ, որոնք առաջին հերթին պայմանավորված էին հայ ժողովրդի երկփեղկված վիճակով, Արևելյան և Արևմտյան Հայաստանի սոցիալ-քաղաքական կյանքով։ Եթե Արևելյան Հայաստանը պայքարում էր սոցիալ-տնտեսական, քաղաքական ազատության համար, ապա Արևմտյան Հայաստանը՝ ժողովրդի գոյատևման համար։ Վ. Ի. Լենինի զինակիցներից Վլադիմիր Բոնչ-Բրուևիչը «Կիևսկայա միսլ» թերթի 1914 թ. հոկտեմբերյան համարում հրապարակած «Հայաստանի վիշտը» հոդվածում նշել է, որ դարասկզբին արտասահմանում հանդիպել է մի հայ հեղափոխականի, գրուցել... վերջինս նրան ցույց է տվել Կ. Մարքսի աշխատությունների, այդ թվում՝ Կոմունիստական կուսակցության մանիֆեստի հայերեն թարգմանությունները և ասել. «Ես ինքս եմ Մարքսի Կոմունիստական կուսակցության մանիֆեստը հայերեն թարգմանել և փորձում եմ նույնը մարմնավորել թուրքերեն, քրդերեն և պարսկերեն»։

Մարքսիզմի տարածմանը, Կ. Մարքսի աշխատությունների հայերեն հրատարակություններին նպաստեցին Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, ինչպես և հայ հասարակական մտքի դեմոկրատական, մատերիալիստական ավանդույթները, որոնք XIX դարի կեսերին ներկայացված էին ականավոր գրողների ու մտածողների, լուսավորիչների ու դեմոկրատների, հասարակական գործիչների մի ամբողջ համաստեղությամբ։

Մարքսիզմի հիմնադիրների երկերի, սոցիալիստական գրականության թարգմանության, ինչպես և մարքսիստական ինքնուրույն աշխատությունների հրատարակման գործում աչքի ընկնող դեր խաղաց Գ. Վ. Պլեխանովի հիմնադրած «Աշխատանքի ազատագրություն» խումբը՝ Ռուսաստանի մարքսիստական առաջին կազմակերպությունը։

Ռուսաստանում մարքսիստական շարժումն սկզբնավորվելով «Աշխատանքի ազատագրություն» խմբից, Վ. Ի. Լենինի հիմնադրած Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» և ապա՝ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության առաջին ջոկատների, լենինյան «Իսկրա»-ի ու բոլշևիկյան կազմակերպությունների միջոցով տարածվեց բովանդակ Ռուսաստանում և նրա ծայրամասերում, այդ թվում՝ Անդրկովկասում։ Ռուսաստանում բանվորական շարժումը միացավ սոցիալիզմին, միահյուսվեց և դարձավ անհաղթահարելի ուժ։

Ռուսաստանի հասարակական կյանքում առաջացած սոցիալ-տնտեսական, քաղաքական փոփոխությունների ազդեցության շնորհիվ նոր փուլ է թևակոխում հայ ժողովրդի ազատագրական պայքարը, որը մինչ սոցիալ-դեմոկրատիայի ձևավորումը երկար ժամանակ ընթանում էր դեգերումների, որոնումների, հիասթափությունների և հուսախաբությունների ճանապարհով։

Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածման գործում մեծ դեր են խաղացել գիտական կոմունիզմի հիմնադիր Կ. Մարքսի և նրա մերձավոր զինակից Ֆ. Էնգելսի աշխատությունների թարգմանություններն ու հրատարակությունները։ Հայ հասարակական մտքի նախամարքսյան շրջանի բարձրակետը Միքայել Նալբանդյանն է։ Բայց ո՛չ Մ. Նալբանդյանը, ո՛չ նրա գաղափարակիցներից որևէ մեկը և ոչ էլ նրանց անմիջական հաջորդները հայ հասարակական-քաղաքական միտքը չհասցրին մարքսիստական բարձրակետին։ Այդ պատճառով էլ այն երկար ժամանակ որոնումների մեջ էր և հասարակական զարգացման խաչուղիներում բախվում էր քաղաքական տարբեր հոսանքների հետ։

1880-ական թվականներից սկսած, չնայած ոստիկանության և գրաքննության խստագույն սահմանափակումներին, Մարքսի աշխատություններն աստիճանաբար թափանցում են հայ իրականություն։

Առաջավոր գաղափարներով տարված հայ ուսանողների օգնությամբ I Ինտերնացիոնալի և Փարիզի կոմունայի գործունեությունը ժամանակին արձագանք է գտել հայ, մասնավորապես արևելահայ պարբերական մամուլում։ I Ինտերնացիոնալի մասին հոդվածներ է տպագրել «Մշակը», իսկ Փարիզի կոմունայի մասին՝ «Մեղու Հայաստանին» (տե՛ս «Մշակ», №№ 13, 15, 1872 թ., «Արևելյան մամուլ», թիվ 4, 5, 6, 1871 թ.)։ «Մշակ»-ի առաջին տարվա՝ 1872 թվականի մարտի 30-ի և ապրիլի 13-ի համարներում «Եվրոպայի աշխատողների ընկերությունը» խորագրով ծավալուն հոդվածաշարում հանգամանորեն խոսվում է I Ինտերնացիոնալի հիմնադրման, նրա գործունեության, «Հիմնադիր Մանիֆեստի», Կանոնադրության, Ինտերնացիոնալի խնդիրների մասին։ Թեև հոդվածը անստորագիր է, բայց նրա բովանդակությունը, քաղաքական նպատակամղվածությունը հիմք են տալիս եզրակացնելու, որ դրա հեղինակը դեմոկրատական հոսանքի ներկայացուցիչներից է։ Հոդվածը սկսվում է արդյունաբերության զարգացման և այդ բազայի վրա պրոլետարիատի առաջացման պատմությամբ։ «Հիմնադիր Մանիֆեստի» ոգով շարադրված են երկու հակամարտ դասակարգերի՝ բուրժուազիայի և պրոլետարիատի ներհակությունները, շեշտված, որ սրանք «հասարակության երկու ծայրահեղ բևեռներն են, երկու դասակարգեր, որոնց մեջ կա անդադար կռիվ գոյության համար» (տե՛ս «Մշակ», № 13, 30 մարտի, 1872 թ.)։

Հոդվածում նկարագրվում են I Ինտերնացիոնալի ստեղծման նախադրյալները և հիմնադրման պրոցեսը, խոսվում է բանվոր դասակարգի միասնության անհրաժեշտության մասին։ «Մշակ»-ի հոդվածագիրը, որը համակրանքով է լցված բանվորների արդարացի պայքարի նկատմամբ, հայ ընթերցողների ուշադրությանն է ներկայացնում Ինտերնացիոնալի որոշումներից և նրա ժամանակավոր կանոնադրության ներածությունից հատվածներ, համերաշխում այդ ծրագրային փաստաթղթերի գլխավոր մտքին, թե Ինտերնացիոնալի խնդիրն է՝ «ազատել մշակներին դրամագլխի հպատակությունից» (նույն տեղը)։ Հոդվածում համակրանքով է խոսվում Ինտերնացիոնալի ազգային սեկցիաների, բանվորական շարժման ականավոր գործիչներ Ավգուստ Բեբելի, Վիլհելմ Լիբկնեխտի և այլոց մասին։ Հոդվածագիրը արդարացի կերպով նկատում է, որ I Ինտերնացիոնալը բանվորական շարժման մեծ գործի փոքրիկ սերմն է, որը աճելով մեծ հունձ կտա։ «Ինչ որ Եվրոպայի մշակները արին Լոնդոնի համաշխարհային հանդեսից հետո (խոսքը Ինտերնացիոնալի առաջին կոնգրեսի մասին է.— Խ. Բ.), ոչ այլ ինչ էր, եթե ոչ՝ մի փոքրիկ սերմ այն ընկերության, որ այժմ այնպիսի անհանգստություն է պատճառում եվրոպական կառավարություններին և նյութական ապահովության տեր մարդկանց» («Մշակ», № 15, 13 ապրիլի, 1872 թ.)։

Ուշադրության արժանի է այն փաստը, որ «Մեղու Հայաստանի» թերթը



նույնպես, հակառակ իր ուղղությանը, տպագրել է այնպիսի հոդվածներ, որոնցում համակրանքով է խոսվում Փարիզի կոմունայի մասին։ Այսպես, «Մեղու»-ի 1871 թվականի հունիսի 13-ի համարում զետեղված «Թղթակցություն Փարիզից» հոդվածից երևում է, որ հոդվածագիրը ջերմորեն պաշտպանում է Կոմունան, մերկացնում նրա դահիճներին։

I Ինտերնացիոնալի և Փարիզի կոմունայի գործունեությանը, թեև թույլ չափով, անդրադարձել է նաև արևմտահայ պարբերական մամուլը։ Նշանավոր հրապարակախոս Մաթևոս Մամուրյանի խմբագրությամբ Զմյուռնիայում լույս տեսնող «Արևելյան մամուլ» հանդեսն իր առաջին իսկ համարներից «Քաղաքական տեսություն» խորագրի տակ նյութեր է հրապարակել Փարիզի կոմունայի գործունեության վերաբերյալ (տե՛ս «Արևելյան մամուլ», թիվ 4, էջ 171—174)։

Կարլ Մարքսի և նրա զինակից Ֆրիդրիխ Էնգելսի աշխատությունների հայերեն հրատարակության առաջին փորձերը, ինչպես նշեցինք, կատարեցին ռուսական կենտրոնական քաղաքներում և Եվրոպայում սովորող հայ ուսանողները։ 1880-ական թվականներից սկսած՝ արտասահմանում սովորող առանձին հայ ուսանողներ անձնական կապեր են հաստատում Գ. Պլեխանովի և նրա հիմնադրած «Աշխատանքի ազատագրություն» խմբի հետ։ Հայ առաջին սոցիալ-դեմոկրատներից մեկը՝ Գ. Ղարաջյանը (Ս. Տ. Արկոմեդ), Գ. Պլեխանովի հետ առաջին անգամ ծանոթացել է 1886 թվականին։

Մինչև այդ նա Ֆրանսիայում արդեն ձեռք էր բերել Կ. Մարքսի Կապիտալը՝ ֆրանսերեն լեզվով, որի «ընթերցումն ամռանն ու աշնանը,— ասում է Գ. Ղարաջյանը,— այն ազդեցությունն ունեցավ, ինչպիսի ազդեցություն կարող էր ունենալ կույրի վրա մի տեսակ հրաշքով նրա աչքերի բացումը» (տե՛ս Գ. Ղարաջյան, Հեղափոխականի հիշատակարանը (ձեռագիր), մաս 2, էջ 42. տե՛ս ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 4051, ց. 1, գ. 81)։

1887 թվականին Գ. Ղարաջյանը ֆրանսերենից՝ ռուսերենի (Գ. Պլեխանովի թարգմանությունը) հետ համեմատելով, հայերեն է թարգմանում Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, իսկ ռուսերենից՝ Դիկշտեյնի Ով ինչով է ապրում գրքույկը։ Վերջինս հրատարակվում է Ժնևում, իսկ Մանիֆեստի թարգմանությունը Գ. Ղարաջյանը մի հոդվածի հետ միասին, «Նուբար» ստորագրությամբ, ուղարկում է Մարսել, «Արմենիա» թերթի խմբագիր Մկրտիչ Փորթուգալյանին՝ թերթում հրատարակելու համար։ Դա այն ժամանակ էր, երբ «Արմենիա»-ն մրցանակաբաշխություն էր հայտարարել Արևմտյան Հայաստանի բարենորոգումների կապակցությամբ։

Սակայն «նյութի ընդարձակության և համամարդկային պրոբլեմներ շոշափելու պատճառով», «Արմենիա»-ն հրաժարվեց հրատարակել Կոմունիստական մանիֆեստի Գ. Ղարաջյանի թարգմանությունը, խորհուրդ տալով այն տպագրել առանձին գրքույկով։

Կոմունիստական կուսակցության մանիֆեստի հայերեն թարգմանությանը Ֆ. Էնգելսն առաջին անգամ անդրադարձել է 1888 թվականի հունվարի 30-ին գրած առաջաբանում։ «Հայերեն թարգմանությունը,— գրել է Ֆ. Էնգելսը,— որ մի քանի ամիս առաջ պետք է տպագրվեր Կոստանդնուպոլսում, ինչպես ինձ հաղորդել են, լույս չտեսավ այն պատճառով միայն, որ հրատարակիչը վախեցել է Մարքսի անունը կրող գիրքը լույս ընծայել, իսկ թարգմանիչը չի համաձայնել Մանիֆեստը ներկայացնել որպես իր աշխատությունը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, «Հայաստան» հրատ., 1973 թ., էջ 27)։

Մեր կարծիքով, Ֆ. Էնգելսի հիշատակած փաստը Գ. Ղարաջյանի թարգմանությանն է վերաբերում։

Կ. Մարքսի աշխատությունների հայերեն առաջին թարգմանությունների գործում երախտիք ունի 80-ական թվականների հայ ազգային նարոդնիկական շարքերից ելած սոցիալիստ Հովսեփ Աթաբեկյանցը, որը 90-ական թվականներին արտասահմանում մոտիկից հաղորդակից է դառնում մարքսիզմին, հնարավորություն ստանում անձամբ ծանոթանալու Կ. Կաուցկու, Կ. Ցետկինի,

Պարվուսի և այլ գործիչների հետ, լսելու Ա. Բեբելի, Վ. Լիբկնեխտի և այլոց ելույթները։ Նա ուսումնասիրում է մարքսիզմը, տարվում գիտական սոցիալիզմի գաղափարներով։ Հ. Աթաբեկյանցի մասնակցությամբ Կաուցկին և Պարվուսը Թուրքիայում կատարվող հայկական կոտորածների առթիվ թռուցիկներ են պատրաստում և հրատարակում գերմանական և ավստրիական մամուլում։ Հ. Աթաբեկյանցը Իտալիայում առիթ է ունեցել ծանոթանալու Տուրատիի և 1894 թվականի Սիցիլիայի գյուղացիական շարժման ղեկավարների՝ Դեֆիլիչեի, Բարբատոյի և այլոց հետ։

1893—1894 թվականներին Շտուտգարդում նա գերմաներենից հայերեն է թարգմանում Կոմունիստական կուսակցության մանիֆեստը և Ֆ. Էնգելսի Գիտական սոցիալիզմը (Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն) աշխատությունը։ Մանիֆեստ-ի հայերեն թարգմանության հրատարակության համար համառոտ առաջաբան ստանալու ակնկալությամբ 1894 թվականի նոյեմբերի 1-ին Հ. Աթաբեկյանցը նամակով դիմում է Ֆ. Էնգելսին։

Նամակի փաստն ինքնին ուշագրավ է և պատիվ է բերում Ֆ. Էնգելսի հայ նամակագրին։

«Կոմունիստական մանիֆեստի հրատարակությունը, որի մասին Դուք խոսում եք իբրև տարօրինակ երևույթի՝ Մանիֆեստի գերմաներեն հինգերորդ հրատարակության երրորդ նախաբանում,— գրել է Հ. Աթաբեկյանցը,— շուտով պետք է լինի և կլինի կատարված փաստ։ Չնայած որոշ դժվարություններին, որ ներկայացնում է Մանիֆեստի հայերեն լեզվով թարգմանելը, բայց և այնպես դրանք հաղթահարված են, թարգմանության մեջ մենք աշխատել ենք թույլ չտալ և ոչ մի ազատություն, ամենուր խստորեն հետևելով գերմաներեն բնագրին։ Մանիֆեստի թարգմանությունը բոլոր երեք նախաբաններով հանդերձ, որոնց կկցվի նաև Ինտերնացիոնալի կանոնադրությունը, արդեն լիովին պատրաստ է տպագրության և սպասում է միայն Ձեր թույլտվությանը։ Եթե Դուք այնքան բարի կգտնվեք, որպեսզի Մանիֆեստի մեր հրատարակության առթիվ գեթ մի քանի ջերմ, սրտալից խոսքեր գրեք, ապա մենք Ձեզ շատ և շատ երախտապարտ կլինենք։ Մենք դիմում ենք Ձեզ այս խնդրով, գիտենալով, որ Ձեր խոսքերը անհրաժեշտ ընթացք կտան նոր գործին՝ սոցիալիստական գաղափարների պրոպագանդմանը հայ ժողովրդի՝ Փոքր Ասիայի թերևս ամենակուլտուրական ներկայացուցչի մեջ, որը արդեն տասը տարուց ավելի է, որ ընդգրկվել է հեղափոխական շարժման ոլորտը...» (տե՛ս «Պատմաբանասիրական հանդես», № 3—4, 1959 թ.)։

Այնուհետև նա համառոտակի շարադրում է հայ ժողովրդի անցած ուղին, պատմում նրա սոցիալ-տնտեսական ու քաղաքական դրության մասին։

Ֆ. Էնգելսը 1894 թվականի նոյեմբերի 23-ին Հ. Աթաբեկյանցին պատասխանում է նամակով, շնորհակալություն հայտնում Մանիֆեստի հայերեն թարգմանության համար և նշում, որ չի կարող առաջաբան գրել, բայց, օգտվելով առիթից, արտահայտում է իր դրական վերաբերմունքը հայ ժողովրդի ազգային-քաղաքական ազատագրման գաղափարին, որը և դարասկզբին ուղենիշ դարձավ հայ հեղափոխական մարքսիստների սկզբունքային վարքագծի մշակման համար (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс, Соч., II изд., т. 39, стр, 270—271)։

Հ. Աթաբեկյանցի նամակը Ֆ. Էնգելսին է ներկայացրել Կարլ Կաուցկին և ոչ թե Կարլ Լիբկնեխտը, ինչպես կարծում են ոմանք։ «Թանկագին գեներալ (Ֆ. Էնգելսին այդպես էին կոչում) Աթաբեկյանցը հայտնի է ինձ իբրև յուրջ և ջանասեր ընկեր, թերևս այդքանն էլ բավական է։ Նրա նամակը համենայնդեպս, ինքն իսկ խոսում է իր մասին։

Լավագույն ողջույններով՝

Քո Կարլ»։

1893—1895 թվականներին հայերեն լեզվով թարգմանվում և հրատարակվում են Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական կուսակցության մանիֆեստի երկու գլուխները, Կ. Մարքսի Ի՞նչ է աշխատանքի վարձը, Ֆ. Էնգելսի Գիտական սոցիալիզմը, Ֆ. Լասսալի Սահմանադրության էությունը, Ա. Դիկշտեյնի Ով ինչով է ապրում, Պ. Լաֆարգի Իրավունք ծուլանալու և ուրիշ այլ գրքեր։



Կոմունիստական մանիֆեստի առաջին երկու գլուխները Մարո և Ավետիս Նազարբեկյանների թարգմանությամբ հրատարակվել են 1894 թվականին Ժնևի «Գաղափար» հանդեսի հունիս-սեպտեմբերյան համարներում։

Մանիֆեստի թարգմանության առթիվ «Գաղափար»-ը ծանոթագրել էր. «Կոմունական (համայնական) կուսակցության մանիֆեստը (հայտարարությունը) Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի մյուս գրվածքների հետ միասին դեռ 1848 թ., որ հիմք դրեց գիտական սոցիալիզմին՝ տնտեսական ու սոցիալիստական գրականության ամենանշանավոր փառքերից մեկն է։ Այդ Մանիֆեստի հրատարակությամբ սկսվեց գիտության խորին քննադատությունը նախկին և ներկա տնտեսական-հասարակական կարգերի մասին»։

Եվրոպայում սովորող հայ ուսանողների ջանքերով թարգմանվում և հրատարակվում են սոցիալիստական բովանդակությամբ առանձին գործեր։ Դրանց մեծ մասը կրում էր Սոցիալիստական գրադարան ընդհանուր խորագիրը։ Ավ. Նազարբեկյանի թարգմանությամբ հրատարակվեց Կ. Մարքսի Վարձու աշխատանք և կապիտալ աշխատության մի գլուխը։

«Մարքսիզմը, սոցիալիստական շարժումը,— ասված է հայերեն հրատարակության «Առաջաբան»-ում,— բոլոր քաղաքակրթված երկրներում այլևս դարձել է այն կենտրոնակետը, որի վրա է պտտվում և չափվում հասարակական կյանքն ու տերությունների քաղաքականությունը»։

1894 թվականին Վիեննայում հայերեն լեզվով լույս է տեսնում Ֆ. Էնգելսի Գիտական սոցիալիզմ աշխատությունը։ Դա հեղինակի Անտի-Դյուրինգ երկի երրորդ՝ սոցիալիզմ բաժինն է որոշ փոփոխությունների ենթարկված, ըստ էության, դա Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն երկն է, առանց առաջաբանների։ Ավետիս Նազարբեկյանը անձամբ ծանոթ էր Ֆ. Էնգելսին և օգտվել է նրա գրադարանից։

Մանիֆեստի հայերեն հրատարակությանը Ֆ. Էնգելսը անդրադարձել է նաև 1894 թ. դեկտեմբերի 29-ին Կ. Մարքսի դստեր՝ Լաուրա Լաֆարգին գրած նամակում։ «Ես հենց նոր ստացա (Մանիֆեստի) հայերեն թարգմանությունը»,— գրել է Ֆ. Էնգելսը (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 39, стр. 291)։

Մեր ուսումնասիրությունները բերել են այն եզրակացության, որ դա Ավետիս և Մարո Նազարբեկյանների թարգմանությունն է։ Նրանք են այն ներկայացրել են Էնգելսին՝ «Առաջաբան» ստանալու ակնկալությամբ։ Ի դեպ, միջանկյալ նշենք, որ «Պրոլետարիատի կռիվը» թերթը իր առաջին համարում (1903 թ.) հրապարակել է Էնգելսի 1894 թ. նոյեմբերի 23-ի նամակը և Հ. Աթաբեկյանցի փոխարեն նշել է Ավետիս Նազարբեկյանի անունը։ Հավանական է Ֆ. Էնգելսը Ա. Նազարբեկյանին ևս պատասխան նամակ է գրել։ Այս հանգամանքը կարոտ է ուսումնասիրության։ ՌՍԴԲԿ Կովկասյան կոմիտեն 1903-ին որոշել էր «Պրոլետարիատի կռիվը» թերթը հրատարակել արտասահմանում, Ա. Նազարբեկյանի խմբագրությամբ, Վ. Ի. Լենինի հսկողությամբ։ Նազարբեկյանը համագործակցում էր բոլշևիկներին։

Երկու դարաշրջանների սահմանագլխին, 1895 թվականի օգոստոսի 5-ին, Լոնդոնում վախճանվեց Ֆ. Էնգելսը։ Նա կտակել էր իր մարմինը դիակիզել, իսկ փոշին հանձնել ծովի ալիքներին։ Հասել էր այդ ծանր պահը։ Միջազգային բանվոր դասակարգի առաջատար գնդերի ներկայացուցիչները հավաքվել էին Լոնդոն։ Նրանք ծաղկեպսակներ դրեցին Ֆ. Էնգելսի աճյունին։ Գերմանիայի, Ավստրիայի, Անգլիայի, Ռուսաստանի, Ֆրանսիայի և այլ երկրների պրոլետարիատի անունից դրված ծաղկեպսակների հետ միասին, Ֆ. Էնգելսի աճյունին ծաղկեպսակ դրեցին Ավետիս և Մարո Նազարբեկյանները՝ «Հայաստանից» մակագրությամբ, դրանով իսկ արտահայտելով հայ ժողովրդի երախտագիտությունը կոմունիզմի մեծ տեսաբանի նկատմամբ։ Ա. Նազարբեկյանը ծանոթ էր Ֆ. Էնգելսին։ Օգոստոսին հայերեն լեզվով լույս տեսավ Ֆրիդրիխ Էնգելս բրոշյուրը, հեղինակը Ռ. Ոսկանյանցն է, որը աշխատակցել է «Հայ բանվոր հեղափոխական ասոցիացիայի» տպագիր օրգաններին։ Այսպես, «Նամակ Էրզրումից» (իրականում՝ Փարիզից) հոդվածում գրել է. «Հայ բանվոր եղբայրնե՛ր, սոցիալիզմի գործում տնտեսական հարցերից անբաժանելի են քա-

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐԱԶԱՏ ԳՈՐԾԸ

**Պ. Գ. ՍԱՖՅԱՆ**
ՀԿԿ Սովետական շրջկոմի առաջին քարտուղար

*ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ սովետական իշխանության հաղթանակի առաջին իսկ օրից եղել և այսօր էլ մնում է կուսակցության հոգածության առարկան, կարևորագույն խնդիրը։ Կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը հասարակական բարձր կարգապահության հաստատումը և նրա մշտական կատարելագործումը դասում էր կուսակցության ու սովետական պետության համար վճռական հարցերի շարքը։ Սոցիալիստական կարգապահությունը առաջնորդը համարում էր կուսակցության ու ժողովրդի հզոր զենքը նոր հասարակության կառուցման գործում։ Վ. Ի. Լենինն իր աշխատություններում բազմիցս շեշտել է, որ միայն համաժողովրդական կազմակերպվածության ու կարգապահության հիման վրա կարելի է զարգացնել ժողովրդական տնտեսությունը, հասնել երկրի տնտեսական առաջընթացի բարձր աստիճանի։*

*Կոմունիստական շինարարության արդի փուլում, երբ ավելի ու ավելի են աճում արդյունաբերության ու գյուղատնտեսության արտադրության մասշտաբները, արմատավորվում են դրանց կառավարման նոր, առավել արդյունավետ համակարգեր, կարգապահությունը և կազմակերպվածությունը է՛լ ավելի մեծ չափով են դառնում մեր պետության հզորության ամրապնդման, ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման տասնմեկերորդ հնգամյա պլանի հաջող կատարման անհրաժեշտ պայմանը։ Միանգամայն օրինաչափ էր, որ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումը կարգապահության ամրապնդումը համարեց կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը։ «Հարկավոր է,— ասաց Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— վճռական պայքար մղել կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության ամեն տեսակ խախտումների դեմ»։*

*Բնավ էլ գաղտնիք չէ, որ սոցիալիստական կարգապահությունը հանրային արտադրության բազմապատկման, սովետական մարդկանց նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի աճի գրավականն է։ Որքան ամուր է սոցիալիստական կարգապահությունը, այնքան ավելի կազմակերպված ու ներդաշնակ են ընթանում նյութական բարիքների ստեղծման և բաշխման պրոցեսները։ Այսօր մենք բոլորս վկա ենք այն իրողության, թե ինչպես մեր ողջ երկրում կոմունիստական կուսակցությունը սկսում է օրինակելի սոցիալիստական կարգապահության համար շարժման նոր փուլը։*

*Ղեկավարվելով սոցիալիստական կարգապահության վերաբերյալ լենինյան*



*գաղափարներով ու կուսակցության Կենտրոնական Կոմիտեի որոշումներով՝
ՀԿԿ Երևանի կազմակերպության Սովետական շրջկոմը և սկզբնական կուսկազ-
մակերպությունները հասել են որոշակի հաջողությունների։ Նրանք իրենց
պրակտիկ աշխատանքում մշտական ուշադրություն են նվիրում պետական և
կատարողական կարգապահության ամրապնդման հարցերին։ Շատ կուսկազ-
մակերպություններ իրենց կազմակերպչական, քաղաքական և դաստիարակչա-
կան ամենօրյա ակտիվ աշխատանքի շնորհիվ կոլեկտիվներում ապահովել են
գիտակցական կայուն կարգապահություն։*

*Այս ամենը նախադրյալներ է ստեղծում՝ հաջողությամբ լուծելու շրջանի
առջև ծառացած ինչպես տնտեսական, այնպես էլ սոցիալ-կուլտուրական խնդ-
իրները։ Շրջանի աշխատավորական կոլեկտիվները, կուսկազմակերպություն-
ների ղեկավարությամբ մտնելով ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի պատվին
ծավալված սոցիալիստական մրցության մեջ, հաղթող ճանաչվեցին հանրա-
պետությունում և արժանացան ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի,
ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Այդպիսի մրցանակ
շահեց նաև «Հայարդկապ» արտադրամիավորման կոլեկտիվը։ Սոցմրցության
մեջ հաղթող ճանաչվեցին և համապատասխան մինիստրությունների ու արհ-
միութենական ճյուղային կոմիտեների փոխանցիկ դրոշներին արժանացան
նաև կաշվե գալանտերեայի ֆաբրիկայի, «Արագած» արտադրամիավորման,
աղի կոմբինատի և № 42 պրոֆտեխուսումնարանի կոլեկտիվները։*

*Շրջանի աշխատավորական կոլեկտիվները, հաջողությամբ ավարտելով
ընթացիկ հնգամյակի երկրորդ տարին, խանդավառությամբ ձեռնամուխ են
եղել նաև երրորդ՝ առանցքային տարվա առաջադրանքների կատարմանը։ Ըն-
թացիկ տարվա առաջին եռամսյակի իրացման պլանը արդյունաբերական ձեռ-
նարկությունները կատարեցին 101,9, ապրանքային արտադրանքինը՝ 103 տո-
կոսով։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ապրան-
քային արտադրանքի աճը կազմեց 8,8 տոկոս։*

*Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները միահամուռ հավանու-
թյուն տվեցին մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի աշխատավորական
կոլեկտիվների նախաձեռնությանը և որոշել են մոսկվացիների օրինակով շր-
ջանի բոլոր աշխատավորական կոլեկտիվներում հաստատել կուսակցական ու
պետական ամուր կարգապահություն, այն ծառայեցնել տնտեսական ու սո-
ցիալական խնդիրների լուծմանը։ Նրանց համար այսօր գործունեության եկա-
կետը ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներն են, պլենումում
ընկեր Յու. Վ. Անդրոպովի ունեցած ելույթի դրույթները։*

*Այսօր խոսել տնտեսական ու սոցիալ-կուլտուրական հաջողությունների
մասին, շրջանցելով կազմակերպվածության ու կարգապահության, կարգ ու
կանոնի հաստատման հարցերը, նշանակում է անտեսել մեր գործունեության
խիստ կարևոր մի բնագավառ։*

*Կուսակցությունը բացառում է կարգապահության ընդհանրապես որևէ
կարգի խախտում, ինչպիսին էլ դա լինի՝ ֆինանսական, պայմանագրային,
տեխնոլոգիական, կատարողական։ Այդ բոլորը, վերջին հաշվով, հանգեցնում
է կուսակցական ու պետական կարգապահության թուլացման, պետական
օրենքների խախտման, սոցիալիստական համակեցության նորմերի խաթար-
ման, որոնց պատճառով տուժում են պետական գործը, հասարակության շա-
հերը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը դատապարտեց և անընդունելի
համարեց պետական պլանային առաջադրանքների անհիմն ճշգրտումները,
պլանները մի եռամսյակից մի այլ եռամսյակ փոխադրելու պրակտիկան։ Սա-
կայն դեռևս որոշ ձեռնարկությունների ղեկավարներ, փոխանակ պլանային
առաջադրանքները կատարելու համար նպատակային արդյունավետ աշխա-
տանք կազմակերպելու, մոբիլիզացնելու կոլեկտիվի ուժերը, բարձրացնելու
նրա անդամների պատասխանատվությունը, բռնում են դիմադրության թույլ ուղին. ծեծում են մինիստրությունների,
«հիմնավորում» առաջադրանքների կատարման անհնարինությունը և հասնում պլանների իջեցման։ Այդպիսի
հանձնարարված գործի նկատմամբ
գերատեսչությունների ղեկավարների դռները,*

մեթոդների են հաճախ դիմում մեր շրջանի տեխնոլոգիական սարքավորումների արտադրամիավորման, գաջի և մեխանիկական գործարանների տնտեսական ղեկավարներն ու սկզբնական կուսկազմակերպությունները։ Այդպիսի եղանակով, պլանների «ճշգրտման» միջոցով անցյալ տնտեսական տարում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները պակաս թողարկեցին 1,5 միլիոն ռուբլու արտադրանք։

Հայտնի է, որ սոցիալիստական տնտեսավարության պայմաններում մի ձեռնարկության հաջողությունն ուղղակիորեն պայմանավորված է մեկ այլ ձեռնարկության հստակ աշխատանքով։ Փոխադարձ պարտավորությունները կատարելու համար նրանք պայմանագրային հարաբերությունների մեջ են մտնում միմյանց հետ։ Եվ որևէ ձեռնարկության կողմից պայմանագրային պարտավորության ամեն մի խախտում նշանակում է վտանգի տակ դնել պլանների կատարումը մեկ այլ ձեռնարկությունում։ Պետք է խոստովանել, որ մեր շրջանի առանձին ձեռնարկություններում պայմանագրային կարգապահության խախտումները սովորական երևույթ են դարձել։ Պայմանագրային պարտավորություններն անտեսելու և ցածրորակ արտադրանք թողարկելու համար տեխնոլոգիական սարքավորումների գործարանը, օրինակ, 1982 թ. վճարել է 115 հազար ռուբլու տուգանք։ Նման տուգանքները վճարվում են ձեռնարկությունների կոլեկտիվների հաշվին, դրանք բնավ չեն շոշափում կամ անուղղակիորեն են շոշափում իրենց գործում թերացող ղեկավարների անձնական շահերը։ Սոցիալիստական տնտեսավարության շահերը պահանջում են, որպեսզի, պայմանագրային պարտավորությունների խախտումների համար, իրավական պատասխանատվության հետ միասին շոշափվեն նաև այդ գործում մեղավոր մարդկանց նյութական շահերը։

Կուսակցական ու պետական կարգապահությունն իր արտահայտման ամենաբարձր դրսևորումը գտնում է կատարողական կարգապահության մեջ, այն բանում, թե ինչպես է ապահովվում կուսակցական, սովետական, վերադաս մարմինների որոշումների կատարումը։ Մեր շրջանում բազմաթիվ են այն աշխատավորական կոլեկտիվները, կուսակցական կազմակերպությունները, որոնք հետևողականորեն և ժամանակին կենսագործում են կուսակցական, սովետական, վերադաս մարմինների որոշումները, հաջողությամբ են լուծում իրենց առջև ծառացած տնտեսական առաջընթացի և սոցիալական զարգացման ու մարդկանց դաստիարակության խնդիրները։ Սակայն քիչ չեն փաստերը, երբ ժողովրդատնտեսական և սոցիալական հույժ կարևորության առանձին որոշումներ չեն կատարվում տնտեսական ղեկավարների և սկզբնական կուսկազմակերպությունների անպատասխանատվության պատճառով։

Կուսակցությունը և կառավարությունը մեծ հոգատարություն են հանդես բերում ժողովրդական սպառման ապրանքներով աշխատավորության պահանջմունքները բավարարելու նկատմամբ։ Դեռևս 1979 թ. դեկտեմբերին այդ հարցի վերաբերյալ ընդունվել է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը, 1980 թ. մարտին համանման որոշում է ընդունել նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմը։ Կենտկոմի որոշմանը հաջորդել են քաղաքային, շրջանային կոմիտեների, ապա և՝ սկզբնական կուսկազմակերպությունների որոշումները։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հրապարակումից արդեն անցել է երեք տարի, որը բավարար ժամանակ է այն կատարելու համար։ Ինչպե՞ս է կենսագործվել այդ որոշումը մեր շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում։ Կարելի է խոստովանել՝ ոչ բավարար։ Այսօրվա դրությամբ շրջանի 25 արդյունաբերական ձեռնարկություններից ժողովրդական սպառման ապրանքներ են թողարկում միայն տասնմեկը, այն էլ՝ փոքր քանակությամբ։ Մինչդեռ վերադաս կուսակցական մարմինների հանձնարարությամբ արդյունաբերական ձեռնարկությունները լայն սպառման առարկաների արտադրության ծավալը դրամական արտահայտությամբ պետք է հասցնեն իրենց աշխատավարձի ֆոնդի չափին։ Սակայն այն այսօր դրա 50 տոկոսից չի անցնում, իսկ միութենական ենթակայության ձեռնարկություններում կազմում է ընդամենը 10,3 տոկոս։ Շրջանի արդյունաբերական ձեռնարկություններից ժողովրդական սպառման առարկաներ չեն արտադրում սպորտային իրերի ու աղի



կոմբինատները, «Հայրուժտեխնիկա» գործարանը և այլ ձեռնարկություններ։ Նրանք բավարարվել են այդ որոշումները քննարկելով և դրանց հավանություն տալով։ Մինչդեռ վերադաս կուսակցական, սովետական մարմինների որոշումներին միայն պասսիվ հավանություն տալը, դրանց կատարման համար գործնական քայլեր չանելը ինքնին նշանակում է չենթարկվել այդ մարմիններին, չհարգել կարգապահությունը։ Այդ վարքագիծը միայն վնասում է տվյալ կազմակերպությանը կամ հիմնարկ-ձեռնարկությանը, բացասաբար անդրադառնում գործերի վիճակի և իրենց իսկ՝ հեղինակության վրա։ Մինչդեռ հակառակ պարագայում կարող են շահել և՛ ընդհանուր գործը, և՛ ղեկավարի հեղինակությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը կուսակցական մարմինների և կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ ուժեղացնել պատասխանատվությունը համապետական, համաժողովրդական շահերի պահպանման համար, վճռականապես արմատախիլ անել գերատեսչականությունն ու տեղայնությունը։ Այդ գործում անչափ կարևորվեց որոշումների դերը։ «Հարկավոր է,— ասաց ընկեր Անդրոպովը,— կանոն դարձնել, որ միևնույն հարցի վերաբերյալ ամեն մի նոր որոշում ընդունվի միայն այն ժամանակ, երբ կատարվել են անցյալ որոշումները կամ երևան են եկել ինչ-որ նոր հանգամանքներ»։

Ցավոք, մեր շրջանում ևս կան առանձին կուսկազմակերպություններ, տնտեսական ղեկավարներ, որոնք հետևողականություն չեն դրսևորում այս կամ այն հարցի վերաբերյալ վերադաս մարմինների որոշումների կատարման գործում։

Դեռևս 1979 թ. օգոստոսին շրջկոմի բյուրոն քննարկեց աշխատանքի կազմակերպման ասպարեզում № 6 ավտոձեռնարկության սկզբնական կուսկազմակերպության գործունեության վերաբերյալ հարցը և ավտոձեռնարկության աշխատանքում տեղ գտած թերությունների, հավելագրումների ու այլ խախտումների, ինչպես նաև կուսշրջկոմի համապատասխան որոշումներն անտեսելու համար աշխատանքից ազատեց ձեռնարկության դիրեկտորին և կուսկազմակերպության քարտուղարին։ Նոր դիրեկտոր նշանակվեց Լ. Մնացականովը, որը նախկին աշխատանքում՝ նույնպես ավտոձեռնարկության դիրեկտորի պոստում, իրեն արդարացրել էր։ Իր նոր պարտականություններին անցնելուց հետո նրա ուշադրությունը հրավիրեցինք հատկապես հավելագրումների վերացման վրա, պահանջեցինք ամեն ինչ անել շրջկոմի բյուրոյի որոշումը կատարելու համար։ Երկու տարի անց բյուրոն անդրադարձավ իր որոշման կատարման ընթացքին։ Հարցի քննարկումը, սակայն, ցույց տվեց, որ այդ ասպարեզում միայն աննշան քայլեր են արվել։ Ձեռնարկությունում տիրող աննորմալ վիճակի համար կուսակցական պատասխանատվության ենթարկվեցին և՛ Լ. Մնացականովը, և՛ կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Մ. Սահակյանը։ Ձեռնարկությունում այսօր էլ ցածր է կարգապահությունը, նախկինի նման շարունակվում են հավելագրումները։ Ըստ մոտավոր հաշվարկների, հավելագրումներն այստեղ անցյալ տարի կազմել են 6,6 տոկոս կամ հավելագրվել է մոտ մեկ միլիոն տոննա բեռ։ Անշուշտ, նման վիճակը հանդուրժել չի կարելի։

Սոցիալիստական կարգապահության ամրապնդման գործում կուսակցությունը վճռական դեր է վերապահում աշխատավորական կոլեկտիվներին։ Պատահական չէ, որ Մոսկվայի ձեռնարկությունները բարձր կարգապահության հասնելու իրենց նախաձեռնության իրագործումը որոշեցին սկսել հենց աշխատանքային կոլեկտիվներից։ Փորձը ցույց է տալիս, որ այն կոլեկտիվներում, որտեղ հաստատված են բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, սկզբունքային հարաբերություններ, այնտեղ ամուր է աշխատանքային ու արտադրական, կուսակցական և պետական կարգապահությունը, հաջողությամբ են կատարվում պետական առաջադրանքները։ Մեր շրջանի մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ դեռևս չեն հասել այն բանին, որպեսզի աշխատավորական կոլեկտիվներում ճիշտ զուգակցվի անձնական և կոլեկտիվ պատասխանատվությունը, որպեսզի կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ և կոլեկտիվն ամբողջությամբ վերցրած բարձր պատասխանատվությամբ վերաբերվեն գոր-

ծերի վիճակին, անհատական և կոլեկտիվ ուժերով պայքարեն թերությունների վերացման համար։

Կարգապահությունը կուսակցության արդի պահանջների մակարդակին բարձրացնելու համար մենք պետք է այն ամրապնդենք ամեն մի հիմնարկությունում ու ձեռնարկությունում, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի համակենք գիտակցական վերաբերմունքով աշխատանքի և հանրային ունեցվածքի նկատմամբ։ Կարգապահությունը տարողունակ հասկացություն է. այն սկսվում է ժամանակին գործի ներկայանալուց, սոցիալիստական համակեցության նորմերը հարգելուց մինչև մարդու ուժերն ու կարողությունները գիտակցորեն ընդհանուր գործին նվիրաբերելու պատրաստակամությունը։ Ամեն տարի շրջանի արդյունաբերական ձեռնարկություններից և շինարարական կազմակերպություններից շուրջ վեց հազար մարդ կամ բանվորների 47 տոկոսը գտնվում է աշխատանքի ընդունման կամ աշխատանքից ազատվելու հոսքի մեջ։ Աշխատող ձեռքի մեծ հոսունություն գոյություն ունի կաբելի փորձարարական, հացի № 4 գործարաններում, պրոթեզաօրթոպեդիկ ձեռնարկությունում։ Վիճակն ավելի վատ է շինարարական կազմակերպություններում։ 1982 թ. նրանք աշխատանքի են ընդունել 1.070 և աշխատանքից ազատել 1.180 մարդ կամ աշխատողների ընդհանուր թվի 78,4 տոկոսը։

Շրջանի հիմնարկ-ձեռնարկություններում նկատվող աշխատանքային կարգապահության ամենակոպիտ խախտումները, որոնք պետք է մտահոգեն կուսկազմակերպություններին, վերաբերում են աշխատաժամանակի անհարգելի կորուստների շարունակ մեծացող թվին։ Անցյալ տարի գործալքումների հետևանքով արդյունաբերության յուրաքանչյուր չորս աշխատողից մեկն առանց թույլտվության ամեն օր աշխատանքի չի ներկայացել։ Տարեցտարի ավելանում են նաև հիվանդությունների պատճառով աշխատանքից բացակայությունները, ընդ որում աշխատողների զգալի մասը պարզապես անաշխատունակության թերթիկներ է ներկայացնում։ Շրջանի պոլիկլինիկաների որոշ բժիշկներ, կոպտորեն չարաշահելով իրենց տրված իրավունքները, հաճախ անաշխատունակության թերթիկներ են տալիս միանգամայն առողջ, աշխատունակ մարդկանց։ Եվ ահա հետևանքը. արդյունաբերական ձեռնարկություններում 1982 թ., նախորդ տարվա համեմատությամբ, աշխատանքից հիվանդությունների պատճառով բացակայություններն ավելացել են 3,6 տոկոսով կամ դրանք կազմել են 114 հազար մարդ-օր։ Իսկ այդ նշանակում է, որ գործարաններն ու ֆաբրիկաները տասն օր չեն աշխատել, արտադրանք չեն թողարկել։ Հիվանդությունների պատճառով աշխատանքից բացակայությունները հատկապես շատ են «Ալմաստ», «Արդկապ» գործարաններում, կաշվե գալանտերեայի ֆաբրիկայում։ «Ալմաստ» գործարանում այն կազմել է մոտ 12 հազար, կաշվե գալանտերեայի ֆաբրիկայում՝ 11 հազար մարդ-օր։ Այս առումով վիճակը վատ է նաև դպրոցներում։ Անցյալ ուսումնական տարում ուսուցիչների ներկայացրած անաշխատունակության թերթիկներով բացակայությունները կազմել են 41 հազար դասաժամ։

Սոցիալիստական կարգապահության ամրապնդման գործում, որքան էլ անհրաժեշտ է ժամանակին աշխատանքի ներկայանալու հարցը, բայց ամենից կարևորը և որոշիչը, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովը Մոսկվայի Ս. Օրջոնիկիձեի անվան հաստոցաշինական գործարանի բանվորների հետ ունեցած զրույցում, աշխատանքի արտադրողականության աճի ապահովումն է, հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը, մարդու գործունեության վերջնարդյունքը, այն, թե աշխատանքային 7—8 ժամվա ընթացքում նա ինչպես է աշխատում, ինչ արժեք է ստեղծում։ Վերցնենք մեր շրջանի մի քանի համանման և հավասար պայմաններ ունեցող ձեռնարկություններ և համեմատենք նրանց բանվորների աշխատանքի արդյունավետության ցուցանիշները։ Օրինակ՝ հացի №№ 4 և 5 գործարանները։ Դրանք ունեն համարյա հավասար պայմաններ, մինչդեռ 1982 թ. առաջինում մեկ բանվորը թողարկել է 15.500 ռուբլու, իսկ երկրորդում՝ 16.100 ռուբլու արտադրանք։ Կամ բաղդատենք երկու շինարարական կազմակերպություն։ Հանրապետության պտղաբանջարեղենի տնտեսության մինիս-



տրության շինմոնտաժման վարչության մեկ շինարարը նույն 1982 թ. կատարել է 6.000 ռուբլու աշխատանք, իսկ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության նույնատիպ վարչությունում՝ 9.700 ռուբլու կամ 3.700 ռուբլով ավելի աշխատանք։

Սոցիալիստական կարգապահության ամրապնդման գործում կուսակցությունը բարոյական բարձր պահանջներ է ներկայացնում հատկապես կոմունիստներին ու կոմերիտականներին։ Այդ պահանջները, սակայն, ոչ բոլոր կոմունիստներն ու կոմերիտականներն են սրբությամբ կատարում։ Քիչ չեն դեպքերը, երբ առանձին կոմունիստներ ոչ միայն օրինակ չեն ծառայում, այլ իրենք են խախտում կարգապահությունը։ Շրջանի սկզբնական կուսկազմակերպություններին պետք է անհանգստացնի այն փաստը, որ նման խախտումներ կատարող կոմունիստների թիվը ոչ միայն չի նվազում, այլև ավելանում է։ Այսպես, եթե 1980 թ. տարբեր խախտումների համար ՍՄԿԿ շարքերից հեռացվել են 17 կոմունիստներ, ապա 1982 թ. այդ թիվը հասել է 32-ի։ Եվ վատն այն է, որ նրանք ՍՄԿԿ շարքերից հեռացվել են ոչ թե առանձին մանր զանցանքների, այլ հանցագործություններ կատարելու և քրեական պատասխանատվության ենթարկվելու համար։ Տեխսարքավորումների գործարանից Ս. Հարությունյանը ՍՄԿԿ շարքերից հեռացվել է գողության, Ս. Հովհաննիսյանը՝ հարբեցողության և խուլիգանության, «Հայթունելշինի» վարչությունից Ս. Արևյանը՝ սպեկուլյացիայի, Ս. Պողոսյանը՝ նյութական միջոցների պակասորդ տալու համար։

Պետք է դատապարտել այն սխալ պրակտիկան, երբ շրջանի որոշ սկզբնական կուսկազմակերպություններում խախտումներ կատարող կոմունիստների նկատմամբ հանդես է բերվում անհարկի ներողամտություն։ Պատահում է, որ նույն զանցանքների համար անկուսակցականներն ավելի խիստ են պատժվում, քան կոմունիստները։ Այդպիսի մոտեցումը պետք է խստագույնս դատապարտվի։ Դեռևս 1922 թ. քաղբյուրոյին գրած նամակում Վ. Ի. Լենինը առաջարկում էր խիստ նկատողություն հայտարարել Մոսկվայի կոմիտեին՝ կոմունիստների նկատմամբ ներողամտություն ցուցաբերելու համար։ Նա պահանջում էր արդարադատության ժողկոմատից, որ դատարանները պարտավոր են կոմունիստներին ավելի խիստ պատժել, քան ոչ կոմունիստներին։ Մեծ առաջնորդի այս հարցադրումը այսօր էլ իր հրատապությունը չի կորցրել, այն հնչում է որպես օրվա պահանջ։

Հայտնի է, որ սոցիալիստական կարգապահության էությունն ու ուժը աշխատավորական մասսաների գիտակցականության մեջ են, այն բանում, որ մասսաներն ամեն ինչ գիտեն և ամեն ինչին գնում են գիտակցորեն։ Մեր երկրի վիթխարի նվաճումները, հասարակական, քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած աննախադեպ հաջողություններն արդյունք են աշխատավորական մասսաների գիտակից գործունեության, քաղաքացիական պարտականությունների բարեխիղճ կատարման։ Բայց իրողություն է նաև այն, որ մեզանում քիչ չեն մարդիկ, որոնք իրենց պարտականությունները վատ են կատարում, հասարակությանը չեն տալիս այն, ինչի ունակ են։

Սոցիալիստական կարգապահության ամրապնդման գործում անչափ կարևոր է օրինակի ուժը, հատկապես, եթե այդ օրինակը տալիս է պատասխանատու աշխատողը, կոլեկտիվի ղեկավարը։ Շարքային աշխատողի օրինակելի կարգապահությունն սկսվում է ղեկավարի բարձր կազմակերպվածությունից և պատասխանատվությունից։ Ղեկավարի օրինակը վարակիչ է և օժտված է ներգործության հզոր ուժով։ Ընդ որում դա վերաբերում է ոչ միայն դրական օրինակին։ Ղեկավարի ամեն մի սխալը, ոչ ճիշտ քայլը ավելի շատ բացասական ազդեցություն է ունենում շրջապատի, կոլեկտիվի անդամների վրա։ Վ. Ի. Լենինը 1918 թ. ապրիլին Արխանգելսկի նահանգային գործկոմի նախագահին հղած հեռագրում իր զայրույթն էր հայտնում նրա կողմից սովետական կենտրոնական իշխանության կարգադրությունը չկատարելու կապակցությամբ։ Եթե մենք բարեխղճորեն կարգապահություն ենք սովորեցնում բանվորներին ու գյուղացիներին, նշում էր Վլադիմիր Իլյիչը, ապա մենք պարտավոր ենք սկսել հենց մեզնից։ Ինչ կարելի է ասել, օրինակ, կաբելային արդյունաբե-

բության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի բաժանմունքի փորձարարական գործարանի դիրեկտոր Ի. Աղամյանի մասին։ Լինելով կոլեկտիվի ղեկավար՝ նա ոչ միայն կարգ ու կանոնի պաշտպան չի դարձել, կարգապահության օրինակ չի ծառայել, այլև ինքն է իր ենթականերին և կոլեկտիվի անդամներին անկարգապահության օրինակներ ցույց տվել։ Երբ պետք է եղել, նա հաշվետվություններում իր ղեկավարած ձեռնարկության պլանների բարձր կատարողական է ցույց տվել, իսկ երբ անհրաժեշտ չի եղել, պակաս է ցույց տվել։ Ղեկավարի այդպիսի գործելակերպը, աչքակապության նրա «դասերը» ի՞նչ ազդեցություն կարող են ունենալ կոլեկտիվի անդամների վրա։ Իհարկե, միայն բացասական։ Կամ № 159 դպրոցի դիրեկտոր Բ. Արարատյանի մասին։ Նա համեստ, չափավորված մարդու համարում ունի։ Բայց այդ նույն մարդը աշխատանքային գործունեության ընթացքում խախտումներ է կատարում։ Մանկավարժների միջև դասաժամերի բաշխման ժամանակ հանդես է բերում սուբյեկտիվ մոտեցում։ Քմահաճ ձևով է վարվում տեխնիկական աշխատողների հաստիքների հետ։ Հասարակական սննդի № 7 միավորման դիրեկտոր Լ. Մաղաքյանը, իմանալով հանդերձ, որ ոմն Յու. Ամիրխանյան չարաշահումների համար մի քանի անգամ պատասխանատվության է ենթարկվել, անգամ դատապարտվել է բանտարկության, այնուամենայնիվ, նրան նշանակել է նյութական պատասխանատու գործի։ Վերջինս, իր էությանը հավատարիմ, նշանակման հենց առաջին օրից սկսել է նոր խախտումներ կատարել։

Հիրավի, ամեն ինչում և ամեն տեղ կուսակցական, պետական ու կատարողական կարգապահության պահպանության գործում ղեկավարը պետք է օրինակ հանդիսանա։ Ղեկավարի պատիվն ու կոչումը իր ձեռքում է, և նա պետք է այն թանկ գնահատի։ Յուրաքանչյուր ղեկավար պետք է հաշիվ տա իր ամեն մի քայլի համար, քաղաքական գնահատական տա իր գործունեությանը, որովհետև կոլեկտիվի անդամը, շարքային աշխատողը ի դեմս հիմնարկ-ձեռնարկության ղեկավարի տեսնում է կուսակցության և սովետական պետության ներկայացուցչին, մեր օրենքների ու կյանքի նորմերի պահապանին։

Շրջանում կուսակցական, պետական, կատարողական ամուր կարգապահության ապահովումը, վերջին հաշվով, պայմանավորված է կուսակցական, սովետական և շրջանային մյուս մարմինների ճիշտ ու ակտիվ գործունեությամբ, այն բանով, թե նրանք որքան հետևողական են իրենց գործողությունների մեջ, այդ նպատակով ինչպիսի կոմպլեքսային միջոցառումներ են իրականացնում։ Պետք է խոստովանել, որ կուսշրջկոմը կուսակցական և պետական անհրաժեշտ կարգապահություն հաստատելու գործում միշտ չէ, որ բավարար հետևողականություն և սկզբունքայնություն է հանդես բերում։ Դեռևս ցածր է պահանջկոտությունը կադրերի նկատմամբ։ Կարգապահությունը ամրապնդելու գործում շրջանային կոմիտեի աշխատանքում բացակայում է կոմպլեքսային մոտեցումը։ Այս հարցում անբավարար ենք օգտագործում աշխատավորական կոլեկտիվների ուժերն ու հնարավորությունները, հասարակական կարծիքի վիթխարի ուժը։

«Մեզ անհրաժեշտ է համառ ու հետևողական աշխատանք ծավալել ամենուրեք կուսակցական, պետական ու կատարողական կարգապահության ամրապնդման ասպարեզում, հասնել այն բանին, որ մեր կուսակցության ու կառավարության դիրեկտիվները, սեփական որոշումները կատարվեն ժամանակին և անթերի»,— նշեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում։ Կարգապահություն ամենուր և ամեն ինչում, բարձր պատասխանատվություն— ահա կուսակցական կազմակերպությունների հասունության չափանիշը։ Երկրում ամենուրեք պայքար է ծավալվել ամուր կարգապահության համար։ Այդ պայքարը գլխավորում են սկզբնական կուսկազմակերպությունները՝ աշխատանքային կոլեկտիվների առաջատար ուժը։ Եվ նրանց գործունեության բարձր որակով ու մակարդակով է պայմանավորված այդ պայքարի արդյունավետությունը։

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՈՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԻ ԲԱՐԵԼԱՎՈՒՄԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Ա. Ս. ՍԱՐԳՍՅԱՆ

ԱՅՍ ՏԱՐԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ, մեր երկրի բոլոր աշխատավորները հանդիսավորությամբ նշում են ՌՍԴԲԿ II համագումարի 80-ամյակը։ Պատմական այդ համագումարից սկիզբ առավ բոլշևիզմը՝ քաղաքական մտքի նոր հոսանքը, պրոլետարիատի քաղաքական նոր կազմակերպությունը։ Դասակարգային պայքարի ասպարեզում հայտնվեց նոր տիպի կուսակցություն, որը բնութագրվում է դեպի հասարակության վիթխարի հեղաբեկումները տանող նպատակի հստակությամբ, գաղափարական և կազմակերպական աննախադեպ միասնությամբ, հասարակական օրինաչափությունները չափակշռող հեղափոխական կուռ տեսությամբ։

ՌՍԴԲԿ II համագումարը կուսակցությանը զինեց գործուն ծրագրով, որտեղ հստակորեն շեշտվում էր կուսակցության ղեկավար դերի հարցը ապագա հասարակարգի համար մղվող պայքարում։ Կուսակցության անցած ամբողջ ուղին այդ պատմական առաքելությունը պատվով կատարելու վառ վկայությունն է։ «Իր բոլոր նվաճումները,— ասված է «ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— մեր ժողովուրդն իրավամբ կապում է ՍՄԿԿ-ի բազմաբեղուն գործունեության հետ, որը սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է, նրա քաղաքական սիստեմի միջուկը»։

ՌՍԴԲԿ II համագումարի քննարկած արմատական հարցերից մեկը կուսակցության անդամության հարցն էր, որը կարևորվել է նրա ութսունամյա ողջ գործունեության ընթացքում։

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, «Կոմունիստների միության կանոնադրության» մեջ, ի մի բերելով կուսակցության անդամության հարցերի վերաբերյալ իրենց տեսակետները, գրում էին, որ «Միության» անդամ կարող է լինել նա, ով իր ամբողջ կյանքի օրինակով ապացուցել է նվիրվածությունը կոմունիզմի գաղափարներին, պայքարել դրանց իրագործման համար և ենթարկվել կարգապահությանը։ Ընդսմին, բացառելով ինքնագրանցումը, նրանք անդամության պարտադիր պայմանն էին համարում ընդունելությունը։

Վ. Ի. Լենինը, զարգացնելով մարքսիզմի դրույթները, հանգամանորեն մշակեց կուսակցության անդամության սկզբունքներն ու նրա շարքերն ընդունվելու պայմանները։ Առաջնորդը ելնում էր այն իրողությունից, որ ոչ թե թվաքանակը, այլ առաջին հերթին որակական կազմը, շարքերի ամրությունն ու անաղարտությունն են որոշում կուսակցության ուժն ու մարտունակությունը։ Տակավին ՌՍԴԲԿ II համագումարում, հակահարված տալով կուսակցության դռները անկայուն, պատահական տարրերի առջև լայնորեն բաց անելու ապագա մենշևիկների փորձերին, Լենինն ասում էր. «Մեր խնդիրն է՝ պահպանել մեր կուսակցության ամրությունը, կայունությունն ու մաքրությունը։ Մենք պետք է աշխատենք կուսակցության անդամի կոչումն ու նշանակությունն ավելի, ավելի ու ավելի բարձրացնել...» (ԵԼԺ, հ. 7, էջ 363—364)։

Երբ կուսակցությունը դարձավ աշխարհում առաջին սոցիալիստական հասարակության ղեկավար քաղաքական ուժը, Լենինը բազմապատկեց իր ուշադրությունն ու հոգատարությունը կուսակցության շարքերի անաղարտության նկատմամբ, պահանջելով «...զտել կուսակցությունը ժուլիկներից, բյուրոկրատացածներից, անազնիվներից, անկայուն կոմունիստներից...» (Երկեր, հ. 33, էջ 26)։

Բազմակողմանիորեն հիմնավորելով կուսակցական շարքերի քանակի ու որակի համապատասխանությունը չխախտելու, կուսակցության քանակական աճը մշտապես ու անպայմանորեն որակական բարելավմամբ զուգակցելու անհրաժեշտությունը և իրականացնելով այդ պահանջը՝ հեղափոխության առաջնորդը 1919-ի ահեղ օրերին գրում էր. «Աշխարհում միակ կառավարական կուսակցությունը, որը ո՛չ թե անդամների թվի մեծացման, այլ նրանց որակի բարձրացման, «խցկվածներից» կուսակցությունը զտելու մասին է հոգում, մեր կուսակցությունն է՝ հեղափոխական բանվոր դասակարգի կուսակցությունը» (ԵԼԺ, հ 39, էջ 278)։

Լենինյան այդ նույն սկզբունքը ՍՄԿԿ-ն շարունակում է զարգացնել նաև մեր օրերում։ Կուսակցության շարքերի անաղարտության նկատմամբ հոգատարությունը, կոմունիստի վեհ կոչումը արժանապատվությամբ կրելու և արդարացնելու պահանջը կուսակցական բոլոր կազմակերպությունների կյանքի օրենքըն են։ Կուսակցության գլխավոր խնդիրը եղել ու մնում է իր որակական կազմի բարելավումը։ Այսօր ևս, զարգացած սոցիալիզմի պայմաններում, կուսակցության ղեկավար դերի աճը մեծապես պայմանավորված է նրա շարքերի որակական կազմի բարելավմամբ, կոմունիստների կազմակերպական ու գաղափարատեսական զինվածությամբ, նրանց ներքին համախմբվածությամբ ու աշխատավորական զանգվածների հետ ունեցած սերտ կապով։ Կուսակցության անդամության լենինյան սկզբունքների իրագործումը քաղաքական վիթխարի կարևորություն ունեցող խնդիր է։ Դրան մեր կուսակցությունը մոտեցել ու մոտենում է կոնկրետ-պատմական տեսանկյունից։ Նա հաշվի է առնում երկրի զարգացման յուրաքանչյուր ժամանակաշրջանի սոցիալ-քաղաքական պայմանների առանձնահատկությունները, հասնում այն բանին, որ կուսակցության կազմը հնարավորություն տա նրան՝ լավագույնս իրականացնելու իր ղեկավար և ուղղություն տվող դերը։

ՍՄԿԿ XXVI համագումարը, ելնելով հասարակության և կուսակցության զարգացման ժամանակակից պայմաններից, վերստին շեշտեց, որ գլխավորը կուսակցության աճը նրա շարքերի հետագա որակական բարելավման հետ մշտապես զուգակցելն է։ Դիալեկտիկորեն իրականացնելով այդ խնդիրը՝ կուսակցությունն առաջին հերթին հաշվի է առնում, որ կոմունիզմի ուղիով մեր երկրի առաջընթացին համապատասխան կուսակցության դերն անշեղորեն աճում է, առավել մեծանում են կոմունիստներին ներկայացվող պահանջները՝ նրանց քաղաքական, գործնական և բարոյական հատկանիշների տեսանկյունից։

Երբ խոսքը վերաբերում է կուսակցական շարքերի որակական կազմի բարելավմանը, ապա առաջին հերթին, նկատի է առնվում սոցիալական, ազգային կազմի բարելավումը, կուսակցության մեջ սերունդների հերթագայության ապահովումը, երիտասարդության և կանանց ընդունելությունը, կուսակցության անդամների ու թեկնածուների ընդհանուր կրթական և կուլտուրական մակարդակի բարձրացումը, գաղափարական ամուր կոփվածքը։

Կուսակցության կազմի որակական աճը, նրա շարքերում նոր, թարմ ուժերի մշտական հոսքը համարվում են այն բանի անհրաժեշտ պայմանը, որ կուսակցությունը գործի որպես կենդանի հասարակական-քաղաքական օրգանիզմ։ Այդ մեծապես կանխորոշում է նաև ներկուսակցական կյանքի մակարդակը, կուսակցական շինարարության կարևորագույն պրոբլեմների ճիշտ լուծումը։ Որակական կազմով են պայմանավորված յուրաքանչյուր կոմունիստի ստեղծագործական ակտիվությունը, նրա կողմից իր կազմակերպության ու ամբողջ կուսակցության գործերի համար պատասխանատվության ըմբռնումը, կուսակցության գաղափարական ու կազմակերպական համախմբվածությունն ու միաձուլությունը։ Կուսակցական շարքերի որակական կազմի հետ էր կապում



Վ. Ի. Լենինը նաև նոր հասարակության կառուցման գործում կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերի հաջող իրականացումը։

Կուսակցական շարքերի որակական կազմի բարելավումը անխզելիորեն կապված է մի շարք գործոնների հետ։

Կուսակցության մասին լենինյան ուսմունքը, կուսակցական շինարարության ողջ պրակտիկան վկայում են, որ կուսակցական շարքերի որակական կազմի վրա հսկայական ներգործություն է թողնում նախ և առաջ կուսակցության սոցիալական բազայի վիճակն ու զարգացումը պայմանավորող օբյեկտիվ սոցիալ-տնտեսական և դասակարգային իրադրությունը։ Կուսակցական շարքերի կազմի բարելավումը պայմանավորված է նաև այն կարգավորելու կուսակցության ունակությամբ, ինչպես այդ բարձր կոչմանը արժանի թեկնածուներ ընտրելու կարողությամբ։ Եվ, իհարկե, կոմունիստների գաղափարական կոփվածությամբ, նրանց մարքս-լենինյան դաստիարակության գործի նկատմամբ կուսակցական կազմակերպությունների ունեցած հոգատարությամբ։

Զարգացած սոցիալիստական հասարակությունը բարենպաստ սոցիալ-դասակարգային պայմաններ է ստեղծել կուսակցական շարքերի ամրապնդման և որակական կազմի բարելավման համար։ Դա պայմանավորված է դասակարգերի ու սոցիալական խմբերի կառուցվածքում և փոխհարաբերություններում տեղի ունեցած որակական բնույթի այն տեղաշարժերով, որոնք սոցիալիզմի շինարարության ընթացքում իրականացվել են սովետական հասարակության մեջ և որոնք շարունակվում են կոմունիստական շինարարության արդի փուլում։

Դասակարգային փոխհարաբերությունները մեր երկրում ներկայումս ամբողջությամբ վերցրած իրականացվում են բանվոր դասակարգի սոցիալիստական շահերի և կոմունիստական իդեալների բազայի վրա, սովետական հասարակության միասնության հետագա ամրապնդման պայմաններում։ Անդրադառնալով 70-ական թվականների ընթացքում սովետական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի փոփոխություններին և տալով դրանց խոր ու համակողմանի վերլուծությունը՝ ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց. «70-ական թվականներին շարունակվում էր սովետական հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի մերձեցումը... Մեր նպատակն է ստեղծել մի հասարակություն, որի մեջ չի լինի մարդկանց բաժանում դասակարգերի։ Եվ կարելի է որոշակիորեն ասել. մենք աստիճանաբար, բայց վստահորեն առաջ ենք ընթանում դեպի այդ մեծ նպատակը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 84)։

Սոցիալիզմի կարևորագույն նվաճումներից է սովետական ժողովրդի՝ մարդկանց պատմական նոր հանրության առաջացումը։ Սովետական մարդիկ սերտորեն միավորված են մարքս-լենինյան գաղափարախոսության, կոմունիստական շինարարության վեհ նպատակների ընդհանրությամբ։ Բազմազգ սովետական ժողովուրդն այդ միաձույլ համախմբվածությունը դրսևորում է իր աշխատանքով, կոմունիստական կուսակցության քաղաքականությանը միահամուռ հավանությամբ։ Անշեղորեն աճում է նրանց թիվը, ովքեր ձգտում են լենինյան կուսակցության հետ իրենց կյանքը կապել նաև կազմակերպչորեն, նրա շարքերում պայքարել նոր հասարակարգի կառուցման համար։

Ավելի քան վեց տասնամյակ առաջ, 1922 թվականի նոյեմբերի 20-ին Մոսկվայի սովետի պլենումում արտասանած իր ճառում Վ. Ի. Լենինը պատկերավոր կերպով մեր կուսակցությունը անվանեց հատիկ, մարդկանց փոքրիկ խումբ երկրի ամբողջ բնակչության համեմատությամբ։ «Այս հատիկը,— ասում էր կուսակցության առաջնորդն իր վերջին հրապարակային ելույթում,— իրեն նպատակ է դրել ամեն ինչ վերակերտել, և նա կվերակերտի» (Երկեր, հ. 33, էջ 527)։

Վաղուց անցել են այն ժամանակները, երբ կուսակցությունն ընդամենը «հատիկ» էր երկրի ազգաբնակչության ընդհանուր զանգվածում։ Կուսակցության աճի սոցիալական բազայի ընդլայնումն ու ամրապնդումը սովետական իշխանության տարիներին, հատկապես կոմունիստական շինարարության ծա-

վալման փուլում, բարենպաստ ազդեցություն ունեցավ կուսակցական շարքերի համալրման վրա։ Դա արտահայտվում է նաև Հայաստանի կոմկուսի քանակական աճի մեջ։ Այսպես, 1959 թ. նրա շարքերում ընդգրկված էին 77.072 կոմունիստներ, իսկ 1983 թ. հունվարի 1-ի դրությամբ՝ 173.172 կամ երկու անգամից ավելի։ Նման աճը վկայում է կուսակցության և աշխատավորական զանգվածների կապի ամրության մասին, դա կուսակցությունը բնութագրում է որպես հանրապետության ազգաբնակչության կազմում բարձր տեսակարար կշիռ ունեցող, հասարակության առավել հեղինակավոր, առաջավոր մարդկանց համախմբվածքը ներկայացնող համաժողովրդական քաղաքական կազմակերպություն։

Մեր հասարակության ներկա փուլում, երբ ստեղծվել են նպաստավոր օբյեկտիվ ու սուբյեկտիվ նախադրյալներ կուսակցության շարքերի աննախադեպ աճի համար, առավել բարձր պահանջներ է ներկայացվում կուսակցության կազմին, նրա կազմակերպություններին, յուրաքանչյուր կոմունիստի։ Խոսքը մասնավորապես վերաբերում է կոմունիստներին, որոնց գործունեությունը ծավալվում է այնպիսի ժամանակաշրջանում, երբ անչափ աճել ու բարդացել են կոմունիստական շինարարության խնդիրները, տեղի են ունենում ավելի ու ավելի խոր տնտեսական և սոցիալական վերափոխումներ, բարձր տեմպերով զարգանում է գիտատեխնիկական հեղափոխությունը, առավել բարձրացել են սովետական մարդկանց գիտակցականությունն ու ակտիվությունը։ Այդ պայմաններում, բնականաբար, կոմունիստական իդեալներն իրականացնող մարտիկների առաջին շարքերում կարող են լինել միայն ժողովրդի ամենաառաջավոր, առավել գիտակից և ակտիվ ներկայացուցիչները, կոմունիզմի անձնուրաց կառուցողները։

Սովետական հասարակության ինդուստրիալ առաջընթացն ուղեկցվում է բանվորների թվական աճով։ Ներկայումս երկրում կա շուրջ 80 միլիոն բանվոր, դա կազմում է զբաղված բնակչության երկու երրորդը։ Նշանակում է, այժմ բանվոր դասակարգը մեզանում ոչ միայն ամենաբազմաքանակ դասակարգն է, այլև աշխատավոր ժողովրդի մեծամասնությունը (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 84)։ «Կուսակցությունը միշտ հսկայական ուշադրություն է նվիրել մեր հասարակության առաջատար ուժը կազմող սովետական բանվոր դասակարգի ազգային ջոկատների աճին։ Եվ արդյունքներն առկա են։ Այժմ բանվորները ամենախոշոր սոցիալական խումբն են բոլոր միութենական հանրապետություններում» (Յու. Վ. Անդրոպով, ՍՍՀՄ վաթսուն տարին, «Հայաստան» հրատ. 1983 թ. էջ 14)։ Հայկական ՍՍՀ-ում արդեն 1982 թ. բանվորները կազմում էին հանրապետության աշխատավորների մոտ 70,5 տոկոսը՝ 1940 թվականի 19 տոկոսի դիմաց։ Ընդ որում առավել բարձր տեմպերով է աճել ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների թիվը, որը համապատասխան ժամանակամիջոցում 92,4 հազարից հասել է 869,8 հազարի՝ ավելանալով մոտ 9,4 անգամ։

Բանվոր դասակարգի առաջատար դերի ամրապնդումը անպայմանորեն կապված է նրա գաղափարաքաղաքական հասունության, կրթվածության և պրոֆեսիոնալ որակավորման աճի հետ։ Հետևապես, էական են բանվոր դասակարգի կրած ոչ միայն քանակական, այլև որակական փոփոխությունները։ Եթե 1971 թ. մեր երկրի բանվորների կեսից մի փոքր ավելին ուներ միջնակարգ և բարձրագույն կրթություն, ապա տասը տարի անց՝ երեք քառորդը։ Աճել է բանվորների դասակարգային ինքնագիտակցությունը, բարձրացել նրանց գաղափարական կոփվածությունը, երկրի քաղաքական կյանքում ունեցած առաջատար դերը։ ՍՍՀՄ բանվոր դասակարգը սոցիալական տեսակետից միաձույլ կոլեկտիվ է։ Նա իր գաղափարախոսությամբ ու բարոյախոսությամբ որոշիչ կերպով ներազդում է սովետական հասարակության հոգևոր կերպարի ձևավորման վրա։

Բանվոր դասակարգի կրած վիթխարի քանակական ու որակական փոփոխությունները, սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարի հիմքի վրա նրա համախմբվածությունը հնարավորություն են ընձեռում ՍՄԿԿ-ին՝ զգալիորեն ավելի մեծ մասշտաբներով իր շարքերը համալրելու այդ դասակար-



գից։ Այդ պրոցեսը նկատելի է նաև մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունում։ 1959 թ. բանվորները կազմում էին ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների 30,7 տոկոսը, 1969 թվականին՝ 48,2, իսկ 1979-ին՝ արդեն 63,1 տոկոսը։ 1959—1983 թթ. ընթացքում բանվորների տեսակարար կշիռը Հայաստանի կոմկուսի սոցիալական կազմում 25 տոկոսից հասավ 42,1 տոկոսի։ ՀԿԿ XXVI և XXVII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում կուսակցության անդամության թեկնածու ընդունվածների 61,7 տոկոսը բանվորներ էին։

Առավել մեծ չափով ավելացավ բանվոր-կոմունիստների թիվը Հայաստանի կոմկուսի մի շարք քաղաքային և շրջանային կազմակերպություններում, որոնցում նրանց տոկոսը շատ դեպքերում նկատելիորեն բարձր է հանրապետության միջինից։ Դա բացատրվում է Սովետական Հայաստանի քարտեզի վրա նոր արդյունաբերական կենտրոնների երևան գալով և, դրա հետ կապված, բանվոր դասակարգի նորանոր ջոկատների ձևավորմամբ։ Եթե 1959 թ. ՀԿԿ Հրազդանի շրջանային կազմակերպությունում բանվորները կազմում էին ընդամենը 18,02 տոկոս, ապա 1983 թ. հունվարի 1-ի դրությամբ կազմեցին 50,7 տոկոս, այսինքն՝ շրջանային կազմակերպության ամբողջ կազմի կեսից ավելին։ Նույն ժամանակաշրջանում Աբովյանի շրջանային կազմակերպությունում նրանք 13,08-ից հասան 43,8 տոկոսի։ Ամբողջ հանրապետությունում հայտնի են կոմունիստ-բանվորներ, սոցիալիստական աշխատանքի հերոս, ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ Սուրեն Պետրոսյանի («Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորում), Հայկական ՍՍՀ պետական մրցանակի դափնեկիր Սերգեյ Ավակովի (Ջրհնցավանի գործիքաշինական գործարան), հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Գառնիկ Գևորգյանի («Քաջարանշին» տրեստ) և հարյուրավոր այլ կոմունիստ բանվորների անունները։

Բանվորների թվի, կոմունիստների շարքում նրանց տեսակարար կշռի աճը ՍՄԿԿ զարգացման անշեղ միտումն է, որը միաժամանակ արտացոլում է կուսակցության աճի հիմնական օրինաչափությունը՝ բանվոր դասակարգի վճռական ներգործությունը նրա կազմի ձևավորման վրա։ Այդ օրինաչափությունը կրում է համընդհանուր բնույթ, և գործնականում նրա մարմնավորումը կենսական անհրաժեշտություն է յուրաքանչյուր մարքս-լենինյան կուսակցության համար։

Կուսակցական կազմակերպությունները հոգ են տանում ոչ թե սոսկ բանվորների թվի ավելացման, նրանց տեսակարար կշռի մեծացման համար։ Նրանք գլխավոր ուշադրությունը հատկացնում են այն բանին, որ կուսակցական շարքերի համալրումը տեղի ունենա բանվոր դասակարգի իսկապես ամենաառաջավոր ներկայացուցիչների հաշվին, որոնք իրենց մեջ մարմնավորում են նրա լավագույն հատկանիշները և ընդունակ են նախանձախնդրությամբ կրելու լենինյան կուսակցության անդամի պատվավոր կոչումը։

Կուսակցության շարքերն ընդունվածների մեջ արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, տրանսպորտի առաջատար մասնագիտությունների բանվորների թվի զգալի ավելացումն առանձնապես նկատելի է «Կուսակցության շարքերի ընդունելության, ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության ասպարեզում Կիրգիզիայի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման ընդունումից հետո։ Այսպես, հանրապետության կուսակցական կազմակերպություններում 1979 թ. ընդունված բանվորների 76 տոկոսն աշխատում էր արդյունաբերության, տրանսպորտի, կապի և շինարարության ոլորտում (Տե՛ս Компартия Армении в цифрах и документах, стр 64, ՀԿԿ-ի վերաբերյալ այս և հաջորդ տվյալները վերցված են այդ նույն տեղեկատուից)։

Կուսակցության կազմի վրա բանվոր դասակարգի ներգործության մասշտաբներն ավելի ամբողջական պատկերացնելու համար հարկավոր է նկատի ունենալ նաև այն իրողությունը, որ շատ բանվորներ, ստանալով միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթություն, այնուհետև համալրում են հասարակության մյուս սոցիալական խմբերը։ Այս ամենն ուժեղացնում է բանվոր դասակարգի ազդեցությունը ազգաբնակչության բոլոր շերտերի վրա և

ՍՄԿԿ-ն հատուկ հոգատարություն է ցուցաբերում իր շարքերը կոմերիտմիության կոմունիստական դաստիարակության դպրոցն անցած երիտասարդներով համալրելու գործին։ Դա մեր կուսակցության հիանալի լենինյան ավանդույթն է։

Իր կանոնադրության համաձայն, կուսակցությունը կոմերիտմիությանը (հասարակական կազմակերպություններից միակը) տվել է իր անդամներին կուսակցության շարքերն ընդունվելու համար երաշխավորության իրավունք։ Այժմ կուսակցության մեջ ընդունվողների շուրջ 75 տոկոսը ՀամԼԿԵՄ անդամներ են։ Դա նշանակում է, որ հենց կուսակցության գործունեությունը մեծ չափով կապված է կոմերիտմիության արդյունավետ աշխատանքի հետ։ Կոմերիտականները ներգրավվում են կուսակցության մեջ այն նույն որակներով, որոնք նրանք ձեռք են բերել միության շարքերում։ Կոմերիտմիության նկատմամբ կուսակցության ուշադրությունը դրսևորվում է նաև այն արտոնություններով, որ ինքը տվել է ՀամԼԿԵՄ-ին՝ լինել կուսակցության գլխավոր և անմիջական ռեզերվը։

Դեպի կուսակցություն կատարվող կոմերիտմիության ուժեղացող հոսքը նպաստում է նրա շարքերի երիտասարդացմանը։ 1980 թ. տվյալներով, ՍՄԿԿ շարքերում կային մինչև 30 տարեկան 2,7 միլիոն կոմունիստներ (16,6 տոկոսը)։ ՀԿԿ շարքերում նրանց թիվը կազմում էր 18,1 տոկոս՝ 1966 թ. 15,6 տոկոսի դիմաց։

Կարգավորելով իր շարքերի աճը՝ կոմունիստական կուսակցությունը կարևոր նշանակություն է տալիս հասարակական այնպիսի խմբի առաջավոր ներկայացուցիչների ընտրությանը, ինչպիսիք կանայք են։ Դա պայմանավորված է ոչ միայն այն բանով, որ նրանք կազմում են երկրի ազգաբնակչության կեսից ավելին, այլև սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում ունեցած նրանց խոշոր ներդրումով և խաղացած դերով։ Դեռևս 1918 թ. Վ. Ի. Լենինը նշում էր. «Բոլոր ազատագրական շարժումների փորձից նկատվել է, որ հեղափոխության հաջողությունը կախված է այն բանից, թե որքանով են նրան մասնակցում կանայք» (ԵԼԺ, հ. 37, էջ 226)։ Մեկ տարի անց Վլադիմիր Իլյիչը եզրակացնում էր, որ «Սովետական իշխանության սկսած այդ գործը կարելի է առաջ տանել միայն այն ժամանակ, երբ հարյուրավոր կանանց փոխարեն ամբողջ Ռուսաստանում այդ գործին կմասնակցեն միլիոնավոր և միլիոնավոր կանայք։ Այն ժամանակ սոցիալիստական շինարարության գործը, մենք վստահ ենք, կամրապնդվի» (ԵԼԺ, հ. 39, էջ 255)։

Ռեալ սոցիալիզմի հասարակությունը բազմապատկում է կանանց աշխատանքային և հասարակական ակտիվության աճի հետագա հնարավորությունները։ Յուրացնելով բազմաթիվ մասնագիտություններ՝ նրանք ակտիվորեն մասնակցում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, հասարակական հարաբերությունների կատարելագործմանն ու սովետական մարդկանց դաստիարակության գործին։ ՀԿԿ XXVII համագումարի պատգամավորներից 255-ը կանայք էին։ Նրանց թվում էին արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության աջթևայիններ, գրականության և արվեստի գործիչներ, մանկավարժներ և բժիշկներ, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական աշխատողներ։ Նկատելիորեն ավելացել է կանանց թիվը Հայաստանի կոմկուսի շարքերում (1966 թ. 20.027-ի դիմաց 1983 թ. հունվարի 1-ի դրությամբ 40.166 մարդ կամ ՀԿԿ ամբողջ կազմի 23,2 տոկոսը)։

Այսպիսով, կուսակցության որակական կազմի, նրա նոր համալրման բարելավումը կարևոր ցուցանիշ է այն բանի, որ ՍՄԿԿ-ն, սրբությամբ պահպանելով լենինյան ավանդույթները և լինելով ակտիվորեն գործող քաղաքական օրգանիզմ, զարգանում է միանգամայն առողջ հիմքի վրա։

---



# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՃԻ ՀԱՆԳՈՒՑԱՅԻՆ ՀԱՐՑԵՐԸ

**Մ. Խ. ՉՈԲԱՆՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ զարգանում է միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսը՝ ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկեցության նյութական հիմքը։ Հանրապետություններից յուրաքանչյուրի էկոնոմիկան իր կարևոր տեղն ունի աշխատանքի հասարակական բաժանման համակարգում և ծանրակշիռ ավանդ է ներդնում երկրի ազգային հարստության աճի գործում։ Անշեղորեն ամրապնդվում են տնտեսական կապերը միութենական հանրապետությունների միջև, բարձրանում է աշխատանքի տերիտորիալ բաժանման արդյունավետությունը, զարգանում է աշխատավորների ակտիվությունը համապետական մասշտաբի խնդիրների լուծման գործում։

Ընթացիկ հնգամյակի անցած երկու տարվա արդյունքները վկայում են, որ ՍՄԿԿ XXVI համագումարի մշակած տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը հետևողականորեն կենսագործվում է։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում, այդ տարիներին զգալի են հաջողությունները ժողովրդական տնտեսության վերելքի և բնակչության կենսամակարդակի բարձրացման ասպարեզներում։ Որակական տեղաշարժեր են նկատվում էկոնոմիկայում, որտեղ շեշտը դրվում է ժողովրդական տնտեսության բազային ճյուղերի զարգացման վրա։

Տեխնիկական առաջընթացը որոշող ճյուղերի առավել արագ զարգացման հաշվին կատարելագործվում է արդյունաբերական արտադրության կառուցվածքը։ Աճի բարձր տեմպերի շնորհիվ արդյունաբերության արտադրանքի ծավալում հատկապես ավելանում է մեքենաշինության և մետաղամշակության, քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը։

Հետևողականորեն իրականացվում է կուսակցության ագրարային քաղաքականությունը, որի առանցքը ՍՍՀՄ պարենային ծրագրի իրականացումն է։

Մեր հանրապետության աշխատավորները նույնպես 1981—1982 թթ. նոր հաջողությունների հասան սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում, ապահովեցին ժողովրդական տնտեսության կայուն ու դինամիկ զարգացումը։ Ըստ որում զգալիորեն գերակատարվել են տնտեսական ու սոցիալական զարգացման պլանային ցուցանիշները։ Այսպես, հանրապետության հասարակական համախառն արտադրանքն ավելացավ 11,1 տոկոսով, պլանով նախատեսված 9,8 տոկոսի փոխարեն, ազգային եկամուտն աճեց 12,1 տոկոսով, որը մեկ տոկոսային կետով գերազանցում է հնգամյա պլանով սահմանված առաջադրանքը։

Պլանային ցուցանիշների համեմատությամբ, առաջանցիկ տեմպերով է զարգացել արդյունաբերությունը։ Արտադրանքի ծավալն աճել է 11,5 տոկոսով, պլանային 10,5 տոկոսի դիմաց։ Հանրապետությունում հաջողությամբ է իրականացվում ՀԿԿ XXVII համագումարի առաջադրած՝ աշխատատար, նվազ նյութատար ճյուղերի առաջանցիկ զարգացման կուրսը։ Խոսքն առաջին հերթին վերաբերում է ռադիոտեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերությանը, սարքաշինությանը և հաստոցաշինությանը։

Հետևողականորեն բարելավվում են արտադրության տեխնիկական մակարդակը և արտադրանքի որակը։ Դրա շնորհիվ արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում 32 տոկոսով ավելացել է պետական որականիշ ունեցող արտադրատեսակների արտադրությունը։ Աշխատանքի արտադրողականությունը 1981—1982 թթ. աճել է 6,2 տոկոսով՝ պլանային 4,6-ի փոխարեն։ Գործող ձեռնարկությունների ընդլայնման, վերակառուցման և տեխնիկական վերազինման հաշվին ստացվել է արտադրանքի աճի 90 տոկոսից ավելին։

Մեծ են հանրապետության գյուղատնտեսության աշխատողների հաջողությունները։ Նրանք ապահովեցին համախառն արտադրանքի 10 տոկոսի միջին տարեկան աճ՝ հնգամյա պլանով 1981—1982 թթ. համար սահմանված 3,9 տոկոսի դիմաց։ Կատարվել և գերակատարվել են բուսաբուծության հիմնական կուլտուրաների և անասնապահական մթերքների արտադրության և մթերումների պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։

Ժողովրդական տնտեսության հաջողությունները հնարավորություն են ընձեռում պլանաչափորեն իրականացնելու սոցիալական կարևորագույն հարցերի լուծման կուսակցության կուրսը։ Կատարվում են բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտների, բանվորների և ծառայողների աշխատավարձի, ինչպես նաև կոլտնտեսականների եկամուտների բարձրացման առաջադրանքները։

Ժողովրդական տնտեսության հետագա առաջընթացն ապահովելու նպատակով ուժերը կենտրոնացվում են տնտեսական շինարարության այնպիսի հիմնական տեղամասերում, ինչպիսիք են էներգետիկան, մետալուրգիան և մեքենաշինությունը, կապիտալ շինարարությունը և տրանսպորտը, էկոնոմիկայի ագրարային սեկտորը։ Նկատի ունենալով նշված պրոբլեմների խորությունն ու բարդությունը, նշենք դրանց լուծման այն առավել կարևոր կողմերը, որոնք ըստ էության պայմանավորում են զարգացման ինտենսիվ ուղու վրա էկոնոմիկայի փոխադրումը։

Էներգետիկան էկոնոմիկայի նորմալ կենսագործունեության վճռական պայմանն է։ Սովետական Միությունն ունի աշխարհի ամենախոշոր վառելիքաէներգետիկ կոմպլեքսը։ Միայն վերջին 15 տարում էլեկտրաէներգիայի արտադրությունը և նավթի արդյունահանումը (ներառյալ գազի կոնդենսատը) աճել են ավելի քան 2,5 անգամ, իսկ գազինը՝ 3,6 անգամ։ Արդի էներգետիկան ավելի ու ավելի մեծ չափով է հենվում գիտության նվաճումների, բարձր արտադրողական տեխնիկայի վրա, որոնց օգտագործումը հնարավորություն է ընձեռում զգալի չափով տնտեսելու վառելանյութը, նյութական ու աշխատանքային ռեսուրսները։

Այնուամենայնիվ, այժմ ժողովրդական տնտեսության՝ էներգիայի ու վառելանյութի նկատմամբ հարաճուն պահանջմունքների բավարարման գործում կան դժվարություններ։ Այդ հանգամանքը սրում է էներգետիկ պրոբլեմները կոմպլեքսորեն լուծելու անհրաժեշտությունը, նկատի ունենալով ինչպես մոտ ապագան, այնպես էլ հեռանկարը։

Ընթացիկ տասնամյակում լուրջ միջոցներ են ձեռնարկվում էապես բարելավելու երկրի վառելիքաէներգետիկ հաշվեկշիռը՝ առաջին հերթին նավթի, որպես վառելիքի, բաժնի կրճատման միջոցով։ Միաժամանակ իրականացվում է խոշոր միջոցառումների կոմպլեքս՝ նկատի ունենալով գազի արդյունահանման տեմպերի արագացումը հատկապես Արևմտյան Սիբիրում։ Խնդիր է դրվում մազութի օգտագործումը լայն մասշտաբներով փոխարինել գազով, արագորեն զարգացնել ատոմային էներգետիկան ոչ միայն էլեկտրաէներգիայի արտադրության, այլև ջերմաֆիկացման կարիքների համար։



Սովետական Հայաստանի էներգետիկ հզորությունները ներկայումս ապահովում են ժողովրդական տնտեսության պահանջմունքները։ Սակայն, նկատի ունենալով սեփական վառելիքային ռեսուրսների բացակայությունը և էլեկտրաէներգիայի նկատմամբ էկոնոմիկայի արագ աճող պահանջները, նախատեսվում է, կառուցվող Սպանդարյանի հիդրոկայանից բացի, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանում գործարկել ևս երկու էներգաբլոկ։

Հանրապետությունում ջերմամատակարարման գործն արմատապես բարելավելու, գործող ջերմաէլեկտրակայանների կարողությունները ռացիոնալ օգտագործելու նպատակով ՀԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց ընթացիկ հնգամյակում շահագործման հանձնել 30 կիլոմետր երկարությամբ մագիստրալային նոր ջերմացանցեր, իսկ հաջորդ հնգամյակում Երևանում կառուցել շոգեգազային սարքավորմամբ նոր ջերմաէլեկտրակայան։

Հեռանկարում ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջների բավարարման հիմնական միջոցը էներգիայի նոր աղբյուրների յուրացումն է։ Այդ կապակցությամբ կկառուցվեն արագ նեյտրոնային ռեակտորներով ատոմային էլեկտրակայաններ, կիրականացվեն կառավարվող ջերմամիջուկային սինթեզ, սինթետիկ հեղուկ վառելիքի արտադրությունը, կօգտագործվի արեգակնային և ստորերկրյա ջերմային էներգիան։

Սակայն, ինչպիսին էլ լինեն վառելիքաէներգետիկ կոմպլեքսի զարգացման տեմպերը, ջերմության և էներգիայի խնայողությունը առաջիկայում ևս մնում է կարևորագույն համապետական խնդիր։ Երկրի շատ ձեռնարկություններ և կառույցներ կուտակել են վառելիքի ու էներգիայի տնտեսման հարուստ փորձ։ Հայտնի են Կուզբասի լեռնագործների, Մագնիտկայի մետալուրգների, Կոստրոմայի էներգետիկների, Մոսկվայի շինարարների, Լենինգրադի, ինչպես նաև մեր հանրապետության արտադրական շատ կոլեկտիվների հայրենանվեր գործերն այդ բնագավառում։ Սակայն ոչ բոլոր տեղերում է գործն այդպես դրված։ Ուսումնասիրությունները վկայում են, որ, օրինակ, որոշ ձեռնարկություններ նույնիսկ չունեն ծախսումների միջին նորմայի իջեցման առաջադրանք, իսկ առանձին միավորումներ՝ վառելիքի և էներգիայի ծախսումների լրացուցիչ կրճատման պլաններ և մշակված միջոցառումներ։ Ջերմության և էներգիայի կորուստներ կան կենցաղում, բնակարանային-կոմունալ տնտեսությունում, որոնց կարիքների բավարարմանն է ծառայում օգտագործվող ամբողջ վառելիքի 10 տոկոսից ավելին։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումը խնդիր դրեց լայնորեն արմատավորել էներգախնայիչ տեխնիկան ու տեխնոլոգիան, բարելավել նորմատիվները, ուժեղացնել նյութական ու բարոյական խթանների դերը խնայողության համար մղվող պայքարում, խստացնել պահանջները էներգիայի գերածախս թույլ տալու, նորմաներն ու լիմիտները գերազանցելու նկատմամբ։ Վառելիքի ու էներգիայի ռացիոնալ օգտագործումն ու դրանց խնայողությունը յուրաքանչյուր կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատավորի ու քաղաքացու պատվի խնդիրն է։

ՍՄԿԿ XXVI համագումարը, Կենտկոմի նոյեմբերյան պլենումը հատուկ անդրադարձան մետալուրգիայի և մեքենաշինության զարգացման պրոբլեմներին։ Այժմ մեր երկիրը հասել է մետաղի արտադրության հսկայական մասշտաբների։ 1982 թվականին արտադրվել է 147 մլն տոննա պողպատ, 102 մլն տոննա սև մետաղի պատրաստի գլանվածք և այլն։ Սակայն մետաղի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջը դեռևս լրիվ չի բավարարվում։ Դա բացատրվում է մի շարք պատճառներով։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, արմատական որակական փոփոխությունները դանդաղ են իրականացվում մետալուրգիայում, նոր տեխնոլոգիական պրոցեսների արմատավորումը ետ է մնում մետաղ սպառող հիմնական ճյուղերում։ Բացի դրանից, մետաղամշակման արտադրությունում

զգալի չափերի է հասնում մետաղի վատնումը, այն վատ է պահպանվում, հաճախ նպատակային չի օգտագործվում:

Այժմ սև մետաղների գլանվածքի օգտագործման գործակիցը 0,72 է: Դա նշանակում է, որ հսկայական աշխատանքային ծախսումներով գլանվածքի վերածված մետաղի մեկ քառորդից ավելին ձեռնարկությունները վերադարձնում են վերաձուլման: Ըստ ՍՍՀՄ ԿՎՎ-ի տվյալների, տասնմեկ մեքենաշինական մինիստրությունների գծով ամբողջությամբ վերցրած սև մետաղների (ներառյալ պողպատի և չուգունի ձուլվածքը) թափոնները կազմում են ավելի քան տասը միլիոն տոննա: Զգալի քանակությամբ սև մետաղ թափոնների է վերածվում նաև մեր հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում: Ընդ որում շատ են մետաղի մշակումից առաջացած տաշեղները: Ձեռնարկություններում դանդաղ են իրականացվում նախապատրաստական արտադրության կառուցվածքի և մետաղամշակման կատարելագործման միջոցառումները, բավարար չափով չեն կիրառվում ճնշման միջոցով մետաղի մշակման նոր մեթոդները, բարձր է մետաղահատ հաստոցների տեսակարար կշիռը, ցածր է դարբնոցամամլիչային սարքավորումների բաժինը, քիչ են օգտագործվում ձուլման ու դրոշման ճշգրիտ նախապատրաստուկների ստացման առաջավոր մեթոդները, մետաղակերամիկայից պատրաստված շինվածքները և այլն: Հաշվարկված է, օրինակ, որ մեկ տոննա ջերմաամրացված գլանվածքը հնարավորություն է ընձեռում տնտեսելու 250 կգ մետաղ: Երկաթուղային մայրուղիներում չջերմամշակված ծանր տիպի ռելսերը ծառայում են չորս տարի, իսկ մշակվածները՝ յոթ տարի: Մինչդեռ ռելսերի տարեկան արտադրության միայն մեկ երրորդն է ջերմամշակվում: Բարձր է նաև արտադրվող մեքենաների մետաղատարությունը: Այսպես, հայրենական միաշերեփ էքսկավատորի մետաղատարությունը միավոր արտադրողականության հաշվով 20—60 տոկոսով ավելին է արտասահմանյան համանման լավագույն մեքենաներից:

Ներկայումս թե՛ մետալուրգիայում և թե մեքենաշինության մեջ առկա են ռեալ հնարավորություններ՝ նվազագույն ծախքերով ժողովրդատնտեսական վերջնական արդյունքներն ավելացնելու համար: Այսպես, գլանվածքի որակը բարելավելու և դրա նմուշատեսակը նորացնելու, ձեռնարկություններում նվազագույն մշակում պահանջող պրոֆիլների քանակն ավելացնելու շնորհիվ կարելի է իջեցնել արդյունաբերության ու շինարարության վերջնական միավոր արտադրանքի վրա սև մետաղի գլանվածքի ծախսը: Արդյունավետ ուղիներից են նաև մետաղի արտադրանքի որակի բարձրացումը, կոռոզիայի դեմ պայքարի ուժեղացումը, փոշեմետալուրգիայի զարգացումը և այլն: Կարևոր ռեզերվներ են մեքենաների կոնստրուկցիաների ու մետաղամշակման տեխնոլոգիայի կատարելագործումը, քիմիական ու կոնստրուկցիոն այլ նյութերի լայն կիրառությունը: Այդ ամենի շնորհիվ մեքենաշինության մեջ կտնտեսվի 8 մլն տոննա և շինարարության մեջ՝ 2 մլն տոննա սև մետաղների գլանվածք, ավելի լրիվ կբավարարվեն մետաղի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջները (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 185):

Մեր էկոնոմիկայի ցուցանիշները, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը, արտադրության արդյունավետությունը մեծապես պայմանավորված են կապիտալ շինարարության զարգացմամբ: Մեր երկրում շինարարության ծավալը վիթխարի է. միայն 1966—1981 թվականներին գործարկվել են 1.500 մլրդ ռուբլու հիմնական ֆոնդեր: Համեմատելու համար նշենք, որ ԱՄՆ-ում դրա համար պահանջվել է համարյա երեսուն տարի: Ամեն տարի կապիտալ շինարարությանն է հատկացվում ազգային եկամտի ավելի քան մեկ հինգերորդ մասը: Միայն Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին անցնում է մեկ մլրդ ռուբլուց: Շարք են մտնում նորանոր արդյունաբերական ձեռնարկություններ ու արտադրամասեր, բազմաթիվ այլ օբյեկտներ: Մեծ ուշադրություն է նվիրվում գործող ձեռնարկությունների վերակառուցմանը, ընդլայնմանն ու տեխնիկական վերազինմանը:



Սակայն ժողովրդական տնտեսության այդ կարևոր ոլորտում կան լուրջ դժվարություններ, էական թերություններ: Հաճախ շինարարության ժամկետները ձգձգվում են, ռեսուրսները հատկացվում են ամենևին ոչ առաջնահերթ կառույցներին: Էկոնոմիկայի համամասնական աճին հատկապես խանգարում է հարակից ճյուղերում կարողությունների չհամաձայնեցված շինարարությունը: Երբեմն գործարկվող օբյեկտները չեն կոմպլեկտավորվում որակյալ կադրերով: Այս ամենի կանխման համար, առաջնահերթ նշանակություն ունեն պլանների որակի բարձրացումը, պլանային կարգապահության ամրապնդումը: Արտադրական (և ոչ միայն արտադրական) օբյեկտների կառուցման ժամանակ հատուկ ուշադրություն են պահանջում դրանց ապագա անխափան աշխատանքն ապահովող գործոնները՝ նյութերի, կոնստրուկցիաների մատակարարումը, տրանսպորտի աշխատանքը, աշխատուժի առկայությունը և այլն:

Այլ կերպ ասած, հարկավոր է կապիտալ ներդրումները, նյութական ու ֆինանսական ռեսուրսները նորակառույցներին հատկացնել սահմանված նորմատիվներին համապատասխան: Ընթացիկ հնգամյակում այդ նպատակով, մասնավորապես, կրճատվել է նոր սկսվող կառույցների թիվը, միջոցները կենտրոնացվում են ավարտվող օբյեկտներում այն հաշվով, որպեսզի ապահովվի արտադրական կարողությունների արագ գործարկումը: Իրականացվում են նաև այլ միջոցառումներ, որոնք նպատակամղվում են կապիտալ շինարարության գործերի բարելավմանը, աշխատանքի արդյունավետության բարձրացմանը:

Շինարարությունում հատկապես լուրջ ուշադրություն է պահանջում աշխատատար պրոցեսների, մանավանդ հարդարման, ներկման, ամրակապման աշխատանքների մեքենայացումը: Այստեղ դեռևս անբավարար են օգտագործվում փոքր մեքենայացման միջոցները: Չնայած շինարարության տեխնիկական հագեցվածության բարձր աստիճանին, ներկայումս ձեռքի աշխատանքը գերակշռում է բետոնագործների, ամրակապողների, ներկարարների ու հարդարողների մեծ մասի մոտ:

Հատկապես մեծ է ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը կապալային կազմակերպություններում: Այն մեր հանրապետությունում հասնում է 70 տոկոսի: Շինարարական կազմակերպություններում, ինչպես նշվեց ՀԿԿ XXVII համագումարում, աշխատանքի արտադրողականությունը դեռևս դանդաղ է աճում արտադրության կազմակերպման, նոր տեխնիկայի և փոքր մեքենայացման միջոցների ներդրման ասպարեզում եղած թերությունների, ինչպես նաև աշխատանքային ցածր կարգապահության հետևանքով:

Տասնմեկերորդ հնգամյակում ժողովրդատնտեսական հանգուցային պրոբլեմներից է տրանսպորտի, առաջին հերթին երկաթուղային տրանսպորտի, աշխատանքի կատարելագործումը: Միշտ էլ մեծ է եղել տրանսպորտի դերը էկոնոմիկայի զարգացման գործում: Այդ դերը առավել մեծանում է արդի պայմաններում, երբ վիթխարի չափեր են ընդունել արտադրության մասշտաբները, խորանում են դրա մասնագիտացումն ու կոոպերացումը, արդյունաբերությունն աննախընթաց կերպով շարժվում է դեպի Սիբիր ու Հեռավոր Արևելք: Այսպես, բեռնափոխադրումների ծավալը երկրի արևելյան շրջաններից դեպի արևմուտք վերջին հնգամյակներին մեծացել է մի քանի անգամ: Միաժամանակ ակնհայտ է դառնում տրանսպորտի արագ զարգացման անհրաժեշտությունը՝ կապված էկոնոմիկան աճի ինտենսիվ ուղու վրա փոխադրելու հետ:

Մինչդեռ տրանսպորտում կան չլուծված շատ հարցեր: Այսպես, 1965—1980 թվականներին արդյունաբերական արտադրության 2,7 անգամ և գյուղատնտեսության արտադրանքի 1,4 անգամ աճի պայմաններում երկաթուղիների երկարությունն ավելացել է միայն 10,8 տոկոսով: Նկատելիորեն կրճատվել է բեռնատար գնացքների միջին տեխնիկական արագությունը, նվազել բեռնատար վագոնի միջին օրական վազքը: Քիչ չեն դեպքերը, երբ չի կատարվում վագոնների միջին օրական բեռնաթափման պլանը: Օրինակ, 1982 թվականին մեր հանրապետությունում թերակատարվել է վագոնների միջին օրական բեռնաթափման առաջադրանքը: Ամեն օր բազմաթիվ վագոններ դուրս

ՀԿԿ Կենտկոմի 1982 թ. դեկտեմբերյան պլենումում առանձնահատուկ շեշտվեց այն հանգամանքը, որ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում դեռևս թույլ է պլանային, պետական կարգապահությունը։ Խոսքը մասնավորապես այն մասին է, որ հանրապետության մի շարք արտադրամիավորումներ ու ձեռնարկություններ տարվա ընթացքում ճշգրտում են արտադրանքի թողարկման և իրացման արդեն հաստատված պլանները՝ դրանք իջեցնելու նպատակով։ 1982 թ. հատկապես զգալի են եղել այդպիսի «ճշգրտումները» «Անդրկովկասկաբել» արտադրամիավորումում, Երևանի Ջերժինսկու անվան հաստոցաշինական, «Պոլիվինիլացետատ», ֆրեզերային հաստոցների գործարաններում և այլուր։

Այսօր առաջնահերթ նշանակություն է տրվում յուրաքանչյուր ձեռնարկության արտադրանքի թողարկման ու մատակարարման պլանների խստիվ կատարմանը՝ սահմանված ժամկետներին և տեսականուն համապատասխան։ ՍՄԿԿ XXVI համագումարը շեշտեց, որ ձեռնարկությունների աշխատանքը պայմանագրային պարտավորությունների կատարման միջոցով գնահատելու պայմաններում յուրաքանչյուր տնտեսական ղեկավար անձնական պատասխանատվություն է կրում պլանային, պայմանագրային կարգապահությունը պահպանելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումը պահանջեց բարձրացնել համապետական, համաժողովրդական շահերի պահպանման համար մարդկանց պատասխանատվությունը, վճռական պայքար մղել պետական, պլանային ու աշխատանքային կարգապահության խախտումների դեմ։ Կուսակցական կազմակերպությունները պետական պլանային կարգապահության, պայմանագրային պարտավորությունների յուրաքանչյուր խախտման դեպք պետք է դարձնեն լուրջ քննարկման առարկա, ձեռնարկեն կոնկրետ, գործնական միջոցներ առկա թերությունները հաղթահարելու համար։

Կառավարման մակարդակի բարելավման համար ամենից առաջ պահանջվում է կատարելագործել աշխատանքի ոճն ու մեթոդները՝ ելնելով գործարարության, կոնկրետության, օպերատիվության լենինյան պահանջներից։ Տնտեսավարման պրակտիկան ցույց է տալիս, որ այն բնագավառներում ու տեղամասերում, որտեղ ճշտորեն են հաշվի առնվում և կատարվում այդ պահանջները, հաջողությամբ են լուծվում արտադրության արդյունավետության բարձրացման, էկոնոմիկայի զարգացման հարցերը։

---

# ԲՐԻԳԱԴԻ ՊՈՏԵՆՑԻԱԼԸ

**Ս. Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ**

ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ և խթանման կոլեկտիվ ձևերը, դրանց առավել լայն կիրառումը մեր տնտեսական կյանքի նոր երևույթներից են։

Բրիգադային կապալը կյանքի է կոչվել երկրի էկոնոմիկայի զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությամբ, կուսակցության տնտեսական քաղաքականության նոր սկզբունքների հետևողական իրականացմամբ։ Այժմ աշխատանքի կազմակերպման անհատական ձևը շատ դեպքերում չի համապատասխանում արտադրության բնույթին և խնդիրներին։ Այդ իսկ պատճառով ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց «Միջոցառումներ իրականացնել աշխատանքի կազմակերպման և վարձատրման բրիգադային ձևի հետագա տարածման և արդյունավետության բարձրացման համար»։

Ընթացիկ հնգամյակում տնտհաշվարկային բրիգադների պլանաչափ զարգացման աշխատանքը դառնում է տնտեսավարման նոր մեթոդների բաղկացուցիչ մասը։ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, քննարկելով գյուղատնտեսության մեջ կոլեկտիվ կապալի ներդրման կազմակերպական աշխատանքն ուժեղացնելու հարցը, նշեց, որ կապալով աշխատող կոլեկտիվներում ապահովվում են աշխատանքի և ռեսուրսների տնտեսման ավելի բարձր ցուցանիշներ։ Այստեղ յուրաքանչյուր աշխատավորի անձնական շահերը հաջողությամբ են զուգորդվում կոլեկտիվի խնդիրների հետ, ուժեղանում է կապը վարձատրման և վերջնական արդյունքների միջև, բարելավվում է արտադրական ֆոնդերի և կապիտալ ներդրումների օգտագործումը։

Աշխատանքի կազմակերպման և խթանման նոր եղանակն առավել լրիվ է համապատասխանում արտադրության արդի պահանջներին, աշխատանքի գիտական կազմակերպմանը և նպաստում է տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծմանը, կառավարման դեմոկրատական հիմունքների զարգացմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը։

Բրիգադային տնտհաշվարկի մեթոդը առաջինը կիրառեցին շինարարները՝ Ն. Զլոբին, Վ. Սերիկով, Ի. Շեցով... Բրիգադային կապալի այս առաջամարտիկների անունները հայտնի են ողջ երկրում։ Շինարարական աշխատանքների կազմակերպման նոր մեթոդը ջերմ արձագանք գտավ նաև մեր հանրապետությունում։ Զլոբինյան մեթոդով աշխատելու տասնամյա հոբելյանն է նշում «Երևանշին» միավորման № 1 վարչության բրիգադավար Հ. Հարությունյանը։ Նրա ղեկավարած բրիգադն արդեն գերազանցել է «Տարեկան մեկ շենք» բնագիծը և մեր քաղաքը զարդարել բազմաթիվ գեղեցիկ կառույցներով, բնակարանամուտի հրճվանք պատճառելով երևանյան հարյուրավոր ընտանիքների։

Ամեն ինչ միանգամից ու հեշտությամբ չէր ստացվում։ Ահա թե ինչ է պատմում ինքը՝ բրիգադավարը։

— Մենք՝ նախկին համաշինարարական № 1 տրեստի № 1 վարչության մի խումբ երիտասարդ շինարար վարպետներս, տնտեսագիտական ուսուցման ցանցում ուսումնասիրում էինք բրիգադային տնտհաշվարկի զլոբինյան մեթոդը։ Մինչ այդ մեր պատկերացումը աշխատանքի նոր եղանակի մասին կա-

յանում էր նրանում, որ մենք գիտեինք. բրիգադը ստանձնում է որևէ մի գործ, պայմանավորվում նրա արժեքի մասին և կատարում այդ աշխատանքը: Ճիշտն ասած, մենք թերահավատ էինք այդ գործի նկատմամբ: Պրոպագանդիստը՝ շինվարչության պետը, մի քանի պարապմունքների ընթացքում կարողացավ պարզաբանել այն նորը, առաջավորը, որը պարունակում է շինարարական աշխատանքների կատարման այդ եղանակը: Այդտեղ էր, որ մենք հստակ պատկերացում ստացանք, թե նոր մեթոդը ինչպես է բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, շինարարության որակը, կրճատում շահագործման ժամկետները, ինչ տնտեսական օգուտներ է տալիս: Վերջապես մեզ համար պարզ դարձավ, թե տնտհաշվարկի համակարգում ինչ հարաբերության մեջ են որակը, խնայողությունը և բրիգադի անդամների վարձատրությունը: Եվ մենք վճռեցինք միավորվել ու աշխատել ըլոբինյան եղանակով: Այդ առթիվ մենք խորհրդակցեցինք մեր պրոպագանդիստի հետ, և նա դարձավ բրիգադի ստեղծման ամենաեռանդուն ջատագովն ու խորհրդատուն: Ուսուցումը և պրակտիկ աշխատանքը մեզ օգնեցին՝ հեշտությամբ կողմնորոշվելու տնտեսագիտական բարդ հաշվարկներում, ըմբռնելու խնայված ամեն մի կիլոգրամ բետոնի, շաղախի, ինչպես նաև փայտի, էլեկտրաէներգիայի արժեքը: Մենք մշտապես ուղիներ ենք որոնում խնայողության ռեժիմի ուժեղացման, շինարարության որակի բարձրացման համար: Անցած տարիների ընթացքում մեր բրիգադը հասել է զգալի հաջողությունների: Մեր կառուցած բնակելի շենքերը բարձրորակ են: Հաճախակի հաղթում ենք սոցիալիստական մրցությունում: Բրիգադի բոլոր անդամները կոմունիստական աշխատանքի հարվածայիններ են, այդ բարձր կոչմանն է արժանացել նաև բրիգադը: Բոլորս տիրապետում ենք շինարարական 2—3 մասնագիտությունների:

Հանրապետությունում ըլոբինականների համբավ ունեն սոցիալիստական աշխատանքի հերոսներ Գ. Մարգարյանը և Գ. Մանասյանը: «Երարդշին» տրեստի անվանի բրիգադավարները ջանք չեն խնայում հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ գործի վերածելու համար, մշտապես կրճատում են աշխատանքի նորմատիվ ժամկետները, խնայողաբար ծախսում նյութերը: Նրանք ոչ միայն արտադրության հմուտ կազմակերպիչներ են, այլև դաստիարակներ, ապրում են կոլեկտիվի շահերով, մարդկանց ջանքերը, նախաձեռնությունն ուղղում մեկ նպատակի, օգնում ետ մնացողներին: Եվ միանգամայն օրինաչափ է, որ այս բրիգադներում բարձր է աշխատանքային կարգապահությունը, ցածր՝ ուշացումների, գործալքումների քանակը, մարդիկ ավելի խնամքով են վերաբերվում տեխնիկային, նյութերին, մի խոսքով, սովորում են ավելի լավ տնտեսավարել: Այստեղ դաստիարակվում է իրոք կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ: «Քաջարանշին» տրեստում բոլորն են ճանաչում Գ. Գևորգյանին, Բ. Նավասարդյանին, մյուս անվանի շինարարներին, որոնց բրիգադները բարձր արտադրողական աշխատանքի օրինակներ են ցույց տալիս: Ջերմուկում հմուտ ըլոբինական է Ս. Ավագյանը, Սևանում՝ Վ. Հարությունյանը: Երևանի տնաշինական կոմբինատում, որտեղ լայնորեն արմատավորված է բրիգադային կապալի մեթոդը, նորարարի համբավ ունեն Մ. Պապոյանը և շատ ուրիշներ:

«Գլխհայջրշին» վարչության ՇՄՇ—17-ում դրենաժային և ոռոգման ցանցերի կառուցման, գերխոնավ հողերի չորացման մեծ ծավալի աշխատանքներ է կատարում Ն. Ղազազյանի տնտհաշվարկային բրիգադը: Նա մեր հանրապետությունում առաջինն արժանացավ տիեզերագնաց-օդաչու Յու. Ա. Գագարինի անվան հուշադրոշին, որը նրան հանձնվեց Աստղավանում: Ն. Ղազազյանը ղեկավարում է հանրապետության ամենախոշոր կոմպլեքսային բրիգադներից մեկը, որտեղ աշխատում է 80 բանվոր: Առաջին տիեզերագնաց-օդաչուի անվան հուշադրոշին են արժանացել նաև «Գլխհայջրշինի» № 18 ՇՄՇ-ի բրիգադավար Ն. Վարդանյանը, Ղուկասյանի տնտհաշվարկային տեղամասից՝ Ե. Կարապետյանը: Նրանք հիանալի կազմակերպիչներ են, պահանջկոտ և հոգատար:

Շինարարության բրիգադավարը կարևոր և դժվարին պարտականություն է: Բանվորական կոլեկտիվը վստահություն է արժանացնում նրան, ով օժտված



է պատասխանատվության և ընկերականության զգացումով, կազմակերպչի ունակություններով, գործի նկատմամբ ունի պետական մոտեցում, մասնագիտական բարձր վարպետություն: Շինարարության այդ օղակում է, որ անմիջականորեն իրականացվում են ինժեներական մտահղացումներն ու նախագծերը:

Բրիգադավարներին մեծ ինքնուրույնություն է տրված: Նրանք շինհրապարակի իսկական տերերն են: Իսկ դա նշանակում է, որ նրանք կոչված են ոչ միայն բարձր որակավորում ունեցող բանվորներ լինելու, այլև կարողանալ կատարել ինժեներական հաշվարկներ, լավ կողմնորոշվել նախագծային-նախահաշվային փաստաթղթերի մեջ, իմանալ էկոնոմիկան: Պատահական չէ, որ ավելի հաճախ ենք մենք հանդիպում բրիգադավար-ինժեներների և բրիգադավար-տեխնիկների: Նրանց համար դա ուժերի իսկական փորձություն է, հասունության քննություն:

Յուրաքանչյուր բրիգադի աշխատանքի արդյունքները մեծապես պայմանավորված են ղեկավարի անձով, որի գործունեության արդյունավետությունը, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, ապահովվում է ոչ թե իշխանության ուժով, այլ հեղինակությամբ, եռանդով, փորձառությամբ:

Բրիգադավարն ամեն օր աշխատանքային տեղամասում է: Գործընկերներն իրավամբ նրան ամեն ինչի համար պատասխանատու են համարում. և՛ կարգապահության, և՛ պլանների կատարման, և՛ դաստիարակչական աշխատանքի համար, բրիգադի բարձր հեղինակության և ընկերական մթնոլորտի համար: Կոլեկտիվում ղեկավարի այդ պատասխանատվությունը և հեղինակությունը, հիրավի, անբաժանելի են:

Նոր մեթոդի կիրառումը նպաստում է կոլեկտիվում այնպիսի բարոյահոգեբանական մթնոլորտի ստեղծմանը, որի պայմաններում բրիգադի ամեն մի անդամ կառուցում աշխատի իսկական տիրոջ զգացումով: Մինչդեռ շինարարությունում հանդիպում են այնպիսիները, որոնց համար ձեռնտու են անտընտեսվարությունն ու թափթփվածությունը: Նրանցից ոմանք, երբեմն, մեկ ռուբլու աշխատանք են կատարում, բայց տաս ռուբլի պահանջում: Ոմանք էլ համոզված են, որ իրենց անորակ աշխատանքը ի վերջո կարելի է քողարկել տխրահռչակ «թերությունների ակտով» և կառույցը հանձնել «բավարար» գնահատականով:

Շինարարությունը աշխատանքի յուրահատուկ ասպարեզ է: Այստեղ ամեն ինչ բաց երկնքի տակ է, մարդիկ աշխատում են և՛ ցրտին, և՛ շոգին: Շինարարությունում չկա այն մաքրությունն ու հարմարավետությունը, ինչ գործարանային արտադրամասում: Թերևս դա է այն մտայնության պատճառը, թե կառույցում կադրերի մեծ հոսունությունն անխուսափելի է: Բայց այդպե՞ս է իրողը իրականում: Պրակտիկան հաստատում է, որ անհրաժեշտ միջոցառումների կիրառումը հնարավորություն է ընձեռում զգալիորեն սահմանափակել կադրերի հոսունությունը: Այստեղ է, որ կարող է իր վճռական խոսքն ասել բրիգադային կապալը և առհասարակ աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդների ներդրումը, շինարարության ինդուստրացումը, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավումը, աշխատանքի պահպանության, մարդկանց առողջության ամրապնդման և հանգստի կազմակերպման գործի բարելավումը:

Հանրապետության շինարարական մինիստրություններում և գերատեսչություններում բրիգադային մեթոդով շինմոնտաժային զգալի աշխատանքներ են կատարված:

«Գլխհայջրշին»-ը 1982 թվականին 31,1 միլիոն ռուբլու շինարարական-մոնտաժային աշխատանքներ իրականացրել է բրիգադային-կապալային մեթոդով: Իսկ դա կազմում է աշխատանքների ընդհանուր ծավալի 43 տոկոսը: Ընդ որում այդ ցուցանիշը ձեռք է բերվել բանվորների համեմատաբար քիչ քանակությամբ (38,6 տոկոս): Այստեղ բարձր է նաև բանվորների աշխատանքի արտադրողականությունը: Տնտհաշվարկային բրիգադներում մեկ բանվորի միջին արտադրանքը հասնում է 19,7 հազար ռուբլու: Դա երկու հազար ռուբլով ավելի է վարչության միջին ցուցանիշից: Հատկանշական է, որ տնտհաշ-

վարկային բրիգադներն այստեղ ավելի խոշոր են և կազմում են ընդհանուր բրիգադների թվի 27,1 տոկոսը, ընդգրկելով բոլոր բանվորների 38,6 տոկոսը։

Հանրապետության խոշորագույն շինարարական գերատեսչություններում՝ արդյունաբերական և գյուղական շինարարության մինիստրություններում, շինմոնտաժային աշխատանքների ընդհանուր ծավալում տնտհաշվարկային բրիգադների բաժինը հասնում է 38,2 և 47,7 տոկոսի։ Այդ բրիգադներում ընդգրկված է բոլոր բանվորների 34,1 և 45,3 տոկոսը։ Ընդ որում գյուղական շինարարները նկատելիորեն խոշորացրել են տնտհաշվարկային բրիգադները, որոնք մեծ մասամբ այժմ կոմպլեքսային են։ Բրիգադների ընդհանուր թվում դրանց բաժինը կազմում է 33,2 տոկոս, իսկ արդշինմինիստրությունում՝ 45,6 տոկոս։

Տնտհաշվարկային կոլեկտիվներում առավել բարձր է աշխատանքի արտադրողականությունը։ Արդշինում մեկ բանվորի միջին արտադրանքն այդ բրիգադներում հասնում է 16,3 հազար ռուբլու, մինիստրության 12,7 հազար միջինի փոխարեն, գյուղշինում՝ համապատասխանաբար՝ 13,7 հազար և 13 հազար ռուբլի։ Բանվորների միջին աշխատավարձը արդշին մինիստրության տնտհաշվարկային բրիգադներում կազմել է 315,1 ռուբլի (ընդամենը միջինը 294,7 ռուբլի), գյուղշինում՝ 289,9 և 286,4 ռուբլի։

Այսպիսով, հաշվարկները հաստատում են կապալային մեթոդի առավելությունները, որի պայմաններում և՛ աշխատանքի արտադրողականությունն է բարձր, և՛ վարձատրությունը։ Այդ բրիգադներում հաշվենկատորեն է կիրառվում խնայողության ռեժիմը, նրանք տարեկան տալիս են հազարավոր ռուբլիների պետական միջոցների և նյութերի տնտեսում։

Այնուամենայնիվ, չնայած տնտեսական և սոցիալական անվիճելի առավելություններին, բրիգադային կապալը պահանջվող հետևողականությամբ չի արմատավորվում։ Արդեն մի քանի տարի է, ինչ տնտհաշվարկային բրիգադների բաժինը շինարարության մեջ էականորեն չի աճում։ Եվ այստեղ պահանջվում է ոչ թե այդ պրոցեսի մեխանիկական արագացում և բրիգադների ձևական վերանվանում, այլ խորապես մտածված ու համառ աշխատանք, պլանային, կազմակերպական, տեխնիկական, գաղափարադաստիարակչական միջոցառումների իրականացում։

Բրիգադային կապալի ներդրմանը խոչընդոտում է նյութատեխնիկական անկանոն մատակարարումը։ Պատճառը նաև այն է, որ նոր եղանակն առավել խիստ պահանջներ է առաջադրում պլանավորմանը, արտադրության կազմակերպմանն ու կառավարմանը, կապիտալ շինարարության բոլոր ստորաբաժանումների ու ծառայությունների համաչափ աշխատանքի ապահովմանը։ Այն կոլեկտիվներում, որտեղ այդ ամենը չկա, բրիգադային տնտհաշվարկը թառամում է՝ դեռևս չծաղկած։ Անցած հնգամյակում նոր մեթոդով աշխատած բրիգադների մեկ երրորդը չկատարեց պայմանագրային պարտավորությունները։ Պատասխանատվության մեծ բաժին է ընկնում պայմանագրերը ստորագրած շինարարական կազմակերպությունների ղեկավարների, ինչպես նաև ինժեներական ու տեխնոլոգիական ծառայությունների վրա, որոնք լիովին չեն կատարում բրիգադների հանդեպ ստանձնած իրենց պարտավորությունները։

Ոչ պակաս կարևոր խնդիր է միևնույն օբյեկտում աշխատող գլխավոր կապալառու և ենթակապալառու կազմակերպությունների համաձայնեցված գործունեության ապահովումը։ Քիչ չեն դեպքերը, երբ ենթակապալառու կազմակերպությունները չեն ցանկանում բրիգադները տնտհաշվարկի նոր եղանակին փոխադրելու վերաբերյալ պայմանագրեր կնքել գլխավոր կապալառուի հետ։ Ենթակապալային և համաշինարարական բրիգադների աշխատանքների կոորդինացման նկատմամբ անուշադրությունը բացասաբար է անդրադառնում ընդհանուր առմամբ օբյեկտի ցուցանիշների վրա, նվազեցնում է բրիգադային կապալի արդյունավետությունը։ Նպատակահարմար է, որպեսզի ենթակապալային կազմակերպություններում բրիգադային եղանակի ներդրման առաջադրանքները սահմանի գլխավոր կապալառուն՝ ելնելով օբյեկտի կառուցման համատեղված գրաֆիկից, աշխատանքի այդ մեթոդին փոխադրելով տվյալ



օբյեկտի շինարարությանը մասնակցող բոլոր բրիգադները, անկախ գերատեսչական պատկանելությունից։

Կապալի անբավարար կիրառումը և ցածր արդյունավետությունը կարելի է բացատրել նաև բրիգադների մի մասի փոքր չափերով և այն բանով, որ այդ կոլեկտիվները կատարում են առավել դժվարին ու պատասխանատու աշխատանքներ։ Ուսումնասիրությունները վկայում են նաև, որ այս կարևոր գործում առկա է նաև ձևամոլությունը, որոշ բրիգադներ միայն ձևականորեն են կոչվում կապալային։ Նկատվում է նաև հակառակ միտումը, երբ առանձին տնտհաշվարկային բրիգադների համար ստեղծվում են լավագույն պայմաններ, մինչդեռ մյուսներն աշխատում են առավել անբարենպաստ պայմաններում։ Այսպիսի օրինակներ կարելի է բերել «Արովյանշին» տրեստից։

Դժվար է հասնել արդյունավետության շատ թե քիչ նկատելի աճի, եթե տրեստում նոր մեթոդով են աշխատում մեկ-երկու բրիգադ։ Միայն բրիգադների մեծ մասը տնտհաշվարկային կապալի փոխադրելու դեպքում կարելի է խոսել նոր ձևով աշխատելու արդյունավետության մասին, որովհետև միայն այդ դեպքում հնարավոր է աշխատանքների ապահովվածությունը և ըստ փուլերի բաշխումն իրականացնել կենտրոնացված կարգով։ Մինչդեռ նախկինում բրիգադն ինքն էր մտահոգվում աշխատանքի գրաֆիկի, մատակարարումների համաչափության մասին։

Հաճախ կապալի են փոխադրվում աշխատանքների միայն առանձին տեսակները, որոնք շինարարության տվյալ փուլի կամ ամբողջությամբ վերցրած օբյեկտի կառուցման աննշան մասն են կազմում, որի հետևանքով տնտհաշվարկային բրիգադն այդ եղանակով աշխատում է ոչ լրիվ տարի և ցրվում է՝ չհասնելով դրական արդյունքների։

Արդյունաբերական շինարարության մինիստրությունում տնտհաշվարկային 372 բրիգադից աշխատանքները հաջողությամբ է ավարտել և շինանյութերի տնտեսման համար 1982 թվականին պարգևատրում է ստացել միայն դրանց մի մասը։ Շատ բրիգադներում աշխատանքի տնտեսական արդյունավետության և ինքնարժեքի իջեցման հաշվարկներ չեն կատարվում։ Այդպիսին է պատկերը նաև գյուղական շինարարության մինիստրությունում։

Մեր հանրապետությունում, անշուշտ, որոշակի աշխատանքներ են կատարվում բնակելի տների և սոցիալ-կենցաղային օբյեկտների կառուցման ասպարեզում։ Միայն 1982 թ. շահագործման են հանձնվել 716,3 հազար քմ ընդհանուր մակերեսով բնակելի տներ, որի համար ծախսվել են 132,2 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։

Այսօր ամեն մի շնչին ընկնում է մոտ 14 քառ. մետր ընդհանուր բնակտարածություն, այնուամենայնիվ, այն դեռևս չի բավականացնում։ Կուսակցությունը խնդիր է դրել 80-ական թվականներին յուրաքանչյուր ընտանիքի հիմնականում ապահովել առանձին բնակարանով՝ ամեն մի անձին միջին հաշվով 19 քառ. մետր բնակտարածությամբ։ Այնուամենայնիվ, մեզ մոտ բնակելի շինարարության տեմպերը դեռևս բավարար չեն։ Այդ նպատակով հատկացված միջոցները լրիվ և ռացիոնալ չեն օգտագործվում, շինարարության առաջադրանքները չեն կատարվում։ Երևան քաղաքում, օրինակ, բնակելի շինարարության տարեկան պլանը կատարվել է միայն 69,6 տոկոսով, նախատեսվածից պակաս հանձնվել 110 հազար քմ բնակտարածություն։ «Բնակելի տների և սոցիալ-կենցաղային օբյեկտների կառուցման պլանների կատարումն ապահովելու միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է, որ այդ նպատակով կատարվող աշխատանքը չի համապատասխանում կուսակցության պահանջներին։ Նախատեսված են հիմնավորված միջոցառումներ բնակարանային շինարարության գործում բեկում մտցնելու համար։ Այստեղ առանձնապես կարևորվում են բրիգադային կապալի մասսայական կիրառումը, այդ մեթոդի առավելությունների լրիվ օգտագործումը։

Հատկանշական է, որ բրիգադային տնտհաշվարկը հիմնականում կիրառ-

վում է բնակելի և ոչ մեծ շենքեր կառուցելիս։ Այն համեմատաբար թույլ է ներդրվում արդյունաբերական շինարարության մեջ։ Մինիստրությունների ու գերատեսչությունների մասնագետները դա բացատրում են աշխատանքների բարդությամբ և մեծ ծավալով։ Սակայն երկրի մի շարք խոշորագույն կառույցների՝ Կամայի ավտոգործարանի, Նովոլիպեցկի մետալուրգիական գործարանի, Սայանո-Շուշենսկոյեի հիդրոէլեկտրակայանի շինարարների փորձը այլ բան է ապացուցում։ Պրակտիկան հաստատում է, որ կարելի է և անհրաժեշտ է լայնորեն կիրառել կապալը նաև խոշոր օբյեկտների կառուցման մեջ։ Դրա համար անհրաժեշտ է բարելավել բրիգադային հարահոս կապալի պլանավորումը, միավորել հարակից բրիգադների ջանքերը և դրանք նպատակամղել աշխատանքի վերջնական արդյունքին՝ պատրաստի օբյեկտները գործարկելուն։ Այս առնչությամբ հարկ է նշել, որ չնայած այն բանին, որ շինարարների աշխատանքը գնահատելիս չափանիշ է ընդունված ապրանքային շինարարական արտադրանքը, կարողությունների գործարկումը, մեզ մոտ ուժի մեջ է մնում համախառն ցուցանիշը՝ կապալային աշխատանքների ծավալը, որով և պայմանավորվում են աշխատավարձի, եռամսյակային պարգևների և վերադիր ծախսերի ֆոնդերի չափերը։ Իսկ «վալը», ինչպես հայտնի է, առավել հեշտ է կուտակել շինարարության սկզբնական փուլում, երբ կատարվում են նյութատար, բարձրարժեք աշխատանքները։ Հետագայում, շինարարության եզրափակիչ փուլերում, գործն արդեն բարդանում է, համախառն «հատուցումը»՝ նվազում։ Այստեղից էլ որոշ շինարարների հակումը՝ սկսել կառույցը, կուտակել բարձրարժեք «վալը», ապա կառույցը թողնել անավարտ։

Շինարարության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական ուղին կառավարման համակարգի կատարելագործումն է, գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումների օգտագործումը։ Արդեն այժմ կարելի է զգալիորեն ընդլայնել նորմատիվային զուտ արտադրանքի ցուցանիշի կիրառումը, որը եկող տարվանից նորմա է դառնալու շինարարների համար։ Դա, անշուշտ, կխթանի բրիգադային մեթոդի հետագա ներդրմանը, ֆոնդահատույցի մեծացմանը, աշխատաժամանակի կրճատմանը, խնայողության ռեժիմի ուժեղացմանը։

Բրիգադային տնտհաշվարկի հիմնական խթանը պայմանագրերի կնքման և աշխատանքի պլանավորման համակարգի կատարելագործումն է։ Աշխատանքի միայն մի մասի համար պայմանագրերի կնքումն աննշան արդյունք է տալիս։ Այսօրվա դրությամբ, տնտհաշվարկային կոլեկտիվները չունեն աշխատանքների երկարաժամկետ պլաններ։ Փորձը ապացուցում է, որ նպատակահարմար է կապալային բրիգադների աշխատանքը պլանավորել մեկ, նույնիսկ երկու տարվա համար։

Ուսումնասիրություններից պարզվում է, որ կապալային կոլեկտիվ պայմանագրերը չկատարելու գործում միայն առանձին դեպքերում են մեղավոր իրենք՝ բրիգադները։ Մեծ մասամբ դա լինում է շինարարության ղեկավարների պատճառով, որոնք դեռևս պայմանագրերը լրիվին չկատարած՝ բրիգադին մեկ օբյեկտից տեղափոխում են մյուսը, վատ են սպասարկում ու օգնում նրանց։ Անկասկած, այս ամենը բացասաբար է անդրադառնում առաջավոր եղանակի արմատավորման վրա, զրկելով կոլեկտիվներին իրենց աշխատանքի վերջնական արդյունքը տեսնելուց։

Նոր, առաջավոր եղանակին անցումն արագացնելու գրավականը շինարարության առաջադրանքների լրիվին համապատասխանեցումն է նյութատեխնիկական մատակարարման պլանների հետ, ուժերը և միջոցները գլխավոր ուղղություններում կենտրոնացնելը։ Այլապես քիչ չի պատահում, որ մատակարարող կազմակերպությունները կատարում են այսպես կոչված «իրենց» պլանները, և նրանք բոլորովին չեն տուժում այն բանից, որ իրենց մեղքով տվյալ կառույցի գործերը վատ են ընթանում, որովհետև խախտել են շինարարների հետ ունեցած պայմանագրերը։

Աշխատանքը նոր ձևով կազմակերպելու ձգտումը դեռևս ոչ բոլոր օղակներում է արժանանում տնտեսական ղեկավարների, ինչպես նաև տեղական



կուսակցական, սովետական, արհմիութենական կազմակերպությունների պատշաճ պաշտպանությանը։

Շինարարության ոլորտում գործում են շուրջ 400 սկզբնական և 240 արտադրամասային կուսակցական կազմակերպություններ, 250-ից ավելի կուսխմբեր։ Հանրապետության կառույցներում աշխատում է տասնմեկուկես հազար կոմունիստ։ Բնական է, որ շինարար կոմունիստների կազմակերպական և քաղաքական ամենօրյա աշխատանքով են մեծապես պայմանավորված կոլեկտիվների գործունեության վերջնական արդյունքները, նրանց ուժերի մոբիլիզացումը՝ առաջադրված խնդիրների լուծման համար։ Շինարար կոմունիստների, կառույցների կոլեկտիվների ջանքերի արդյունք են շահագործման հանձնված և կառուցվող բազմաթիվ օբյեկտներում ձեռք բերված հաջողությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովը Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում նշեց. «Անհրաժեշտ է ստեղծել տնտեսական ու կազմակերպական այնպիսի պայմաններ, որոնք խթանեն որակյալ, արտադրողական աշխատանքը, նախաձեռնությունն ու ձեռներեցությունը։ Եվ, ընդհակառակը, վատ աշխատանքը, անգործությունը, անպատասխանատվությունը պետք է ամենաանմիջական և անկասելի ձևով անդրադառնան թե՛ աշխատողների նյութական վարձատրության և թե նրանց պաշտոնական դիրքի, թե՛ բարոյական հեղինակության վրա»։

Հանրապետության շինարարական գերատեսչությունները, կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները, ժողովրդական դեպուտատների սովետները կոչված են ակտիվացնելու լավագույն կոլեկտիվների առաջավոր փորձի ուսումնասիրման և ընդհանրացման գործը, հասնելու դրանց մասսայական ներդրմանը։ Կարևոր է բարձրացնել կառույցների ղեկավարների պատասխանատվությունը՝ նոր մեթոդի լայն արմատավորման համար։ Չպետք է մոռանալ, որ կապիտալ շինարարության մակարդակով և շինարարությանը հատկացվող միջոցների ռացիոնալ օգտագործմամբ են պայմանավորված արտադրական պոտենցիալի դինամիկ աճը, էկոնոմիկայի անշեղ զարգացումը և բնակչության կենսամակարդակի հարաճուն բարձրացումը։

---

## Նրանք պայքարել են նոր կյանքի համար

# ՄԵՐ ԱՆՊԱՐՏԵԼԻՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆԸ

**Ընդ աստեղոք ի՞նչ կա սիրուն,**
**Քան զանձկալի Եղբայր անուն:**

Իր դարաշրջանի առաջավոր խոհերն ու նվիրական երազանքներն է արտահայտել ազգային-ազատագրական գաղափարների ջատագով-տաղերգուն՝ Մկրտիչ Պեշիկթաշլյանը: «Տո՛ւր ինձ քու ձեռքդ, Եղբա՛յր եմք մենք». ո՛չ միայն ազգային, այլև միջազգային եղբայրությունն է այսպես ներբողել արևմտահայ պոեզիայի ականավոր ներկայացուցիչը սրանից հարյուր տարի առաջ...

Մեծ իրադարձությունների եռուզեռով լի այս դարում փոքրիկ մի պատմություն է մեր գրածը հումանիստ քնարերգուի իրականություն դարձած նվիրական բաղձանքի մասին...



*«Կոմունիստ Տոջիկիստոն» ամսագրի գլխավոր խմբագիր Մ. Ալիմովը և Ն. Ներսիսյանը:*

Ութսունհինգ տարեկան է հուր ու ջուր, հազար ու մի փորձանք տեսած այս ալեհեր մարդը: Մենակ է, մեն-մենակ, բայց զարմանալիորեն կենսախինդ է, լավատես, համոզված է, որ իր, առավել ևս մեր զավակները, իր, մանավանդ մեր թոռները մեզնից շատ ու շատ լավն են լինելու, շատ ու շատ լավ են ապրելու:

Ո՞րն է արևելյան նուրբ հումորով օժտված սրամիտ այս մարդու չհատնող հավատի, անսպառ լավատեսության աղբյուրը: Թերթում եմ նրա կյանքի խութաշատ կեռմանների հուշապատառիկները, որոնք պարունակում են և լուսաշող բազում իրադարձություններ, դեպքեր ու դեմքեր...

Կենտրոնական Իրանում է ծնվել Ներսես Ներսիսյանը, 1898 թվականին: Բնավարձակալ էր հայրը՝ հողազուրկ գյուղացի Սամվելը, որ այնպես երազում էր որդուն տեսնել ուսյալ, կարդացվոր... Սովորում, ավարտում է Ներսեսը ամերիկյան միսիոներական դպրոցը:

1918 թվականի սեպտեմբերին թուրքական զորքերը գրավեցին Բաքուն: Շատ բաքվեցիներ, որոնց հետ և կոմունիստներ, փախան Իրան, Էնզելի (այժմ՝ Փեհլևի) ու Ռեշտ քաղաքներում ստեղծեցին Բաքվի կոմունիստների ընդհատակյա կազմակերպություններ, որոնք պայքարում էին անգլիական գաղութարարների և Իրանի շահական իշխանության դեմ:

Քսանամյա Ներսեսը կապվում է Ռեշտի ընդհատակյա կոմունիստական կազմակերպության հետ, որի ղեկավարն էր 1913 թվականից ՌԿ(բ)Կ անդամ Գառնիկ Ղազարյանը:

Նոր տարվա տոնակատարության պատրվակով ժողովի էր հավաքվել Ռեշտի ընդհատակյա կազմակերպությունը: Այդ ժողովում էլ, 1919 թ., Ներսես Ներսիսյանն



ընդունվում է կոմունիստական կուսակցության շարքերը, կատարում ղեկավար կուսակցական աշխատանք:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության ազդեցությամբ Իրանում աշխուժանում է ազատագրական պայքարը, որը նոր վերելք է ապրում հատկապես Ադրբեջանում սովետական կարգերի հաստատումից հետո (1920 թ. ապրիլի 28): 1920 թ. հունիսին Գիլանում հայտարարվում է հանրապետություն՝ Ռեշտ կենտրոնով: Ստեղծվում է Ժամանակավոր հեղափոխական կառավարություն և հեղափոխական ռազմական խորհուրդ: Ընդհատակից դուրս են գալիս կուսակցական կազմակերպությունները: Կուսակցության հանձնարարությամբ Ներսեսը, մի խումբ կամավորների հետ, ձեռնամուխ է լինում Իրանի երիտասարդությանը կոմունիստական կուսակցության շուրջը համախմբելու գործին: Նրա ամենաակտիվ մասնակցությամբ ստեղծվում է Իրանի երիտասարդության կոմերիտական միությունը (Էթտեֆաղե ջավնոնե կոմունիստե Իրան): Գիլանի հեղափոխության ժամանակ տեղի ունեցած քաղաքացիական պատերազմում, Մենջիլայի, Լավշանի, Ռուդբարի, Փասիխանի կռիվներին ակտիվ մասնակցում էր Իրանի կոմերիտական ջոկատը, որի հրամանատարն էր նրանց շրջանում մեծ հեղինակություն վայելող Ներսեսը:

1920 թ. սեպտեմբերին հեղափոխական Իրանի պատվիրակության կազմում վճռական ձայնի իրավունքով, նա մասնակցում է Բաքվում կայացած Արևելքի ժողովուրդների առաջին համագումարին:

Կարճատև եղավ ազատաշունչ այդ շրջանը Իրանում: Դավադրաբար սպանվեց երկրի կոմունիստական խմբերից մեկի ղեկավարը՝ Ամուօղլի Հայդարխանը: Ռզախան Փեհլևիի ղեկավարությամբ կատարվեց կառավարական հեղաշրջում, որին հաջորդեցին դաժան բռնություններն ու պատիժները: Իրան վերադառնալ կոմունիստ Ներսեսը չէր կարող:

Արևելքի ժողովուրդների համագումարից հետո նա գործում էր Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի արտասահմանյան բյուրոյի տրամադրության տակ, որը գտնվում էր Բաքվում: 1921 թ. նա գործուղվում է Հայաստան: Լինում է Թալինի, Սամաղարի, Ղամարլվի, Վեդի-Բասարի, Հոկտեմբերյանի շրջանների շրջկոմի, Էջմիածնի գավառային կոմիտեի քարտուղար, ապա Ազով—Սևծովյան երկրամասի՝ կուսակցության Մյասնիկյանի շրջկոմի քարտուղար: Հետաքրքրական, կուսակցական-հասարակական ակտիվ աշխատանքով լեցուն են եղել նրա համար մոսկովյան ուսումնառության տարիները (1928—1931 թթ.): Այդ ընթացքում նա ընտրվել է արևելագիտության ինստիտուտի համալսարանական կուսակցական կոմիտեի քարտուղար, Մոսկվայի Բաումանի կուսշրջկոմի անդամության թեկնածու: Ուսանող Ներսեսը ակտիվ մասնակցել է արևելագիտության հարցերի շուրջ տեղի ունեցող բուռն բանավեճերին:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ Լենինգրադի և Մոսկվայի արևելագետներից կազմվում է հանձնաժողով, որը պիտի մշակեր արևելագետ կադրերի պատրաստման ուսումնական ծրագիր և կանոնադրություն՝ արտասահմանյան արևելքի հարցերով զբաղվող աշխատողների և գիտահետազոտական կազմակերպությունների համար: Այդ հանձնաժողովի կազմում, իբրև մոսկովյան ներկայացուցիչ, ընտրվում և զեկուցմամբ հանդես է գալիս Ներսես Ներսիսյանը: Հանձնաժողովի մշակած ծրագիրը հաստատվում է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոյում և դառնում արտասահմանյան արևելքի կադրերի պատրաստման գործի ուղեցույց:

Մոսկվայի արևելագիտության ինստիտուտն ավարտելուց հետո պարսկերենին, հայերենին ու ռուսերենին քաջահմուտ երիտասարդը գործուղվում է Տաջիկստան, տեղի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեում կատարում ղեկավար կուսակցական աշխատանք: Իր գործունեությամբ, սկզբունքայնությամբ, մարդկայնությամբ ամենուր մեծ վստահություն վայելող կոմունիստ գործիչն այստեղ շատ շուտ աչքի է ընկնում ու սիրվում. նա ընտրվում է Տաջիկստանի կոմկուսակցության Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի բյուրոյի, Դուշանբեի քաղկոմի անդամ... 1936 թվականից սկսում է հրապարակվել Տաջիկստանի առաջին կուսակցական ամսագիրը՝ սկզբում «Կուսաշխատող», ապա՝ «Կոմունիստի Տոջիկիստոն». այդպես էլ այն կոչվում է մինչև օրս: Ամսագրի առաջին խմբագիրը եղել և 15 համար լույս է ընծայել Տաջիկստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի անդամ Ներսես Ներսիսյանը:

Ապա... 1942 թվականին նա Հյուսիսային Տաջիկստանի Փենջիքենդ քաղաքում է, նույնանուն շրջանի շրջարդկոմբինատի

կառավարիչ, հետո բրնձաղաց կոմբինատի դիրեկտոր: Արևելքի պատմության, գրականության, տաջիկերենի լավ իմացությունն օգնում էր նրան դյուրավ գտնելու մարդկանց սրտերի ճամփան: Գործի նկատմամբ անսահման սրտացավությունն ու պատասխանատվությունը, մի քաղցր, սրամիտ խոսքով բանվորներին հավատով ու լավատեսությամբ տոգորելու կարողությունը մեծապես նպաստում էին աշխատանքային առաջադրանքների հաջող կատարմանը: Ներսես Ներսիսյանն արժանանում է պատվավոր սննդարդյունաբերողի կոչմանն ու մեդալի:

Զինջ է երկինքը, մշուշը՝ ցրված...

1956 թվականին Ներսիսյանն ընտրվում է կուսակցության՝ Փենջիքենդի շրջկոմի անդամ, Լենինաբադի մարզկոմի անդամության թեկնածու: Տաջիկստանի կոմունիստական կուսակցության համագումարի պատգամավոր է նա: Իր բոլորանվեր, անխոնջ աշխատանքի արժանի գնահատականը—լիակատար վստահություն:

Հմուտ արևելագետը դեռ շատ էր պետք Տաջիկստանին: Դեռ Օմար Խայամն է երգել բանաստեղծություն, երգ, երաժշտություն, իմաստուն խոսք սիրող, ասես, ստեղծագործության թևերին բազմած կիշլակաբնակ այս ժողովրդի մասին:

— Անսահման է տաջիկների սերը իմաստուն, վեհաթռիչ, թևավոր խոսքի նկատմամբ,— ասում է Ներսեսը,— նրանք ինձ ևս դարձրին իրենց պոեզիայի սիրահարը:

Միութենական և միջազգային մասշտաբով նշվելու էր Իրանա-տաջիկական գրականության հիմնադիր Աբու-Աբդուլա Ռուդաքիի ծննդյան 1100-ամյակը: Տաջիկստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն և Գերագույն սովետը հանձնարարեցին Ներսիսյանին գլխավորել Արևելքի իմաստուն պոետի ծննդյան տոնակատարության առնչությամբ կազմակերպվող պատմաերկրագիտական թանգարանի կազմակերպումը: Ու շրջեց նա Տաջիկստանով մեկ, հաճախ ոտքով, ժողովեց հարուստ նյութեր, ցուցանմուշներ... ամենուր հյուրընկալ, սրտաբաց ժողովուրդը սիրով էր ընդունում իրեն ու իր լեզուն այնպես սիրող ու գիտցող հայ գործչին:

Բացվեց Տաջիկստանի Գերագույն սովետի արտակարգ հանդիսավոր նստաշրջանը՝ նվիրված Ռուդաքիի ծննդյան տասնմեկերորդ դարին: Հրավիրված էին Աֆրիկա-ասիական երկրների գրողների առաջին համագումարի մասնակիցները և շատ այլ հյուրեր՝ աշխարհի բոլոր ծայրերից: Նստաշրջանն ավարտվեց: Մասնակիցները, հրավիրյալները Ռուդաքիի դամբարանը դիտելուց հետո ուղղվեցին դեպի այն շենքը, ուր հանդիսավոր շուքով պիտի բացվեր մեծ պոետի անվան թանգարանը: Այցելուներին հիացրին թանգարանի ինը դահլիճներում ժողովված հարուստ նյութերը:

Ներսես Ներսիսյանը պարգևատրվեց Ռուդաքիի անվան հատուկ մեդալով:

Հրազդա՛ն, գետակդ իմ հայրենի,
Հրազդա՛ն, ջրիկդ իմ անուշիկ...

Նա կարոտել էր իր հայրենի հողը, Հայաստանը, ուր ցանկանում էր հյուսել իր բույնը:

1960 թվականից նա Հայաստանում է, անդամը հանրապետության գիտությունների ակադեմիայի արևելագիտության ինստիտուտի սկզբնական կուսկազմակերպության:

— Ուր էլ նետել է ինձ կյանքը, որտեղ էլ եղել, աշխատել եմ,— հանգիստ խղճով խոստովանում է «Պատվո նշան» շքանշանի, մի շարք մեդալների արժանացած գործիչը,— ես միշտ և ամենուրեք մնացել և մնում եմ հավատարիմ մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, ջանացել եմ լինել ակտիվ կոմունիստ:

Տարիներն ու տարածությունը հեռացրին նրան Տաջիկստանից, որը դարձել էր իր երկրորդ հայրենիքը: Իսկ սրտե՛րը... Ի՜նչ լավ է ասել բարեկամության ու եղբայրության տաջիկ երգիչը՝ Միրզո Թուրսուն-զադեն՝ փայտաքանդակի, փայտագրության վարպետ Թուրսունի որդին.

Մարդկային սրտից ավելի բարձր
Ի՞նչ կա աշխարհում,
Դու հենց սրտերում քո բույնը հյուսիր:

Ներսեսն իր բույնը հյուսել էր տաջիկ ժողովրդի սրտում: Դրա վկայություններից է և 1962 թ. ստացված այս ծրարը. Դուշանբեից է, Տաջիկական ՍՍՀ Ռուդաքիի անվան լեզվի և գրականության ինստիտուտից և Տաջիկստանի գրողների միությունից: Ծրարում փոքրիկ մի հրավիրագրքույկ է՝ բանաստեղծ Սադրիդդին Այնիի նկարով: Շատ արևելագետների, Տաջիկստանում ապրած ու աշխատած գործիչների հետ մեկտեղ, Ներսիսյանը ևս հրավիրվում է մասնակցելու տաջիկական



սովետական գրականության հիմնադրի կյանքի ու գործունեության վերաբերյալ հուշերի ժողովմանն ու հրատարակմանը:

Ու վերստին համոզվում է Ներսեսը՝ մարդկանց գործերում է մնում հիշողությունը նրանց մասին...

Իմ առջև լուսանկարներ են, սակավաթիվ լուսանկարներ, ու դրանց մեջ՝ հեղափոխական բանաստեղծ Աբուլքասիմ Լահութիինը՝ ձոնված Ներսես Ներսիսյանին՝ «Բարեկամիս, ընկերոջս» մակագրությամբ: Ահա և սերնդափոխությունը ներկայացնող այս նկարը: Հյուրընկալաբար բացված սեղան, նրա մոտ «Կոմունիստի Տոջիկիստոն» ամսագրի առաջին խմբագիրը՝ տարիների, աշխատանքի բեռան տակ կքած, կողքին՝ այսօրվա, մեր օրերի խմբագիրը՝ Մուզաֆֆար Ալիմովը, երախտագիտությամբ լի, ժպտացող աչքերով, ջահել իր ուսով ասես ծերությանը սատար կանգնած:

Ներսիսյանը չկարողացավ մասնակցել ամսագրի հրատարակման 40-ամյակին նվիրված տոնակատարությանը: Տաջիկստան մեկնեց դրանից որոշ ժամանակ անց: Բարձրադիր լեռների այս երկրում ճանապարհները երկնամերձ են: Հոգնաբեկ մարդը կնստի ճամփամիջի մի սարի, կմտաբերի Հաֆիզի դյութիչ տողերը, և կանցնի հոգնությունը, կկարճանա ճանապարհը:

«Հետաքրքիր անձնավորություն է Ներսես Սամվելովիչը,— կարդում ենք «Պրավդա» թերթի 1982 թ. սեպտեմբերի 17-ի համարում լույս տեսած **Բարձր բույնը** փոքրածավալ ակնարկում, որ նվիրված է Տաջիկստանին: Հեղինակը O. Լաթիֆին է, «Պրավդայի» թղթակիցը՝ Տաջիկական ՍՍՀ-ից.— Պատանեկության շրջանում եղել է հեղափոխական պոետ Լահութիի գաղափարակից ընկերը... 30-ական թվականներին Մոսկվայից նրան ուղարկեցին՝ օգնելու Տաջիկստանի կուսակցական կազմակերպությանը: Հանրապետության կոմկուսակցության Կենտկոմի անդամ է եղել նա: Նրա կատարած բարի գործերից հիշարժան են ցուցանմուշների ժողովումը, որի համար նա ոտքի տակ էր տվել ողջ Միջին Ասիան և ստեղծել Ռուդաքիի թանգարանը: Ներսես պապը, ինչպես կոչում են նրան երիտասարդները, տաջիկ-պարսկական պոեզիայի կենդանի անթոլոգիան է: Ինքը ևս գրում է. 70 տարեկանում գրել է հայ պատանու՝ Ռուստամի և պարսկուհի Դալիրայի սիրո հուզիչ վեպը, ուր արտացոլված են հեղափոխական փոթորկի ծավալման տարիները: Վերջերս, լինելով Դուշանբեում, նա ինձ ասաց.

— Գտիր երիտասարդության իմ ընկերոջ՝ Սաիդ Նասիրովի որդուն:

Սաիդը անգրագիտության վերացման ժամանակաշրջանի լուսավորիչներից էր: Ներսես Սամվելովիչի հետ ապրել էր այդ տարիների դժվարությունները, կիսել հացի վերջին պատառը: Հուզիչ էր նրա հանդիպումը հանրապետության գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Յու. Ս. Նասիրովի հետ: Յուսուֆ Սաիդովիչն այժմ ղեկավարում է բույսերի ֆիզիոլոգիայի ինստիտուտը, միաժամանակ վեպ է գրում փիլիսոփա, քնարերգու, լուսավորիչ Աբու-Ալի Իբն-Սինայի և այլ հին գիտնականների մասին: Այդ հանդիպման ժամանակ Ներսես Սամվելովիչը գիտնականի համար արտասանեց նրա հոր վերջին բանաստեղծության քառատողը, որը հայտնի չէր նույնիսկ բանաստեղծի ընտանիքի անդամներին»:

Ու նորից շրջեց Ներսես պապը Տաջիկստանի լայնարձակ դաշտերով, որոնք, ասես ծածկված էին ճեփ-ճերմակ փրփուրով: Այդ բամբակն էր պտղում, հասնում: Նրա կնգուղները, իբրև երկրամասի հիմնական հարստության խորհրդանիշ, զարդարում են հանրապետության գերբը: «Կոմունիստի Տոջիկիստոն» ամսագրի առաջին խմբագիրը՝ հայազգի Ներսես Ներսիսյանը, շրջում, հիանում էր բամբակի ամենաարժեքավոր տեսակի՝ նրբաթել բամբակի դաշտերով: Բամբակի այս տեսակի հայտնագործումը կապված է ռուս անվանի սելեկցիոներ Վ. Պ. Կրասիչկովի անվան հետ: Եվ պատահական չէ, որ այժմ նրա անունով է կոչվում Տաջիկստանի երկրագործության ինստիտուտը:

Ներսեսը հասավ դեռ հեռվից դեղնին տվող տնկադաշտերին: Այդ վրացի գյուղատնտես Վ. Ի. Ցուլայան էր իր անմիջական մասնակցությամբ օգնել տաջիկ ժողովրդին՝ Տաջիկստանը դարձնելու ցիտրուսաբուծության երկիր...

Երաժշտասեր, ջանասեր տաջիկ ժողովուրդը աշխատում է, արարում ու երգում: Երաժշտությունը ազգային է, տաջիկական, իսկ խոսքերը՝ Սերգեյ Եսենինն են: Ու բնավ էլ զարմանալի չէ, որ Վորոնեժում գործող մաթեմատիկոսների դպրոցը երկար տարիներ ղեկավարել է տաջիկ պոետ Բոզոր Սոբիրի եղբայրը՝ Թիմուրը:

Ծրջում, խորհում է Ներսես Ներսիսյանը, ու նրա մտապատկերի առջև հառնում

է ժողովուրդների եղբայրության անխորտակ հուշարձանը՝ Վախշի կասկադի ձեռակերտ հիդրոէլեկտրակայանները: Նուրեկի ՀԷԿ-ի շինարարության վրա աշխատել են 40 ազգությունների ներկայացուցիչներ...

«Այն ամենը, ինչ մենք ձեռք ենք բերել, ինչով հարուստ է մեր լեռնոտ երկիրը,— հաստատ համոզումով գրում է «Կոմունիստի Տոջիկիստոն» ամսագրի գլխավոր խմբագիր Մուզաֆֆար Ալիմովը,— կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության հաստատումն է: Դրանք բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության անձնուրաց աշխատանքի արդյունքն են: Մեր ժողովուրդը միշտ երախտագիտությամբ է հիշում, որ նոր կյանքի կառուցման բոլոր փուլերում մեզ եղբայրական օգնություն են ցույց տվել մեր հայրենիքի բոլոր ժողովուրդները, այդ թվում հայ ժողովրդի ներկայացուցիչները»:

... Տանը՝ Հայաստանում, սեղանին էր 1980-թվականի հունիսի 2-ի հեռագիրը.

«Հարգելի Ներսես Սամվելովիչ.

Ընդունեք «Կոմունիստի Տոջիկիստոն» ամսագրի խմբագրության կոլեկտիվի և անձամբ իմ սրտագին ողջույնը: Ուրախ ենք Ձեզ հետ հանդիպելու և սրտագին զրույցի համար: Մեր ամսագրի անցյալի ու ներկայի, նրա կոլեկտիվի, խմբագրության աշխատակիցների աշխատանքային պայմանների մասին Ձեր պատմածները անջնջելի տպավորություն թողեցին մեզ վրա և հանդիսանում են մեր աշխատանքի հետագա բարելավման օրինակ: Մաղթում ենք Ձեզ քաջառողջություն, հաջողություն և երկար կյանք:

Հարգանքներով՝

ամսագրի գլխավոր խմբագիր՝ Ալիմով Մ.»

Այսպիսին է իրավահավասար ազգերի եղբայրությունը, և այս ամենը սովորական մի բան է ժողովուրդների բարեկամության լենինյան դրոշի շուրջը համախմբված մեր հանրապետությունների համար, սովորական, խիստ բնորոշ իրողություն սովետների երկրի ապրելակերպի համար:

Սա է սովետական քաղաքացու չհատնող լավատեսության անսպառ աղբյուրը: Լենինիզմի դրոշով ընթացող սովետական ժողովուրդների անպարտելիության գրավականը նրանց ինտերնացիոնալ եղբայրությունն է:

**ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ**

---

## Նոր գրքեր

# ԿԱՐՄԻՐ ՊԱՆԹԵՈՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ամենանվիրական վայրերից են Վ. Ի. Լենինի դամբարանը, հեղափոխականների գերեզմանատունը, Անհայտ զինվորի գերեզմանը մոսկովյան հինավուրց Կրեմլի պարիսպների մոտ: Մեր կարմիր պանթեոնն է այն:

Ահա արդեն մոտ վեց տասնամյակ է, ինչ մարդկային անվերջանալի հոսանքը շարժվում է դեպի Կարմիր հրապարակ, մեծ առաջնորդի և ուսուցչի հանգստարանը: Մեր հայրենիքի տարբեր վայրերից, աշխարհի բոլոր ծեգերից մարդկանց այստեղ է բերում մեծագույն սերն ու հարգանքը Վլադիմիր Իլյիչի հանդեպ, անսասան հավատը նրա հավերժ կենդանի ու աշխարհը վերակերտող ուսմունքի նկատմամբ:

Առաջնորդի դամբարան-կոթողը բարձրանում է հեղափոխական գերեզմանատան կոմպոզիցիոն կենտրոնում, Հոկտեմբերի բոցաշունչ մարտիկների շիրիմների մեջտեղում: Հանգստարանի աջ և ձախ կողմերում եղբայրական երկու գերեզմաններ են, ութ առանձին գերեզմաններ՝ կիսանդրիներով, իսկ Կրեմլի պատի մեջ՝ աճյունասափորներ: Խորհրդանշական է պրոլետարական հեղափոխության հանճարեղ զորավարը իր լեգենդար զինվորների, զինակիցների, նոր աշխարհի հաստատման ու ամրապնդման համար մղված գոռ ճակատամարտերի հարյուրավոր մարտիկների հետ: Մեր առջև հառնում են 1917 թվականի Հոկտեմբերյան փոթորկահույզ օրերը Մոսկվայում, այն կարմիրգվարդիականների և հեղափոխական զինվորների հերոսական կերպարները, որոնք գրոհի ելան հին աշխարհի դեմ և նահատակվեցին: Այստեղ են հանգչում քաղաքացիական կռիվների և Հայրենական մեծ պատերազմի հերոսներ, սոցիալիզմի աննկուն կառուցողներ, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման գործիչներ: Մեր ժողովրդի համար նվիրական է բոլշևիկ-լենինյանների պայծառ հիշատակը, հավերժ է նրանց սխրանքը:

Կարմիր պանթեոնի ստեղծմանը և այնտեղ հանգչող մեր ժողովրդի լավագույն զավակներին է նվիրված Ա. Աբրամովի գիրքը*: Հավերժացած խիզախների հիշատակի մատյանն է դա այն մարդկանց մասին, որոնք ընդվզեցին հին աշխարհի դեմ, ինչպես Ջոն Ռիդն է ասել, ցնցեցին աշխարհը, ավետելով մարդկության պատմության նոր դարաշրջանի ընկիզբը և, բարձր պարզած Հոկտեմբերի դրոշը, մաքառեցին հանուն նոր կյանքի, նոր բարոյականության հաստատման:

Գրախոսվող գիրքը հեղինակի երկար տարիների տքնաջան աշխատանքի, պրպտող մտքի արգասիքն է, հրապարակախոսական բնույթի պատմագեղարվեստական ակնարկների ժողովածու՝ հուզիչ, ներգործուն: Ընթերցում ես գիրքը և թվում է, թե թերթում ես մեր հայրենիքի ինքնահաստատման ու առնականացման տարեգրության էջերը, տեսնում հեղափոխական մարտիկների վառ կերպարները, խորհրդածում հայրենի հողի սրխրալից անցյալի ու պայծառ գալիքի մասին: Այո՛, ճանաչողական մեծարժեք այս գիրքը տրամադրում է քեզ խորհրդածելու ու մտորելու:

Գրքի առաջին բաժինը նվիրված է Վ. Ի. Լենինի դամբարանի կառուցմանը:

1924 թ. հունվարին մեր երկիրը ծանր կորուստ կրեց. վախճանվեց Վլադիմիր Իլյիչը: Առաջնորդի մահը ցնցեց սովետական ժողովրդին, առաջադեմ ողջ մարդկությանը: Համաժողովրդական այդ վշտի օրերին սովետական մարդիկ երդվեցին սրբությամբ պահպանել Իլյիչի պատգամները և, ներտորեն համախմբվելով լենինյան կուսակցության շուրջը, շարունակել նրա մեծ գործը:

Արտահայտելով մեր մարդկանց նվիրական զգացմունքները՝ Վ. Մայակովսկին գրել է.

*...Մի՞թե մենք*
*պիտի թափենք*
*արցունքի գետեր:*
*Լենինը*
*հիմա էլ ողջ է*
*բոլոր ապրողներից:*

---

* *Ա. Աբրամով*— Կրեմլի պատի մոտ: *Թարգմանված է երրորդ լրացված հրատարակությունից: «Հայաստան» հրատ., 1982 թ.:*

*Մեր ուժը,*
*մեր զենքը*
*և գիտությունն է մեր։*

Սգո այդ օրերին, առաջնորդի թաղումից երեք օր առաջ, ականավոր ճարտարապետ-ակադեմիկոս Ա. Վ. Շչուսևն ստանում է կառավարական հույժ պատասխանատու առաջադրանք՝ անհապաղ ձեռնամուխ լինել Կարմիր հրապարակում, Հոկտեմբերի զոհված մարտիկների եղբայրական գերեզմանների կենտրոնում Լենինի աճյունն ամփոփող հանգստարանի նախագծմանն ու կառուցմանը։ Դա պետք է լիներ պարզ ու վեհասքանչ, ներդաշնակեր Կարմիր հրապարակին և դառնար վերջինիս ճարտարապետական անսամբլի գլխավոր տարրը։ Սեղմ ժամկետների և դամբարանի ժամանակավոր բնույթի պատճառով այն կառուցվում է փայտից։ Հեղինակը նկարագրում է, թե ինչպես այդ սառնամանիքին, զօր ու գիշեր մեր երկրի ամենալավ հյուսները, վիշտը սրտներում անթեղած, կառուցում էին առաջնորդի դամբարանը և ավարտեցին գործն այն ժամանակ, երբ արդեն սգո թափորը մտնում էր Կարմիր հրապարակ։

1924 թվականի փետրվարին Ա. Շչուսևն ստանում է նոր առաջադրանք՝ վերակառուցել Իլյիչի հանգստարանը, նրան տալով մոնումենտալ, ճարտարապետական-գեղարվեստական ձև։ Պետք էր ստեղծել հանգստարան, հուշարձան, տրիբունա՝ պարզ ու վեհաշուք, արտացոլեր լենինյան գաղափարների վեհությունը, նրա անմահությունը։ Նոր փայտե դամբարանի կառուցումն սկսվեց 1924 թ. գարնանը, այն շատ նման էր ներկայիս գրանիտե դամբարանին, և աշխատավորների այցելության համար բացվեց նույն թվականի օգոստոսի մեկին։

Դեռևս 1924 թվականին մշակվել ու հաստատվել էին Լենինի մշտական դամբարանի նախագծի հիմնական սկզբունքները։ Դրա հիման վրա ակադեմիկոս Ա. Շչուսևի նախագծով և նրա ղեկավարությամբ 1929 թ. սկսվեց գրանիտե հուշարձան-դամբարանի կառուցումը։ Սովետական կառավարությունը նրան հանձնարարել էր գոյություն ունեցող լենինյան հանգստարանը ճշտորեն վերակերտել քարով։ Սակայն ճարտարապետը մեխանիկորեն չպատճենահանեց փայտե դամբարանի ճարտարապետական ձևերը։ 1930 թ. նոյեմբերի 7-ին՝ Հոկտեմբերյան հեղափոխության 13-րդ տարեդարձի օրը, բացվեց այդ հուշարձան կոթողը— ճարտարապետական մի սքանչելի կառույց՝ արժանի պրոլետարիատի մեծ առաջնորդին։

Գրքում պատմվում է մեր գիտնականների սխրագործությունը, որոնք գալիք սերունդներին հնարավորություն ընձեռեցին տեսնելու սիրելի առաջնորդին, պահպանելով նրա թանկագին դիմագծերը։ Վ. Ի. Լենինի մարմինը պահպանելու միտքը ծնունդ էր առել 1924 թ. սգո օրերին գործարաններում, հանքահորերում, աշխատավորական կոլեկտիվներում։ «Ոչ մի դեպքում չի կարելի հողին հանձնել այնքան մեծ և ջերմորեն սիրելի առաջնորդի մարմինը»— գրել էին Մոսկվայի բանվորները։ Կատարելով ժողովրդի կամքը, ՍՍՀՄ Կենտգործկոմի նախագահությունը 1924 թ. հունվարի 25-ին որոշում է՝ «Վլադիմիր Իլյիչի աճյունը պահպանել դամբարանում, վերջինս մատչելի դարձնելով այցելությունների համար»։

Գրքում հանգամանորեն շարադրված է հեղափոխական գերեզմանոցի ստեղծման, այնտեղ հանգչող մարդկանց մասին։

1917 թվականին, Մոսկվայում սովետների իշխանության հաստատման համար մղված յոթնօրյա կատաղի մարտերում զոհվեցին ավելի քան երեք հարյուր կարմիրգվարդիականներ ու հեղափոխական զինվորներ։ Նրանց մի մասը թաղվեց զոհվածների հարազատների և համագնդեցիների կողմից քաղաքային գերեզմանոցներում։ Մոսկվայի ռազմահեղափոխական կոմիտեն որոշում է՝ որպես զոհված մարտիկների հավերժական հանգստարան ընտրել Կարմիր հրապարակը, եղբայրական գերեզմաններ ստեղծել Կրեմլի Նիկոլսկի և Սպասկի դարպասների միջև, պատի երկարությամբ։ Հենց այդտեղ էլ հաղթանակած աշխատավորական Մոսկվան 1917 թ. նոյեմբերի 10-ին հողին հանձնեց Հոկտեմբերի հերոսներին։

Հեղինակը նկարագրում է զոհվածների հանդիսավոր հուղարկավորությունը, որին մասնակցում էր ավելի քան հիսուն հազար մարդ... Այդ օրը եղբայրական գերեզմաններն իջեցվեց 238 դագաղ։ Մի քանի օր անց, նոյեմբերի 14-ին, Զամոսկվորեչիեի բանվորները խաչաձև հրացանների վրա Կրեմլի պատի մոտ բերեցին շրջանային ռազմահեղափոխական կոմիտեի հետախույզ-կապավորի, բոլշևիկ պրոպագանդիստի՝ քսանամյա Լյուսիկ Լիսինյանի աճյունը և իջեցրին եղբայրական գերեզման։ Նոյեմբերի 17-ին թաղեցին կարմիրգվարդիական, լեհ ինտերնացիոնալիստ, աննկուն հեղափոխական Յան Վալդովսկուն։ Ավելի քան 200 պսակներ ներմակ ձյան հետ մեկտեղ ծածկել էին եղբայրական շիրիմները։

Սակայն եղբայրական գերեզմաններում գրանիտե սալերի վրա կան 1917 թ. մարտերում զոհված միայն 23 անուններ։ Իսկ ովքե՞ր են մնացած 217-ը... Զոհվածների ցուցակ չի եղել, իսկ հաջորդ տարիներին հնարավոր չի եղել վերականգնել այն։ Հեղինակը երկար տարիներ պրպտումներ է կատարել արխիվներում ու պարբերական մամուլի էջերում, զրուցել մարդկանց հետ և պարզել մի քանի տասնյակ մարդկանց անուններ։

Գրքում հետաքրքրական տեղեկություններ են տրվում Կարմիր պանթեոնի ճարտարապետական ձևավորման վերաբերյալ։ Մոսկվայում Հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակի առաջին իսկ օրերից հետո աշխատավորական կոլեկտիվներից առաջարկություններ ստացվեցին հեղափոխական մարտերում զոհվածներին արժանի հուշարձան կառուցելու մասին։ Այդ հարցը քննարկվեց Մոսկվայի սովետի 1918 թ. ապրիլի 23-ի պլենար նիստում, որտեղ որոշվեց հայտարարել հուշարձանի կառուցման մրցանակաբաշխություն. որոշվեց Հոկտեմբերյան զոհերի թաղման տեղում, Կրեմլի պատի վրա դնել հարթաքանդակ։ Կոչին արձագանքեցին մի քանի քանդակագործներ ու ճարտարապետներ, այդ թվում և Հ. Մ. Գյուրջյանը (թարգմանիչի մեղքով գրքում ճիշտ չի դրված քանդակագործի անունը)*։ Ընդունվում է քանդակագործ Ս. Կոնյոնկովի նախագիծը։ Կառուցված հուշատախտակը բացում է Վ. Ի. Լենինը, 1918 թ. նոյեմբերի 7-ին։

Հետագայում, 20—40 և 70-ական թվականներին շարունակվեցին Կարմիր գերեզմանատան ճարտարապետական ձևավորումները։ Այդ առումով ուշագրավ են 1946—1947 թթ. ծավալված բարեկարգման աշխատանքները, որի շնորհիվ պանթեոնի ճարտարապետական անսամբլը դարձավ ավելի արտահայտիչ և մոնումենտալ։ Այն իրականացվեց երկու ականավոր արվեստագետների՝ ճարտարապետ Ի. Ֆրանցուզի և քանդակագործ Ս. Մերկուրովի նախագծով ու նրանց անմիջական մասնակցությամբ։

Հավերժության ու փառքի մատյան կարելի է կոչել այս գիրքը, ուր զետեղված են Կրեմլի պարսպի մոտ հանգչող ժողովրդի լավագույն զավակների և հեղափոխական-ինտերնացիոնալիստների լուսանկարները, համառոտակի բնութագրված են նրանցից յուրաքանչյուրի սխրալից կյանքն ու գործունեությունը։ Ահա նրանցից մի քանիսը՝ Կոմինտերնի գործկոմի անդամ, Ամերիկայի կոմկուսակցության ներկայացուցիչ, գրող Ջոն Ռիդ, Նորվեգիայի բանվորական կուսակցության կենտրոնական վարչության անդամության թեկնածու Ավգուստա Օսեն, ռուսական և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործիչ Ինեսա Արմանդ, ճանաչված հեղափոխական ակտիվ գործիչներ Դորա և Վացլավ Վորովսկիներ... Գրքի էջերից հառնում են Հոկտեմբերյան մարտերի ու քաղաքացիական կռիվների հերոսները, սոցիալիզմի քաջարի կառուցողները, կուսակցական ու պետական, գիտության ու մշակույթի ականավոր գործիչներ, մեր աշխարհինչակ զորապետներն ու տիեզերագնացները, արտասահմանյան այն կոմունիստ-հեղափոխականները, որոնք իրենց կյանքը զոհաբերեցին հանուն մեծ Հոկտեմբերի հաղթանակի։

Լենինի դամբարանի ետևում գրանիտե տողանն է՝ ութ կիսանդրիով— ՀԿԳԿ նախագահ Յա. Մ. Սվերդլով, որը, ինչպես Լենինն է ասել նրա թաղման ժամանակ «...ամենից շատ բան է արել բանվոր դասակարգի կազմակերպման, նրա հաղթանակի համար», ՍՍՀՄ ռազմական և ծովային գործերի ժողկոմ Մ. Վ. Ֆրունզե, հեղափոխության ասպետ երկաթյա Ֆելիքսը՝ Ձերժինսկին, ամենաժողովրդական առաջնորդը, «համամիութենական ավագ» Մ. Ի. Կալինինը...

Ահա և կոմունարների պատը. գրանիտե սալիկներով ծածկված որմնախորշերում կոմունիստական կուսակցության, սովետական նշանավոր պետական գործիչների, միջազգային կոմունիստական շարժման մեծ նվիրակների աճյունասափորներն են։ Այստեղ որմնափակված են ճանաչված դիվանագետ Լ. Բ. Կրասինը, ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղար Չ. Է. Ռուտենբերգը, Մեծ Բրիտանիայի կոմկուսակցության նախագահ Արթուր Մակ-Մանուսը, ՍՍՀՄ ժողկոմխորհի և ՍՍՀՄ աշխատանքի ու պաշտպանության խորհրդի նախագահի տեղակալ Ա. Դ. Ցյուրուպան, հրապարակախոս Մ. Ս. Օլմինսկին, Կլարա Ցետկինը, Ճապոնիայի կոմկուսակցության հիմնադիր Սեն Կատայաման, Ա. Վ. Լունաչարսկին, Ս. Մ. Կիրովը, Վ. Վ. Կույբիշևը, հեղափոխության մրրկահավ Ա. Մ. Գորկին, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Վ. Ի. Լենինի քույրը՝ Մ. Ի. Ուլյանովան, Սովետական Միության հերոս Վ. Պ. Չկալովը, Վ. Ի. Լենինի կինն ու մերձավոր զինակիցը՝ Ն. Կ. Կրուպսկայան...

* *Ցավոք, թարգմանության մեջ նկատելի են տեղանունների սխալ թարգմանություններ և այլ սխալներ ու վրիպումներ։*

Այստեղ են ամփոփված և Հայրենականի մեծ պատերազմի մասնակից զորավարներ, հաղթանակը դարբնող կուսակցական ու պետական խոշոր գործիչներ, ականավոր գիտնականներ Ի. Ֆ. Թևոսյանը, Գ. Մ. Կրժիժանովսկին, Ի. Վ. Կուրչատովը, Ս. Պ. Կորոլյովը, հեղափոխական շարժման մեծագույն գործիչ Ե. Դ. Ստասովան, տիեզերագնաց օդաչուներ Յու. Ա. Գագարինը, Վ. Մ. Կոմարովը, զորավարներ Ն. Ն. Վորոնովը, Կ. Կ. Ռոկոսովսկին, Ս. Կ. Տիմոշենկոն, Ի. Ս. Կոնևը, Ա. Ա. Գրեչկոն, Ա. Մ. Վասիլևսկին, Գ. Կ. Ժուկովը...

Անհնար է բոլորին հիշել. ընթերցողը կհամոզվի, թե ինչպիսի բոլորանվեր, ազնիվ գործիչներ են հանգչում այդտեղ՝ անմահությունը վաստակած:

Կրեմլի հյուսիս-արևմտյան պարսպի մոտ, Ալեքսանդրյան այգում է գտնվում Անհայտ զինվորի գերեզմանը: Ո՞վ է նա, Մեծ հայրենականի այդ քաջարի զինվորը: Մենք այդ չգիտենք, չգիտենք նրա անունը, ծննդավայրը: Միայն գիտենք, որ նա սովետական ժողովրդի բյուրավոր քաջարի զավակների, մեծ հայրենասերների հավաքական կերպարն է, զինվորներ, որ հերոսաբար մարտնչեցին անարգ ոսոխի դեմ և ընկան ռազմի դաշտում, Մոսկվայի մատույցներում, 1941 թվականի ահեղ օրերին:

1966 թ. դեկտեմբերի 3-ին Մոսկվայի վրա որոտաց եռակի հրետանային հրավառությունը, և անհայտ զինվորի դագաղը իջեցվեց գերեզման: Զինվորի հավիտենական անձնագրի՝ գերեզմանասալի վրա փորագրված էր.

*Քո անունը*
*Անհայտ է,*
*Քո սխրանքն*
*Անմահ։*

Գիշեր-ցերեկ Անհայտ զինվորի գերեզմանի վրա վառվում է անմար կրակը— սովետական ողջ ժողովրդի, ներկա ու գալիք սերունդների երախտապարտ սրտերի կրակը...

Հավերժ կենդանի է Կրեմլի պատի մոտ ամփոփված հերոսների, ականավոր գործիչների հիշատակը: Հրապարակախոսական ջերմ շնչով գրված այս հուզիչ կենսագրությունները ընդօրինակելի, ուսանելի շատ բան են պարունակում և մեծապես կնպաստեն մեր երիտասարդության հայրենասիրական դաստիարակությանը: Ընթերցողը մի անգամ ևս կհամոզվի, որ ժողովրդանվեր գործն անմահ է, որ հավերժ կենդանի են այդ մեծ գործիչները: Կենդանի են նրանք մեր երկրի այսօրվա փառավոր գործերում և հաղթական առաջընթացում: Լավ է ասել Վլադիմիր Մայակովսկին նրանց անխորտակ հուշարձանի մասին.

*Թող մեզ*
*ընդհանուր հուշարձան լինի*
*մարտերում*
*կառուցված սոցիալիզմը։*

**Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ**



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 20.04.83 թ.: Ստորագրված է տպագրության՝ 11.05.83 թ.: ՎՖ 06806: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15832: Պատվեր՝ 1150:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.